## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԴՅՈՒԿԼՈ ԺԱԿ։ Երկնքի գրոհումը։ Փարիզյան կոմունան՝ նոր աշխարհի նախագուշակ։ *Մ. Արտասահմանյան գրակ. հրատ. 1962, 324 էջ։*

*Հեղինակը շատ հետաքրքրական ձևով շարադրում է Փարիզյան կոմունայի պատմությունը։ Բազմաթիվ փաստերով և իր ժամանակաշրջանի նյութերից մեջբերումներ կատարելով՝ ցույց է տալիս Փարիզյան կոմունայի՝ իշխանության գլուխ կանգնելու փորձի նշանակությունը հետագա ռևոլյուցիոն շարժումների և Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար։*

*Հեղինակը գրքի վերնագիր է դարձրել Կ. Մարքսի «Երկնքի գրոհումը» դարձվածքը՝ որպես գնահատական բանվորական կոմունայի։ Երկնքի գրոհումն իրականացավ Կոմունայից 90 տարի հետո. Յու. Գագարինը թռավ «երկինք» և հաջող վերադարձավ երկիր։ Հեղինակը ցույց է տալիս ռևոլյուցիայի հաղթանակի արդյունքները և պտուղները՝ ՍՍՌՄ-ում ու սոցիալիստական այլ երկրներում։*

ՎԻՍԼՈԲՈԿՈՎ ԱԼԵՔՍԵՅ ԴՄԻՏՐԻԵՎԻՉ։ Մարքսիստական դիալեկտիկան և ժամանակակից մեխանիցիզմը։ *Մ., 1962, 240 էջ։*

*Հեղինակը բազմաթիվ տվյալներով զինված՝ խիստ քննադատում է ժամանակակից մեխանիցիզմը։ Նա ընդգծում է, որ դասական մեխանիկան իր ժամանակաշրջանում դրական դեր է խաղացել բնության երևույթների ուսումնասիրման գործում։ Իսկ այժմ ֆիզիկայի, քիմիայի, բնագիտության զարգացած դարում մեխանիկական մեթոդն արգելակում է այդ զարգացումը։ Գիտության զարգացումը կարող է առաջ գնալ միայն դիալեկտիկական տեսության գործադրմամբ։*

ՇԱՄԲԻՐԳ ՎԼԱԴԻՄԻՐ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ։ Երկու սիստեմների տնտեսական մրցության բուրժուական կոնցեպցիայի մասին։ *(Համառոտ ակնարկ)։ Մ. Սոցտնտհրատ, 1962, 191 էջ։*

*Հեղինակը համառոտակի, բայց հիմնավոր քննադատում է սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների խաղաղ մրցության առթիվ բուրժուական տնտեսագետների հայացքները։ Նա ցույց է տալիս, թե որքան սնանկ և անսկզբունք են բուրժուական տնտեսագետների փաստարկները սոցիալիզմի ագրեսիվության, երկու սիստեմների խաղաղ մրցության անհնարինության և այլնի մասին։*

ՇՉԵԳՈԼԵՎ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԻՎԱՆՈՎԻՉ։ Լենինյան ոճը աշխատանքում։ *Մ., 1962, 46 էջ։*

*Պատմելով Լենինի աշխատանքային ոճի մասին՝ հեղինակը նշում է, որ Լենինի մոտ տեսությունը և գործը միասնության մեջ էին։ Աշխատանքում ամենուրեք աչքի էր զարնում Լենինի բարձր գաղափարայնությունը, պարտիական բարեխղճությունն ու հոգատարությունը մարդու նկատմամբ։ Հեղինակը ցույց է տալիս, թե Լենինը որքան սերտ էր կապված մասսաների հետ, ինչպես էր իրագործում կոլեկտիվ ղեկավարությունը, աշխատանքում կոնկրետ էր ու գործնական։ Վ. Ի. Լենինը ճշմարտասեր էր, համեստ ու պարզ։*

*Գիրքն օգտակար է պարտիական և սովետական ակտիվի համար։*

ԼԵՈՆՏԵՎ ԼԵՎ ԱԲՐԱՄՈՎԻՉ։ «Լենինյան տետրակները իմպերիալիզմի մասին» *(Վ. Ի. Լենինի ստեղծագործական լաբորատորիայի բնութագրության շուրջ)։ Մ., Սոցտնտհրատ, 1962, 207 էջ։*

*Հեղինակը շարադրում է լենինյան «Տետրակների» համառոտ պատմությունը, բովանդակությունը և պարզաբանում կոնսպեկտավորված լենինյան դրույթներն ու նյութերը։ Վ. Ի. Լենինի «Տետրակները իմպերիալիզմի մասին» հանճարեղ աշխատության մեջ տրված է իմպերիալիզմի ճշգրիտ բնորոշումը։ Այսօր էլ լենինյան տեսությունը իմպերիալիզմի և նրա ձևոնածությունների մասին՝ խոշոր դեր է խաղում աջ սոցիալիստների դեմ մղված գաղափարական պայքարում։*

*Հեղինակի այս աշխատությունը լուրջ օգնություն է պարտիական ակտիվին։*

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 3
ՄԱՐՏ
1963 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ








# ՍՈՎԵՏՆԵՐԸ ՆՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Մեր երկրի զարգացման բոլոր ժամանակաշրջաններում աշխատավորների դեպուտատների սովետները հսկայական դեր են խաղացել: Լինելով սովետական իշխանության ամենամասսայական ու ամենադեմոկրատական օրգանները, նրանք իրենց շուրջն են համախմբել աշխատավորական լայն զանգվածներին և հետևողական պայքար ծավալել մեծ Լենինի ցուցումների, կոմունիստական մեծագործ պարտիայի քաղաքականության իրականացման բնագավառում:

Ընտրված լինելով ժողովրդի կողմից և ակնվորեն ծառայելով ժողովրդին, սովետներն անգնահատելի աշխատանք են կատարում արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, բնակչության բարեկեցության բարձրացման ուղղությամբ: Սովետների անմիջական օգնությամբ մեր երկրի բազմազգ ժողովուրդը իր մարտական ավանգարդի՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ համաշխարհային պատմական հաղթանակ տարավ նոր հասարակարգի կառուցման գործում, ապահովելով սոցիալիզմի լրիվ և վերջնական հաղթանակը:

«Ապահովելով սոցիալիզմի՝ կոմունիզմի առաջին փուլի լրիվ ու վերջնական հաղթանակը և հասարակության անցումը կոմունիզմի ծավալուն կառուցմանը, պրոլետարիատի դիկտատուրան կատարեց իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարեց ՍՍՌՄ-ում անհրաժեշտ լինելուց: Պետությունը, որն առաջ եկավ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետություն, նոր, ժամանակակից փուլում վերածվեց համաժողովրդական պետության, դարձավ ամբողջ ժողովրդի շահերն ու կամքն արտահայտող օրգան» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 522—523): Առաջացած նոր պայմանների համաձայն սովետների առջև դրվեցին ավելի պատասխանատու խնդիրներ: Այդ խնդիրները պարզորոշ կերպով շարադրված են ՍՄԿՊ Ծրագրում և դրանցով էլ բնորոշվում է սովետների ամբողջ գործունեությունը, որն ի սպաս է դրված կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, սոցիալիստական հարաբերությունները կոմունիստական հարաբերությունների վերածելուն և նոր մարդու դաստիարակման ուղղությամբ նախատեսված միջոցառումների իրականացմանը:

«Կոմունիստական շինարարության ընթացքում,—ասված է ՍՄԿՊ Ծրագրում,—կբարձրանա սովետների դերը, որոնք հանդիսանում են ժողովրդի համապարփակ կազմակերպություն, նրա միասնության մարմնավորում: Զուգակցելով պետական և հասարակական կազմակերպության գծերը, սովետներն ավելի ու ավելի մեծ չափով են հանդես գալիս որպես հասարակական կազմակերպություններ՝ մասսաների լայն ու անմիջական մասնակցությամբ նրանց գործունեությանը»: Բավական է նշել, որ ներկայումս բոլոր սովետների կազմում կա մոտ երկու միլիոն դեպուտատ: Տեղական սովետների կանական մշտական հանձնաժողովների աշխատանքին մաս-

նակցում են (դեպուտատներից բացի) ավելի քան երկու միլիոն աշխատավորներ, իսկ սովետների ամբողջ ակտիվը կազմում է մոտ քսան միլիոն մարդ:

Սովետների ընտրությունը կատարվում է աշխարհում ամենադեմոկրատական հիմունքներով: ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները, որոնց 18 տարին լրացել է, իրավունք ունեն մասնակցելու Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրություններին, անկախ ռասայական և ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալի գործունեությունից: Նրանք իշխանության գերագույն և տեղական օրգաններում ընտրում են աշխատավորների բոլոր ներկայացուցիչներից: Այսպես, օրինակ. մեր ռեսպուբլիկայի Գերագույն սովետի հինգերորդ գումարման 300 դեպուտատներից 65-ը անմիջականորեն արտադրության մեջ աշխատող շարքային բանվորներ էին, 69-ը՝ գյուղացիներ, մնացածը պարտիական, ժողովրդական կրթության, առողջապահության, գիտության, գրականության, արվեստի աշխատողներ: Գերագույն սովետի դեպուտատներից 97-ը տարբեր բնագավառներում աշխատող կանայք էին: Ռեսպուբլիկայի շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային սովետների դեպուտատների մոտ 80 տոկոսը բանվորներ ու գյուղացիներ էին:

Ռեսպուբլիկայի գերագույն ու տեղական սովետների 1963 թվականի մարտի 17-ին կայացած ընտրություններին նույնպես դեպուտատներ ընտրվեցին աշխատավորների բոլոր ներկայացուցիչներից: Սովետներում ընտրված դեպուտատները աշխատավոր ժողովրդի ամենաարժանավոր զավակներն են, պարտիական ու անպարտիական ակտիվիստներ, լավագույն հատկություններով օժտված շարքային ու ղեկավար աշխատողներ, որոնք ավնվորեն ծառայում են ժողովրդին և անձնական օրինակ ցույց տալիս կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում: Ահա թե ինչու բոլոր ընտրողները միահամուռ ձայն տվին նրանց՝ կոմունիստների ու անպարտիականների անխախտ բլոկի թեկնածուների օգտին: Դա մեկ անգամ ևս դրսևորեց մեր պարտիայի ու ժողովրդի միասնությունը, սոցիալիստական դեմոկրատիայի նոր, փայլուն հաղթանակը:

Կոմունիզմի գաղափարական հակառակորդները կաշվից դուրս գալով ճգնում են արատավորել մեր սոցիալիստական դեմոկրատիան ու երկինք բարձրացնել, այսպես կոչված, կապիտալիստական «ազատ աշխարհի» դեմոկրատիան: Բայց ո՛չ ոքի չի հաջողվի թաքցնել իսկական ճշմարտությունը: «Չէ՛ որ անվիճելի փաստ է,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— որ սոցիալիզմի աշխարհը անշեղորեն ու հետևողականորեն ընթանում է դեմոկրատիայի զարգացման ու ընդլայնման ուղիով, իսկ կապիտալիստական աշխարհը՝ նույնիսկ պոչատ բուրժուական դեմոկրատիայի ավելի ու ավելի նեղացման ու կրճատման ուղիով»: Ի՞նչ դեմոկրատիայի մասին կարող է խոսք լինել, երբ իմպերիալիստական առաջատար պետություններում ռեալ իշխանությունը կենտրոնացված է մոնոպոլիստների փոքրաթիվ խմբերի ձեռքում, որոնք իրենց կամքն են թելադրում կառավարություններին:

Հետևողականորեն կենսագործելով բոլոր քաղաքացիներին երկրի կառավարմանը մասնակից դարձնելու լենինյան ցուցումը, պարտիայի XXII համագումարը կոնկրետ միջոցառումներ նշեց սովետական ընտրական սիստեմի հետագա զարգացման համար: Որպեսզի պետության կառավարման դպրոցն անցնեն միլիոնավոր նոր քաղաքացիներ և բացառվի պետական կառավարման առանձին աշխատողների կողմից իշխանության չարաշահման հնարավորությունը, սովետների յուրաքանչյուր ընտրության ժամանակ պետք է նորացվի դեպուտատների կազմի առնվազն մեկ երրորդը: Այս նշանակում է, որ սովետներում ամեն անգամ կընդգրկվեն բազ-



մաթիվ նոր մարդիկ, որոնք իրենց ստեղծագործական նախաձեռնությամբ թարմ հոսանք կմտցնեն աշխատանքում:

«Պարտիան կարևորագույն խնդիր է համարում,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների կատարելագործումն ու անշեղ կիրառումը: Պետք է լիովին իրականացվեն՝ սովետների և նրանց դեպուտատների կանոնավոր հաշվետվությունը ընտրողների առջև, վստահությունը չարդարացրած դեպուտատներին ժամկետից շուտ ետ կանչելու ընտրողների իրավունքը. պետական կառավարման, տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր կարևոր հարցերի հրապարակայնությունը, ազատ ու բազմակողմանի քննարկումը սովետների սեսիաներում. վարից վեր իշխանության գործադիր օրգանների կանոնավոր հաշվետվությունը սովետների սեսիաներում. այդ օրգանների աշխատանքի ստուգումը և նրանց գործունեության վերահսկումը. սովետների կողմից դեպուտատների հարցապնդումների սիստեմատիկ քննարկումը. սովետական, տնտեսական ու մյուս կազմակերպությունների աշխատանքի թերությունների քննադատությունը»: Հետկհետե ընդլայնվում են շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային սովետների իրավունքները, նրանք կլուծեն տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը: Սովետներն իրենց առջև դրված բազմաթիվ խնդիրները լուծում են լայն մասսաների անմիջական օգնությամբ և աստիճանաբար վերածվում են հանրային ինքնավարության օրգանների:

Աշխատավորների դեպուտատների սովետների գործունեության, նրանց աշխատանքի հետագա բարելավման համար նոր, լայն հեռանկարներ են բացել ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները: Պլենումի որոշումներին համապատասխան, պարտիական օրգանների հետ միասին արտադրական սկզբունքով վերակառուցվեցին նաև սովետական օրգանները: Այդ վերակառուցմամբ մեր ռեսպուբլիկայի վարչա-տերիտորիալ կազմում տեղի է ունեցել զգալի փոփոխություն. մի շարք շրջաններ միացվել ու խոշորացվել են. նախկին առանձին խոշոր շրջկենտրոններ ու բնակավայրեր դասվել են ռեսպուբլիկական ու շրջանային ենթակայության քաղաքների ու քաղաքատիպ ավանների կատեգորիային: Այդ փոփոխության համապատասխան քաղաքների ու գյուղական շրջանների համար ընտրված են առանձին-առանձին սովետներ: Ընտրված սովետները աշխատում են նոր պայմաններում: Կազմակերպված լինելով ըստ արտադրական սկզբունքի, սովետներն ու նրանց գործկոմները այլևս միաժամանակ չեն զբաղվում և՛ քաղաքին, և՛ գյուղին վերաբերող հարցերով: Հասկանալի է, որ նրանք այժմ իրենց ուժերը կենտրոնացնում են ավելի կոնկրետ գործերի վրա, հնարավորություն ունեն գործիմացությամբ ու հաջողությամբ լուծելու իրենց իրավասության հարցերը, որոնց շրջանակները պարզ են ու որոշակի: Դա նոր երևույթ է տեղական սովետների աշխատանքում, որը, անտարակույս, կտա իր գոհացուցիչ արդյունքը: Մնում է լրիվ օգտագործել սովետների դեպուտատների, ողջ ակտիվի ուժերը, առաջին պլանի վրա դնել կազմակերպական աշխատանքը, ձեռնամուխ լինել գլխավոր հարցերի լուծմանը, իսկ գլխավորը կոմունիստական շինարարության մեջ էկոնոմիկան է, արտադրությունը, պայքարը հանուն մարդու նյութական ու հոգևոր բարիքների ստեղծման:

Փայլուն ցուցանիշներով ավարտելով յոթնամյակի չորրորդ տարին, ռեսպուբլիկայի աշխատավորները բարձր խանդավառությամբ իրականացնում են յոթնամյակի հինգերորդ տարվա ավելի մեծ ու պատասխանատու խնդիրները: Այդ ուղղությամբ հայրենասիրական հրաշալի նախաձեռնություն են հանդես բերել Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական և էլեկտրալամպերի գործարանների կո-

լեկտիվները, որոնք մրցություն են ծավալել 1963 թվականի համախառն արտադրանքի պլանը 103,5 տոկոսով կատարելու համար: Այդ կոլեկտիվների նախաձեռնությունը լայն արձագանք է գտել մյուս արդյունաբերական ձեռնարկություններում, որոնց բանվորները, ինժեներատեխնիկական անձնակազմը նույնպես նման բարձր պարտավորություն են ստանձնում:

Սոցիալիստական մրցությունը լայն ծավալ է ստացել նաև կոլտնտեսային գյուղում: Ջերմորեն արձագանքելով Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսության մասնագետների նամակին, որն արժանացել է ՍՄԿՊ Կենտկոմի հավանությանը, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողները կոնկրետ պարտավորություններ են ստանձնում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը վճռականորեն բարձրացնելու, յոթնամյակի հինգերորդ տարին առատության և լիության տարի, սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի տարի դարձնելու համար:

Առաջինն արձագանքելով Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության աշխատողների նամակին, Մարտունու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության գյուղատնտեսության առաջավորներն իրենց հավաքում պարտավորվեցին 1963 թվականին, անցած տարվա փաստացի ստացվածից ավելի արտադրել՝ ամբարային հաց 18, միս՝ 24, կաթ՝ 21,6, բուրդ՝ 30, ձու՝ 71,3 տոկոսով: Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները նաև պարտավորվեցին ծխախոտի պլանտացիաները հասցնել 1074 հեկտարի, որը 70 տոկոսով ավելի է յոթնամյա պլանով նախատեսվածից, իսկ բերքատվությունը հեկտարից՝ 18 ցենտների: Ավելի բարձր պարտավորություններ ստանձնեցին գյուղատնտեսության առանձին առաջավորներ, բրիգադներ, ֆերմաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ: Մարտունեցիները դիմեցին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին՝ սոցիալիստական մրցության դուրս գալու 1963 թվականը գյուղատնտեսության մթերքների առատության տարի դարձնելու համար:

Պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունների հետ միասին շրջանային ու գյուղական սովետները պետք է բազմակողմանի օգնություն ցույց տան մրցության դուրս եկած արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողներին, օգնելով նրանց ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու: Դա սովետների այսօրվա ամենաառաջնահերթ, ամենակարևոր խնդիրներից մեկն է:

Տնտեսական շինարարության հարցերի հետ միասին, տեղական սովետների առջև լուրջ խնդիրներ են ծառացած նաև բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների հետագա բարելավման, բնակարանային շինարարության, քաղաքների ու գյուղերի բարեկարգման, ժողովրդական առողջապահության, լուսավորության, սովետական առևտրի կարգացման և այլ բնագավառներում: Մեծ ու բազմազան են իշխանության տեղական օրգանների՝ սովետների ու նրանց գործկոմների խնդիրները: Համարյա չկա կյանքի մի բնագավառ, որտեղ նրանք չունենան իրենց հիմնական. վճռական անելիքները:

Որպեսզի սովետները նոր պայմաններում կարողանան իրենց առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծել, իրենց գործունեության տարբեր ոլորտներում պետք է լայնորեն ծավալեն հասարակական հիմունքներով աշխատանքը, հմտորեն օգտագործեն դեպուտատների, ակտիվի, հոծ մասսաների անսպառ ուժը, նրանց ստեղծագործական նախաձեռնությունը: Այդ տեսակետից մեծ դեր են խաղում սո-



վետների մշտական հանձնաժողովները, որոնք մասսաների հետ կապվելու կարևոր օղակներ են, նրանց ուժերը օգտագործելու հիմնական միջոցը: Բնակչության լայն կանգվածներին ընդգրկելով պետության կառավարման մեջ, նրանք լուծում են տնտեսական ու կուլտուրական շինարարության բազմապիսի հարցեր, էժանացնում, պարզեցնում ու ավելի օպերատիվ են դարձնում գործող կառավարման ապարատը: Գնալով կբարձրանա հանձնաժողովների դերը, կընդարձակվեն նրանց ֆունկցիաները: Այդ կարևոր օղակի և հասարակական կազմակերպությունների միջոցով կլուծվի սոցիալիստական պետությունն աստիճանաբար կոմունիստական ինքնավարության վերաճելու խնդիրը:

Այս նոր խնդրի լուծման ճանապարհին շատ ու շատ մշտական հանձնաժողովներ արդեն շոշափելի գործ են կատարում: Երևանի քաղսովետի մշտական հանձնաժողովները մեկ տարվա ընթացքում սեփական նախաձեռնությամբ ուսումնասիրել են ավելի քան 130 հարց, որոնց մեծ մասը ժամանակին քննարկվել է սովետի գործկոմի նիստերում: Տրանսպորտի, առողջապահության, լուսավորության և բնակարանների բաշխման հանձնաժողովները հաճախ ստուգում են սովետի գործկոմի որոշումների կատարման ընթացքը, քննության առնում համապատասխան բաժինների գործունեությունը և կոնկրետ միջոցառումների դիմում այն բարելավելու համար: Այդպիսի հանձնաժողովներ կան նաև մյուս սովետներում, որոնց աշխատանքի դրական փորձը պետք է մասսայականացնել և նրանց օրինակով ուժեղացնել բոլոր մշտական հանձնաժողովների գործունեությունը:

Ճիշտ չեն վարվում առանձին սովետների գործկոմների ղեկավարները, որոնք երբեմն թերահավատություն են ցուցաբերում հասարակական հիմունքներով աշխատող մշտական հանձնաժողովների նկատմամբ: Նրանց համար հեշտ է հրամայել, վարչական մեթոդներով ղեկավարել ու գործ ունենալ միայն հաստիքային աշխատողների հետ: Բայց այդ ընկերները մոռանում են, որ այժմ, նոր պայմաններում, առաջին պլանի վրա է դրվում համոզման մեթոդը, հասարակական հիմունքներով լայն ակտիվի օգտագործումը: Մյուս կողմից անհրաժեշտ է գործն այնպես տանել, որ պետական վճարովի ապարատը կրճատվի, որ կառավարման հմտության տիրապետեն ավելի ու ավելի լայն մասսաներ, և այդ ապարատում աշխատանքը հետագայում դադարի հատուկ պրոֆեսիա լինելուց:

Ռեսպուբլիկայի մի շարք քաղաքներում ու գյուղերում գովելի գործ է կատարվում կոմունիստական կենցաղավարության տարածման ու արմատավորման ուղղությամբ: Կիրովականի քաղսովետի տնային կառավարչությունները մշտական հանձնաժողովների ու քաղաքացիների ակտիվ մասնակցությամբ ջանում են, որպեսզի մաքուր լինեն փողոցները, բակերն ու շենքերը, հետզհետե ընդարձակվի քաղաքի կանաչ գոտին, փարթամորեն աճեն ծառն ու ծաղիկը, մարդիկ միմյանց հետ վերաբերվեն որպես ընկեր, բարեկամ ու եղբայր, իսպառ վերացվեն հակահասարակական երևույթները, բարձր պահվի սովետական մարդու արժանապատվությունը, ավելի բարելավվի նրա կուլտուրական ու կենցաղային սպասարկումը: Սրանք նոր երևույթներ են, որոնք աստիճանաբար մուտք են գործում կոմունիզմ կառուցող մարդու կենցաղում, դառնում նրա բարոյական վարքագծի անխախտ նորմերը: Սովետների, նրանց դեպուտատների խնդիրն է՝ ամեն կերպ պաշտպանել ու տարածել կոմունիստական կենցաղավարության համար սկսված շարժումը, պարտիական ու հասարակական կազմակերպությունների օգնությամբ և սերտ համագործակցությամբ մեր բոլոր մարդկանց հետևողականորեն դաստիարակել կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ոգով:

Աշխատելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների, պարտիայի ծրագրի կենսագործման նշանաբանով, տեղական սովետների գործկոմները, առանձնապես Երևանի քաղսովետի գործկոմը, 1962 թվականին զգալի գործ կատարեցին բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության ասպարեզում: Բավական է ասել, որ պետական ու կոոպերատիվ միջոցների, ինչպես նաև բնակչության միջոցների հաշվին պետական վարկի օգնությամբ, անցած տարի շահագործման հանձնվեցին 787 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ ավելի քան 16,3 հազար նոր բարեկարգ բնակարաններ: Բացի այդ, գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան պետական ու կոլտնտեսային վարկի օգնությամբ կառուցեցին մոտ 6,9 հազար բնակելի տուն: Ռեսպուբլիկան 1962 թ. գերակատարեց բնակարանային շինարարության պլանը: Բայց հարկ է նշել, որ առանձին սովետների գործկոմներ ինչպես հարկն է չհետևեցին շինարարության որակին, խիստ հսկողություն չսահմանեցին ֆոնդերի ճիշտ իրացման, շինարարական տեխնիկայի ու բանվորական ուժի ռացիոնալ օգտագործման վրա, որի հետևանքով էլ խախտվեցին մի շարք օբյեկտների կառուցման ժամկետները, առանձին շենքեր շահագործման հանձնվեցին աններելի թերություններով:

Ընթացիկ տարում բնակարանային, կուլտուր-կենցաղային շինարարությունը զգալի չափով ընդարձակվելու է: Տեղական սովետների ու նրանց գործկոմների խնդիրն է՝ բոլոր միջոցները ձեռք առնել շինարարության գործում նկատվող թերություններն իսպառ վերացնելու և շինարարական կազմակերպություններին ռեալ օգնություն ցույց տալու՝ շինարարության պլանը ժամանակին ու բարձր որակով կատարելու համար:

Անհրաժեշտ է, որ տեղական սովետները կոնկրետ միջոցների դիմեն նաև կուլտուր-լուսավորական, հասարակական սննդի, առողջապահության, կենցաղային սպասարկման հիմնարկների ու ձեռնարկությունների, առևտրի ցանցի գործունեության մեջ դեռևս եղած թերությունների վերացման, բնակչության սպասարկման կուլտուրայի բարձրացման համար: Նրանք պետք է ավելի ճկուն, ավելի օպերատիվ դարձնեն տեղական պետական ապարատը, անխնա պայքար ծավալեն քաշքշուկի, թափթփվածության, բյուրոկրատիզմի երևույթների, մարդու նկատմամբ անհոգի վերաբերմունքի դեմ, բոլորի մոտ հարգանք սերմանեն դեպի օրենքը, ամեն կերպ ապահովեն սոցիալիստական օրինականության անխախտ պահպանումը:

Պարտիական կազմակերպությունները պետք է ամենօրյա ղեկավարություն ցույց տան տեղական սովետներին, օգնեն նրանց՝ աշխատանքը նոր պայմանների համաձայն վերակառուցելու և պատվով կատարելու այն բոլոր խնդիրները, որոնք դրված են նրանցից յուրաքանչյուրի առաջ:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

*Այժմ, երբ ավարտվել է յոթնամյակի չորրորդ տարին, Սովետական Միության ժողովուրդները նրա հինգերորդ տարվա շեմին գոհունակությամբ ամփոփում են իրենց ստեղծագործական աշխատանքի արդյունքները, նշում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, ՍՄԿՊ XXII համագումարի ընդունած՝ կոմունիզմի կառուցման ծրագրի կատարման համար մղվող պայքարի նոր բնագծերը:*

*Կոմունիզմը ստեղծվում է ՍՍՌՄ բոլոր եղբայրական ժողովուրդների համատեղ ստեղծագործական ջանքերով: Յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայի աշխատավորներ իրենց բաժինն են մուծում երկրի հանրային հարստությունների ընդհանուր շտեմարանը, կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:*

*Սովետական ժողովուրդների եղբայրական միասնական ընտանիքում հսկայական հաջողություններ են ձեռք բերել մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի բանվորներն ու մասնագետները: Նշանակալի չափով զարգացել են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը և բարձրացել է նրա տեխնիկական մակարդակը:*

*1962 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1961 թվականի համեմատությամբ, աճեց 9,1 տոկոսով և 1958 թվականի մակարդակը գերազանցեց 51,6 տոկոսով: Արդյունաբերական արտադրանքի ծավալի բացարձակ աճը չորս տարվա ընթացքում կազմեց 404 միլիոն ռուբլի:*

*Զարգացման այս տեմպը բնականորեն պայմանավորված է սոցիալիստական տնտեսության անկասկածելի առավելություններով: Նշված ժամանակաշրջանում, արդյունաբերության պլանի հաջող կատարման շնորհիվ, յոթնամյա պլանի առաջադրանքներից բացի, թողարկվել է 155,4 միլիոն ռուբլու արտադրանք: Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել կապիտալ շինարարության արագացման և կապիտալ ներդրումների էֆեկտիվությունը բարձրացնելու գործում: Պետք է նշել, որ 1962 թվականին, առաջին անգամ վերջին տարիների ընթացքում, գրեթե լրիվին յուրացվել են պետական պլանով նախատեսված կապիտալ ներդրումների բոլոր միջոցները:*

*Գործարկվել են Երևանի հիդրոէլեկտրակայանը՝ Սևան—Հրազդան հիդրոէներգետիկ կասկադի վերջին կառույցը, երկրում մեծ քիմիայի ամենախոշոր օբյեկտներից մեկը՝ Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանը,*

քիմիական արդյունաբերության մի շարք օբյեկտներ՝ պոլիվինիլացետատ գործարանի ացետիլ ցելյուլոզի, նատրի-ացետատի ցեխը, Կիրովականի քիմիական կոմբինատի մելամինի ցեխը, Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի տեխնոլոգիական երկրորդ գիծը, դաշնամուրների ֆաբրիկան, Լուսավանի հաստոցաշինական գործարանի չուգունի ձուլման կոմպլեքսը, մեքենաշինության մի քանի հզորություններ, գյուղատնտեսական, կուլտուրայի ու առողջապահության օբյեկտներ։

Բնակարանային շինարարության պլանը կապիտալ ներդրումների ծավալով կատարված է 104,3 տոկոսով. շահագործման է հանձնվել 30 տոկոսով ավելի բնակելի տարածություն, քան 1961 թ.։ Կատարված են նաև աշխատանքի արտադրողականության պլանի առաջադրանքները ինչպես արդյունաբերության, այնպես էլ շինարարության մեջ։ Յոթնամյակի առաջադրանքների կատարումը պահանջում է ավելի ռացիոնալ օգտագործել ռեսպուբլիկայի բոլոր տնտեսական ռեսուրսները և նրա արդյունաբերության հիմնական ֆոնդերը, ավելի կատարելագործել արտադրության կազմակերպումը։ Այդ բանին անկասկած կնպաստի ժողովրդական տնտեսության կառավարման վերակառուցումը ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան։

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը խորապես վերլուծեց պարտիական ու տնտեսական ղեկավարման ձևերը և, հաշվի առնելով երկրի էկոնոմիկայի զարգացման կուտակած փորձը, որոշում ընդունեց ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման նոր ձևեր ստեղծելու մասին, նշեց նրա կազմակերպման ու պլանավորման հետագա կատարելագործման ուղիները։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներում նշված է, որ ժողովրդական տնտեսության մասշտաբների ընդլայնումը, գիտության ու տեխնիկայի սրընթաց զարգացումը հրամայաբար առաջ են քաշում պլանավորման գիտական մակարդակն է՛լ ավելի բարձրացնելու խնդիրը։ Անհրաժեշտ է պլանավորել այնպես, որ առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործվեն բոլոր նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները, բնական հարստությունները, որ ավելի արդյունավետ արմատավորվի նոր տեխնիկան, վերացվեն ավելորդ ծախսերն ու կորուստները արտադրության մեջ։ Սակայն կենտրոնական ու տեղական պլանային օրգանների աշխատանքը դեռևս շատ առումներով չի համապատասխանում մեր էկոնոմիկայի զարգացման արդի էտապի պահանջներին։

Տնտեսական պլանները ոչ միշտ են հիմնված լինում տնտեսական մանրազնին հետազոտությունների ու հաշվարկումների վրա, առանձին ճյուղերի և տնտեսական շրջանների զարգացման տեմպերը որոշելիս ելնում են միայն ստեղծված պրոպորցիաներից և առանձին դեպքերում հաշվի չեն առնում արդյունաբերության առավել հեռանկարային ճյուղերի ավելի արագ աճման անհրաժեշտությունը։

Լուրջ թերացում է նաև այն, որ տնտեսական պլանները բավականաչափ հիմնավորված չեն լինում տնտեսապես։ Տնտեսական մանրազնին հաշվարկումների ու հետազոտությունների փոխարեն պլանները կազմելիս երբեմն դեր է խաղում կամային մոմենտը, զգացվում է նկատելի սուբյեկտիվիզմ և նեղգերատեսչական մոտեցում հարցերին, իսկ դա վնաս է բերում համապետական շահերին։



Վերջին տարիներս ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում ստեղծվել են և ստեղծվում են մեքենաշինական նոր ձեռնարկություններ։ Դրանց կազմակերպման հարցերը լուծելիս հիմնական չափանիշ էր հանդիսանում բնակչությանը աշխատանք տալու և գոյություն ունեցող արտադրական հրապարակներն օգտագործելու մոմենտը։ Այդ տեսակետից արդարացված է այդ ձեռնարկությունների կազմակերպումը, բայց դա բնավ չի նշանակում, թե պետպլանը և ժողտնտխորհը չպետք է մշակեն այդ գործարանների տեխնիկա-տնտեսական հիմնավորումը, չպետք է որոշեն արտադրության հստակ պրոֆիլը և մասշտաբները առաջիկա տարիների հեռանկարով, ինչը որ չի արված մինչև օրս։

Ոչ պակաս էական թերություն է ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացման տեմպերը ստեղծված պրոպորցիաներով որոշելու պրակտիկան, որը երբեմն կասեցնում է տնտեսապես առավել հեռանկարային և պրոգրեսիվ ճյուղերի արագ զարգացումը։ Պետք է նշել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական պրոֆիլը ինչպես յոթնամյակի, այնպես էլ հեռանկարային ժամանակաշրջանի համար, ամբողջությամբ վերցրած, համապատասխանում է մեր հումքային և աշխատանքային ռեսուրսներին և ճիշտ է որոշում ռեսպուբլիկայի տեղը աշխատանքի համամիութենական բաժանման մեջ։ Դա, իհարկե, չի նշանակում, թե աստիճանական ճշգրտումներ չպետք է մտցվեն առանձին ճյուղերի, ենթաճյուղերի և անգամ առանձին ձեռնարկությունների զարգացման արդեն ընդունված մասշտաբներում։ Դա անհրաժեշտ է թեկուզ այն պատճառով, որ օրեցօր հարստանում են մեր գիտելիքները ռեսպուբլիկայի հումքային հարստությունների մասին, իսկ գիտության ու տեխնիկայի արագընթաց պրոգրեսը նորանոր պահանջներ է առաջադրում արդյունաբերության ավելի հեռանկարային ու պրոգրեսիվ ճյուղերի զարգացմանը։

Ներկայումս ակնհայտ է, որ ռեսպուբլիկայի հումքային ռեսուրսները հնարավորություն են տալիս ավելի արագ տեմպերով զարգացնելու գունավոր մետալուրգիան և դրա հիման վրա կազմակերպելու մեքենաշինության նոր, ավելի ժամանակակից արտադրանքների թողարկումը։

Ուստի հարկավոր է վերանայել մեքենաշինության առանձին ճյուղերի զարգացման տեմպերը, նպատակ ունենալով շեշտակի ավելացնել արտադրության մասշտաբները սարքաշինության և ռադիոէլեկտրոնիկայի ասպարեզում։

Քիմիական արդյունաբերության զարգացման պլանավորման մեջ պատշաճ չափով լուծված չեն ռեսպուբլիկայում եղած աղի անսպառ պաշարները ավելի լրիվ ու կոմպլեքսային ձևով օգտագործելու հարցերը։

Վերջին տարիներս սովետական գիտնականներն ապակու հիման վրա ստեղծել են քիմիական ու մեխանիկական հիանալի հատկություններ ունեցող մի շարք նոր նյութեր։ Ժողտնտխորհի անօրգանական քիմիայի գիտահետազոտական ինստիտուտի աշխատանքները ցույց են տվել, որ Հայաստանում հնարավոր է մեծ չափերով ապակե մանրաթել ստանալ տուֆից, պեմզայից ու կավից և այդ հիման վրա ռեսպուբլիկայում կազմակերպել ապակե պլաստիկատների արտադրությունը։ Եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ ապակե պլաստիկատների արտադրության մեջ պոլիմերների կամ ձյութերի բաժինը կկազմի միայն 20 տոկոս, իսկ մնացած 80 տոկոսը կլինի ապակե մանրաթել, ապա հասկանալի է, որ ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը կարող է զգալի չափով կրճատել բնական գազի ծախսումը։

Անհրաժեշտ է նշել, որ պետպլանի աշխատանքներում հեռանկարային

պլանավորման հարցերը չեն գրավում իրենց պատշաճ, կենտրոնական տեղը։ Ռեսպուբլիկայի պետպլանի աշխատաժամանակի ընդհանուր բալանսում մեծ տեղ են գրավում ընթացիկ պլանների հարցերը և այլ պլանների բազմակի փոփոխությունները։

Մինչդեռ պարտիան շարունակ մատնանշել է, որ հեռանկարային պլանավորման հարցերը պետք է առանցքային լինեն պետպլանի համար և պետք է կատարվեն ամեն օր։ Սակայն ռեսպուբլիկայի պետպլանում հեռանկարային պլանների մշակումը կամպանիոն բնույթ է կրում։ Դեռ ավելին, հեռանկարային պլանները մշակելուց ու համաձայնեցնելուց հետո նորից սկսում են կազմել տարեկան պլանները, առանց բավականաչափ շաղկապելու հեռանկարային պլանի առաջադրանքների հետ։ Դրա բնորոշ օրինակը կարող է ծառայել թեկուզ հենց 1963 թվականի պլանը, որի մշակումը կատարվեց յոթնամյակի մնացած երեք տարիների՝ 1963—1965 թվականների առաջադրանքները ճշգրտելու ժամանակ։ Այնուամենայնիվ, մի շարք կարևորագույն հարցերում 1963 թվականի պլանը էապես շեղվում է 1963 թվականի համար յոթնամյա պլանի սահմանած առաջադրանքներից։

Այս պայմաններում դժվար է խոսել պլանավորման անընդհատության և մեր ձեռնարկություններում ու կառույցներում հեռանկարային գործում պլանի առկայության մասին։ Մինչդեռ պլանային աշխատանքի բարելավման համար պակաս նշանակություն չունի ձեռնարկությունների նախաձեռնությունը։

Պլանավորման ամենամեծ արատն այն է, որ պրակտիկա է դարձել տարեկան պլանների մեջ անվերջ ուղղումներ ու փոփոխություններ մտցնելը, ինչը վկայում է, որ դրանք բավականաչափ կանխամտածված չեն։

Պլանների մեջ կատարվող բազում փոփոխությունների հիմնական պատճառն այն է, որ արտադրության և շինարարության պլանները համաձայնեցված չեն եղել նյութատեխնիկական ապահովման պլանների հետ։

1962 թվականին կոմպլեկտային արտադրանքների, հումքի և նյութերի մատակարարման հետ արտադրության պլանը չհամաձայնեցնելու պատճառով փոփոխվել են պլանները I եռամսյակում արտադրանքի 6, II եռամսյակում՝ 15, III եռամսյակում՝ 25 և IV եռամսյակում՝ 34 տեսակների գծով։

Պլանները բազմիցս փոփոխվել են կարողությունների գործարկման ժամկետները խախտելու հետևանքով։ Այսպես, 1962 թվականին այդ պատճառով փոփոխվել է արտադրանքի չորս տեսակների թողարկումը II եռամսյակում, հինգ տեսակներինը՝ III և դարձյալ հինգ տեսակներինը՝ IV եռամսյակում։

Արտադրանքի պահանջարկը ճշտելու պատճառով փոփոխված է թողարկվող արտադրանքի քանակը առաջին եռամսյակում հինգ տեսակների, II եռամսյակում՝ տասը, III եռամսյակում՝ տասնմեկ և IV եռամսյակում՝ տասնհինգ տեսակների գծով։

Արտադրանքի նոր տեսակների արտադրության տեխնոլոգիան չյուրացնելու պատճառով փոփոխվել է պլանը I եռամսյակում 3 տեսակների, II եռամսյակում՝ 4 և IV եռամսյակում՝ 4 տեսակների գծով։

Այս բոլոր փոփոխություններն իրենց հերթին այն հետևանքն ունեցան, որ փոխվեցին համախառն ու ապրանքային արտադրանքի չափերը, աշխատանքի և ինքնարժեքի ցուցանիշները։

Անտարակույս ժողովրդատնտեսական պլանի կատարման պրոցեսում կյանքը կարող է պահանջել փոփոխել նրա առանձին ցուցանիշները, որը թելա-



դրվում է տնտեսական նպատակահարմարությամբ։ Սակայն, պրակտիկան ցույց է տալիս, որ փոփոխությունների մասսայական բնույթը հիմնականում պայմանավորված է այն բանով, որ տնտեսական ու պլանային օրգանների առանձին օղակների աշխատանքի մեջ չկա համաձայնեցում։

Պլանների հաճախակի փոփոխությունները հանգեցնում են անկայուն պլանների արատավոր պրակտիկային և «նպաստավոր» հող են ստեղծում պլանի ցուցանիշների և փաստական կատարման մակարդակի հավասարեցման համար։

Յոթնամյակի անցած տարիների ընթացքում ՀԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը հատուկ ուշադրություն են դարձրել ռեսպուբլիկայի տերիտորիայում արդյունաբերական ձեռնարկություններն ավելի ռացիոնալ կերպով տեղաբաշխելու վրա։ Յոթնամյա պլանի կատարման շնորհիվ ստեղծվում են այնպիսի նոր արդյունաբերական կենտրոններ, ինչպիսիք են՝ Հրազդանը, Լուսավանը, Աբովյանը, Ագարակը, Սևանը, Գագարինը և այլն։ Խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ շահագործման կհանձնվեն Դիլիջանում, Ստեփանավանում, Իջևանում, Կամոյում։ Սրանք միայն առաջին քայլերն են արտադրողական ուժերի տեղաբաշխման ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմի լուծման ասպարեզում։ Վաղուց է ծագել ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի տեղաբաշխման գիտականորեն հիմնավորված գլխավոր սխեման մշակելու անհրաժեշտությունը։

Այդ կարևոր ժողովրդատնտեսական պրոբլեմի մշակման գործում պետք է ներգրավվեն ռեսպուբլիկայի մի շարք գիտա-հետազոտական ինստիտուտներ, առաջին հերթին տնտեսագիտական ինստիտուտները, որոնց աշխատանքը պետք է ամենայն մանրամասներով կոորդինացված լինի ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական հեռանկարային ուղղությունների հետ։ Սակայն պետպլանի ապարատում անգամ մինչև հիմա էլ ստեղծված չէ այդ աշխատանքի իրականացման օղակ, մինչդեռ անհրաժեշտ է ունենալ այդպիսի օղակ՝ կազմված բարձրորակ մասնագետներից։

Պլանային օրգանների հասցեին բազմիցս արդարացի կշտամբանքներ են լսվում պլանների ցուցանիշների կատարելագործման հարցում, առաջին հերթին ձեռնարկությունների նյութական շահագրգռվածության համար պայմաններ ստեղծելու գործում։

Անցած տարվա հաշվետվությունների «բազայի» վրա առաջադրանքներ սահմանելու գոյություն ունեցող պրակտիկան այն հետևանքն է ունենում, որ լավ աշխատող կոլեկտիվները պլանային տարվա ընթացքում դրվում են բացահայտ ոչ ձեռնտու պայմաններում այն կոլեկտիվների համեմատությամբ, որոնք իրենց ներքին ռեզերվները վատ են օգտագործել տվյալ տարում։ Այդպիսի պլանավորման ուղղակի հետևանքն է լինում մեր տնտեսավարների շրջանում տեղ գտած «սակարկությունների» պրակտիկան, երբ պլանների համաձայնեցման ստադիայում նրանք ձգտում են ստանալ այնպիսի թեթև պլաններ, որոնք թույլ կտան ունենալու առաջադրանքների գերակատարման «գեղեցիկ» ցուցանիշներ։

Այդ արատավոր պրակտիկան կարելի է վերացնել պլանների տեխնիկատնտեսական հիմնավորումների մակարդակը բարձրացնելու միջոցով, այն հաշվով, որ պլանային առաջադրանքների հիմքում դրվի ոչ թե փաստացի ձեռք բերված մակարդակը, այլ ձեռնարկությունների ռեալ հնարավորությունները,

որոնք հաստատված են տեխնիկա-տնտեսական հաշվարկումներով։ Բայց սա հարցի միայն մի կողմն է։ Երկրորդ և, մեր կարծիքով, ավելի վճռական կողմն այն է, որ պետք է ստեղծել պլանավորման այնպիսի սիստեմ, որը ձեռնարկությունների կոլեկտիվներին դրդի ստանձնելու ավելի բարձր պարտավորություններ։

Դրա համար հարկավոր է գործի գցել այնպիսի մի կարևոր լծակ, ինչպիսին է ձեռնարկությունների աշխատողների նյութական շահագրգռվածությունը, նյութական ռեսուրսների, հիմնական ֆոնդերի ավելի արդյունավետ օգտագործման, պահանջվող ասորտիմենտով արտադրանքի թողարկման, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման ասպարեզում։

Ներկայումս կիրառվող պլանային շատ ցուցանիշներ չեն համապատասխանում այդ խնդիրներին։ Դեռ ավելին, պլանի հիմնական ցուցանիշը՝ «համախառն արտադրանքը», հնարավորություն չի տալիս արտացոլելու տնտեսության մեջ տիրող իրական դրությունը և ձեռնարկությանը հարկադրում է թողարկել այնքան արտադրանք, որն ամեն կերպ ապահովի այդ «համախառնի» գերակատարումը։

Արտադրության պլանավորման գործի բարելավման հարցերի թվում կարևոր նշանակություն ունեն շահույթի և գների հարցերը։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովը սուր կերպով է դրել այդ հարցը։ Նա ասում էր. «Էական նշանակություն ունի, թե ինչպես է աշխատում ձեռնարկությունը— վնաս է տալիս, թե շահույթ է բերում, կլանում է հասարակական միջոցները, թե բազմապատկում դրանք»։

Ձեռնարկությունների շահութաբեր աշխատանքի համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու և իրական ու լրիվ տնտեսական հաշվարկ իրականացնելու համար անհրաժեշտ է վերացնել այն լուրջ թերությունները, որ կան արդյունաբերական արտադրանքի գների սահմանման ասպարեզում։

Պլանային-տնտեսական աշխատանքի պրոգրեսիվ մեթոդների հաստատման ճանապարհին դեռևս բավական դժվարություններ կան։ Խոսքը այնպիսի պրակտիկ միջոցառումների սիստեմի մշակման մասին է, որոնք խթանում են պլանավորման աշխատանքի մեթոդիկան օղակներում, որտեղ լուծվում է նրա կատարման բախտը, այսինքն՝ անմիջականորեն ձեռնարկություններում։

Այդ դժվարությունների հաղթահարման լավագույն ուղին այն կլինի, որ արդյունաբերության տարբեր ճյուղերում փորձնական ճանապարհով մշակվեն այնպիսի ցուցանիշներ, որոնք, հաշվի առնելով յուրաքանչյուր ճյուղի աշխատանքի սպեցիֆիկան, հնարավորություն տային գտնելու պլանի ավելի ճիշտ ցուցանիշների սիստեմ, նպաստեին ձեռնարկությունների արտադրական գործունեության ճիշտ գնահատմանը։ Այս աշխատանքում անհրաժեշտ է ներգրավել ո՛չ միայն պլանային օրգանների աշխատողներին ու տնտեսավարներին, այլև գիտնական տնտեսագետներին, մասնավորապես բուհերի տնտեսագիտական ամբիոնների աշխատողներին։

Պլանների տեխնիկա-տնտեսական հիմնավորումների մակարդակի բարձրացումը կախված է նաև նյութական ծախսումների նորմատիվների սիստեմի կատարելագործումից։ Հումքի և նյութերի ծախսման միասնական և պրոգրեսիվ նորմատիվներ չստեղծելու հետևանքով անխուսափելի են այն թերացումները, երբ արտադրական ծրագրի ամբողջական կատարման համար բավակա-



նաչափ պաշարների առկայության դեպքում որոշ ձեռնարկություններում գոյանում են ավելցուկներ, իսկ մյուս ձեռնարկություններում դրանք պակասում են։

Նյութատեխնիկական մատակարարման գործը կարգավորելու համար վճռական նշանակություն ունի մատակարարող ձեռնարկությունների և սպառող ձեռնարկությունների միջև բազմամյա անմիջական կապեր հաստատելը։ Այս հարցի վերաբերյալ պարտիայի և կառավարության ցուցումները դեռևս խիստ անհետևողականորեն են կիրառվում, որի հետևանքով էլ սիստեմատիկաբար փոխվում են մատակարարողների ու սպառողների միջև արդեն հաստատված կապերը։

Վերջին տարիներս ռեսպուբլիկայի պետպլանում ընդլայնված են աշխատանքի բալանսային մեթոդները։ Մշակվում են ամբողջական հասարակական արդյունքի և ազգային եկամտի ծավալը, էլեկտրաէներգիայի, վառելիքի, գյուղատնտեսական հիմնական մթերքների և այլ արտադրանքի թողարկման ու սպառման բալանսները։

Սակայն ամբողջությամբ վերցրած բալանսային աշխատանքների մակարդակը պետպլանում չի կարելի բավարար համարել գլխավորապես նյութական բալանսների մշակման գծով, առանց որի անկարելի է բարելավել նյութատեխնիկական մատակարարումը և հաստատել ճիշտ, ռացիոնալ տնտեսական կապեր։

Ռեսպուբլիկայի պլանային օրգանների գործունեությունը մեր զարգացման տվյալ էտապում չի կարող սպասելիք արդյունքները տալ, եթե այդ խիստ պատասխանատու գործին չլծվեն գիտահետազոտական, մանավանդ տնտեսագիտական, հիմնարկությունները։ Չնայած գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտի գործադրած ջանքերին՝ ակտիվորեն մասնակցելու տնտեսության զարգացման պլանների մշակման գործին, համենայնդեպս այն բավարար համարել չի կարելի։ Անհրաժեշտ է առաջիկայում պլանավորման հարցերի մշակմանն ակտիվորեն ներգրավել ռեսպուբլիկայի բոլոր տնտեսագետներին, ինչպես նաև բուհերի տնտեսագիտական ամբիոնների աշխատողներին։ Չենք կարող չնշել այս բնագավառում մի կարևոր թերություն ևս. դա ռեսպուբլիկայի մամուլի անբավարար մասնակցությունն է պլանային հարցերի մշակմանը և արծարծմանը։ Անհրաժեշտ է, որպեսզի թերթերը և ամսագրերը մշտապես իրենց տեսադաշտում պահեն ժողովրդական տնտեսության մեծ թե փոքր օբյեկտների անընդհատ պլանավորման կենսական հարցերը։ Սոցիալիստական պլանավորման բնորոշ գծերից մեկն էլ այն է, որ նրանում մասնակցում են հազարավոր բանիմաց աշխատողներ։ Ժամանակն է, որպեսզի մենք լիովին օգտվենք այդ մարդկանց անսպառ կարողություններից և ունակություններից։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը նշել է պլանային օրգանների աշխատանքի վերակառուցման պրակտիկ միջոցառումներ։ ՍՍՌՄ նախկին պետտնտխորհուրդը վերակառուցված և վերածված է ՍՍՌՄ Պետպլանի, որտեղ և կենտրոնացվում է ժողովրդական տնտեսության համապետական պլանավորումը։ ՍՄԿԿ Ծրագրի և ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության դիրեկտիվներին համապատասխան, ՍՍՌՄ Պետպլանը, հիմք ունենալով միութենական ռեսպուբլիկաների պլանները, պետք է մշակի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական

պլանները, ապահովի պլանավորման անընդհատությունը և պլանային առաջադրանքների հաջորդականությունը, ինչպես նաև պլանավորման հետագա կատարելագործումը սոցիալիզմի տնտեսական օրենքների և կոմունիստական շինարարության փորձի գիտական ընդհանրացման հիման վրա։

ՍՍՌՄ նախկին Պետպլանը վերակառուցված է որպես միութենական պետական օրգան՝ ՍՍՌՄ Ժողտնտխորհ, որի հիմնական խնդիրն է ապահովել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանների իրականացումը, առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործելով նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները, ամեն կերպ բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելով ինքնարժեքը և բարելավելով արտադրանքի որակը, ինչպես նաև հայտաբերել և օգտագործել ժողովրդական տնտեսության մեջ եղած ռեզերվները։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության խորհրդին տրված են կարգադրիչ ֆունկցիաներ՝ ժողովրդատնտեսական պլանների իրացման հետ կապված խնդիրներ լուծելու նպատակով։

Պարտիայի գործունեության վերջին տարիների փորձը, արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության ղեկավարման վերակառուցումը ակնառու կերպով ցույց են տալիս կազմակերպական հարցերի նկատմամբ լենինյան սկզբունքների վերականգնման ու զարգացման արդյունավետությունը։ Պարտիայի որոշումները սովորեցնում են, թե ինչպես պետք է ավելի հաջող կառուցել կոմունիզմը, ինչպես ավելի արագ զարգացնել էկոնոմիկան, որպեսզի մեր ժողովուրդը ավելի շատ նյութական ու հոգևոր բարիքներ ստանա։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, ինչպես և ամբողջ սովետական ժողովուրդը, լի են երկրի հարստությունները բազմապատկելու, նրա տնտեսական հզորությունն ավելի ամրապնդելու ջերմ ցանկությամբ ու վճռականությամբ։ Նրանք ակտիվ պայքարում են կոմունիզմի կառուցման մեծ ծրագրի իրականացման համար։

---

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1962 թվականին երկրի արդյունաբերությունը թողարկեց 8 տոկոսով ավելի արտադրանք, քան 1961 թվականին։ Առանձնապես արագ տեմպերով զարգացավ մեքենաշինությունը (1961 թվականի համեմատությամբ 11 տոկոսի աճ) և քիմիական արդյունաբերությունը (աճը կազմում է 20 տոկոս. շահագործման է հանձնըվել արհեստական պարարտանյութերի գործարանը Կազինցբարցիկում. գործարկվել են Տիսավիդի քիմիական կոմբինատի նոր ցեխերը։ Ավարտվել են դեղանյութերի երեք գործարանների կատարելագործումը Բուդապեշտում և այլն)։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

(Վ. Ի. Լենինի «Ինչպես վերակազմենք Բանգյուղտեսչությունը» և «Լավ է քիչ, բայց լավ» հոդվածների 40-ամյակի առթիվ)

Հ. Մ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



Պետական վերահսկողությունն այս կամ այն ձևով գոյություն ունի աշխարհի գրեթե բոլոր պետություններում։ Այն եղել է նաև նախառևոլյուցիոն Ռուսաստանում։ Սակայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո, պատմության մեջ առաջին անգամ, հանդես եկավ պետական վերահսկողության այնպիսի մի ձև, որը միաժամանակ նաև ժողովրդական վերահսկողություն է՝ իսկական դեմոկրատական վերահսկողություն, լիովին կանգնած ժողովրդի շահերի պաշտպանության դիրքերում. այն միշտ եղել է կոմունիստական պարտիայի և սովետական պետության այն հատու զենքը, որ մեծապես նպաստել է մարդկության պատմության մեջ առաջին սոցիալիստական հասարակարգի կառուցման համար մղված համաժողովրդական պայքարի հաջողությանը։

Սովետական դեմոկրատական վերահսկողության օրրանի մոտ կանգնած է եղել պրոլետարական ռևոլյուցիայի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Դեռևս քաղաքացիական կռիվների ամենաթեժ պահին՝ 1919 թվականի սկզբներին, Վ. Ի. Լենինի առաջարկությամբ ստեղծվեց Պետական վերահսկողության ժողկոմատ։ Երբ ՌԿ(բ)Պ Կենտկոմի քաղբյուրոյում քննվում էր «Պետական վերահսկողության մասին» դեկրետի նախագիծը, Վ. Ի. Լենինը քաղբյուրոյի անդամներին ուղարկեց մի գրություն, որի մեջ լիովին արտացոլված էին վերահսկողության ստեղծվող օրգանների գործունեության բովանդակությունն ու ձևերը։ Այնտեղ մատնանշվում էր.

«Իմ կարծիքով Վերահսկողության վերաբերյալ դեկրետում պետք է ավելացնել.

1) բանվորական մասնակցության կենտրոնական (և տեղական) օրգանների ստեղծումը։

2) օրենքով մտցնել պրոլետարական բնակչությունից ընտրականների սիստեմատիկ մասնակցություն, 2/3-ի չափով կանանց պարտադիր մասնակցությամբ։

3) Իսկույն առաջին պլանն առաջ քաշել, որպես մոտակա խնդիրներ՝





(α) Թուցիկ վերստուգումներ քաղաքացիների բողոքների համաձայն
(β) պայքար քաշքշուկի դեմ
(γ) պայքարի ռևոլյուցիոն միջոցներ չարաշահումների և քաշքշուկի դեմ
(τ) հատուկ ուշադրություն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և
(ε) մթերքների քանակի ավելացմանը և այլն» (Երկեր, հ. 28, էջ 632)։

1919 թվականի ապրիլի 9-ին Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեն ընդունեց «Պետական վերահսկողության մասին» դեկրետը։ Հենց այդ դեկրետն էլ դրեց սովետական սոցիալիստական պետական վերահսկողության սկիզբը, որի ամուր նեցուկը աշխատավոր մասսաների ամենալայն մասնակցությունն էր նրա գործունեությանը։

Դեկրետում ասվում էր, որ սովետական հիմնարկների գործունեությանը վերահսկող օրգանը պետական վերահսկողությունն է և նշվում էր, որ նրա գործունեությունը մինչև այժմ ընթացել է ձևական հսկողության խիստ նեղ շրջանակներում, որի հետևանքով էլ գերակշռել են հին, ոչ սոցիալիստական ոգուն խորթ ուժերը։ Դեկրետում ընդգծվում էր, որ անհրաժեշտ է ամենից առաջ նորացնել և վերափոխել այդ օրգանը, նրան տալ իրական, փաստական վերահսկողության նոր խնդիրներ, նրա աշխատանքում ներգրավել բանվորների և գյուղացիների լայն խավեր, որպեսզի պետական վերահսկողությունը դառնա ժողովրդական սոցիալիստական վերահսկողության, սոցիալիստական շինարարության փորձի կուտակման և սովետական իշխանության ամբողջ մեխանիզմի մշտական կատարելագործման օրգան։

1920 թվականի փետրվարի 8-ին Համառուսաստանյան կենտգործկոմը, հիմք ունենալով սովետների VII համառուսաստանյան համագումարի որոշումները, հրատարակեց «Բանվորա-գյուղացիական տեսչության մասին» դեկրետը։ Այդ դեկրետի առաջին կետում գրված էր պետական վերահսկողությունը բանվորների և գյուղացիների լայն մասնակցության հիման վրա վերակառուցելու անհրաժեշտությունը։ Միաժամանակ այդ օրգանին տրվում էր «Բանվորա-գյուղացիական տեսչություն» անունը։

Այդ դեկրետը, պահպանելով նախկինում պետվերահսկողության վրա դըրված բոլոր ֆունկցիաները, որպես կարևորագույն խնդիրներ առաջ էր քաշում պայքարը բյուրոկրատիզմի ու քաշքշուկի դեմ և հսկողությունը սովետական իշխանության դեկրետների ու որոշումների կենսագործման նկատմամբ։ Հըստակորեն ձևակերպելով ԲԳՏ-ի իրավունքները օրենսդրական նախաձեռնության բնագավառում, դեկրետը միաժամանակ տեսչությանը հանձնարարում էր առաջարկություններ մշակել սովետական պետական ապարատի պարզեցման վերաբերյալ, վերացնել նրա աշխատանքում եղած զուգահեռականությունն ու անտնտեսվարությունը։

Որոշելով վերահսկողության աշխատանքի բովանդակությունն ու մեթոդները, Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ վերահսկողությունը և կատարման ստուգումը չպետք է հանգեն լոկ բացասական փաստերի արձանագրմանը, մեղավոր անձեր «որսալուն» և նրանց մերկացմանը։ «Բանգյուղտեսչության խընդիրների, դրանց ըմբռնման և կատարման հարցի շուրջը» հոդվածում Լենինն ընդգծում էր, որ «Բանվորա-գյուղացիական տեսչության խնդիրն է՝ ո՛չ միայն և նույնիսկ ոչ այնքան «որսալ», «մերկացնել» (սա դատարանի խնդիր է, դատարան, որի հետ բանգյուղտեսչությունը շփվում է մոտիկից, բայց որին բնավ



նույնական չէ),— որքան կարողանալ ուղղել» և ապա շարունակում է. «Ժամանակին հմտորեն ուղղել՝ ահա բանգյուղտեսչության գլխավոր խնդիրը» (Երկեր, հ. 33, էջ 27)։

Ելնելով լենինյան դրույթներից՝ Համառուսաստանյան կենտգործկոմը 1922 թվականի հունվարի 9-ին հաստատեց բանվորա-գյուղացիական տեսչության ժողովրդական կոմիսարիատի կանոնադրությունը։

Պետական ապարատի աշխատանքի բարելավման հարցերին մեծ ուշադրություն նվիրեց պարտիայի XII համագումարը։ Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը հիվանդության պատճառով զրկված էր այդ համագումարի նիստերին մասնակցելու հնարավորությունից, սակայն համագումարում այդ հարցերի քննարկման հիմքում դրված էին դրանից առաջ Վ. Ի. Լենինի գրած «Ինչպես վերակազմենք Բանգյուղտեսչությունը» և «Լավ է քիչ, բայց լավ» հոդվածները։ Իր այդ հոդվածներում Լենինը լուսաբանում է սոցիալիստական պետական ապարատի գործունեության խոշորագույն պրոբլեմները և, իրեն հատուկ հանճարեղ կանխատեսությամբ, տալիս է այդ պրոբլեմների լուծումը։ Վ. Ի. Լենինի նախագծումների համաձայն մեր պետական ապարատի կատարելագործման ու նրա աշխատանքի բարելավման գործիքը բանգյուղտեսչությունն է, որը, ձուլվելով ԿՎՀ-ի հետ, պետք է դառնա մի օրինակելի հիմնարկ և իրենով որոշի մեր բովանդակ պետական ապարատն ամբողջությամբ։

Այդ նշանավոր աշխատությունների ստեղծմանը նախորդել է մի ամբողջ պատմական շրջան։ Պարտիայի X և XII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում, որը բնութագրվում էր խիստ բարդ պատմական իրադրությամբ՝ նոր տնտեսական քաղաքականության կիրառմամբ, երիտասարդ սովետական պետության բուռն զարգացումով ու ամրապնդումով, Վլադիմիր Իլյիչը խորապես հիմնավորեց մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցման հանճարեղ պլանը։ Այդ ժամանակաշրջանի աշխատություններում առանձնահատուկ տեղ են գրավում պետական ապարատի գործունեության բարելավման, այդ ապարատի ամրապնդման հարցերը։

Դա, իհարկե, պատահական չէր։ Պետական ապարատի գործունեության և դրա հետ կապված կատարման ստուգման հարցերը այդ ժամանակաշրջանում հատուկ նշանակություն էին ձեռք բերել և առաջին պլանն էին մղվել։ Վ. Ի. Լենինը 1922 թվականի ապրիլի 28-ին «Հին հոդվածներ նորերին մոտ թեմաներով» բրոշյուրի առաջաբանում գրում էր. «Թե՛ այն ժամանակ, թե՛ այժմ սովետական ամբողջ քաղաքականության «մեխը» հանգում է կազմակերպմանը, հաշվառմանը և վերահսկողությանը, գործնական խնդրին դանդաղ, զգույշ, գործարար մոտենալուն, փաստական աշխատանքի ստուգմանը, մեր գործնական փորձի ուսումնասիրությանը» (Երկեր, հ. 33, էջ 408)։

Այդ ժամանակաշրջանի իր աշխատություններում բազմակողմանիորեն մշակելով սովետական պետության արտաքին և ներքին քաղաքականության, պարտիական ու սովետական շինարարության, աշխատավորների մասսայական կազմակերպությունների ղեկավարման հարցերը, Վ. Ի. Լենինը միաժամանակ հանգամանորեն լուսաբանեց ու մշակեց սոցիալիստական պետական վերահսկողության կազմակերպման պրոբլեմը։

Մետաղագործների համառուսաստանյան համագումարի կոմունիստական ֆրակցիայի 1922 թ. մարտի 6-ի նիստում Վլադիմիր Իլյիչը հանդես եկավ ճառով «Սովետական ռեսպուբլիկայի միջազգային և ներքին դրության մասին»,

որտեղ խարազանելով մեր պետական ապարատում տեղ գտած օբլոմովշչինան, նա ասում էր. «Մեզ պետք է մարդկանց պիտանիության ստուգումը, փաստական կատարման ստուգումը». այնուհետև նա մատնանշում է. «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միմիայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հ. 33, էջ 264—265)։

Այդ ժամանակաշրջանում պարտիայի առջև ծառացած նոր խնդիրների հաջող կատարման համար Վ. Ի. Լենինը պահանջեց լրջորեն վերակառուցել պետական սոցիալիստական վերահսկողությունը, ուժեղացնել նրա գործունեությունը։ Լենինը երազում էր բանվորագյուղացիական տեսչության վսեմ խնդիրների ու նպատակների մասին, նա պահանջում էր «բացառիկ հոգատարություն» բանգյուղտեսչության նկատմամբ, «բացառիկ ուշադրություն նրան» և ինքն էլ անձամբ այդպիսի հոգատարություն, այդպիսի ուշադրություն էր ցուցաբերում։

Վ. Ի. Լենինի վերոհիշյալ ուշագրավ հոդվածները, որոնք նա գրել է պարտիայի XII համագումարի նախօրեին՝ 1923 թվականի հունվար—մարտ ամիսներին, հիվանդ, անկողնին գամված, հանդիսանում են մեր երկրում ժողովրդական-պետական վերահսկողություն հաստատելու պրոբլեմի բոլոր նախորդ մշակումների յուրահատուկ տեսական և գործնական ավարտումը։ Այդ ծրագրային փաստաթղթերում նա շաղկապում էր «վերակազմված բանգյուղտեսչության անելիքների հետ մեր աշխատանքի, մեր քաղաքականության, մեր տակտիկայի, մեր ստրատեգիայի ընդհանուր պլանը»։

Իրականացնելով նոր տնտեսական քաղաքականությունը, կոմունիստական պարտիան ավելի ամրապնդեց բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը, ամրապնդեց սոցիալիստական էկոնոմիկան։ Այդ ամենը պահանջում էր, ինչպես մատնանշում էր Լենինը, բարելավել պետական ապարատի գործունեությունը, պարզեցնել այն, բարձրացնել նրա աշխատանքի կուլտուրան։ Որպեսզի մեր երկիրը հնարավորություն ունենար զարգացնել ծանր արդյունաբերությունը, Լենինի պատկերավոր արտահայտությամբ՝ հարկավոր էր գյուղացիական աղքատ ձիուց իջնել ու նստել խոշոր մեքենայական ինդուստրիայի, էլեկտրիֆիկացման ձիու վրա, հարկավոր էր միջոցների մեծագույն խնայում։ Այդ խնդիրը հաջող լուծելու նպատակով Վլադիմիր Իլյիչը առաջարկեց վերակազմել բանվորա-գյուղացիական տեսչությունը և այն ձուլել պարտիայի Կենտկոմի կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի հետ։ Մշակելով այդ վերակազմման կոնկրետ պլանը և համակողմանիորեն բնորոշելով ԲԳՏ—ԿՎՀ-ի խնդիրները, Լենինը միաժամանակ ընդգծում էր այն բանի կենսական անհրաժեշտությունը, որ բանգյուղտեսչությունը պետք է բացառիկ բարձրության վրա դնել, «տալով նրան Կենտկոմի իրավունքներով օժտված գլուխ...»։

Վ. Ի. Լենինի մտահղացմամբ բանգյուղտեսչության վերակառուցումը ո՛չ միայն պետք է բարելավեր պետական ապարատը և ուժեղացներ պարտիայի ազդեցությունն ու ղեկավար դերը նրա նկատմամբ, այլև այն պետք է մաքրեր չինովնիկական որոշ տրադիցիաներից, որպեսզի երկրում չմնար թեկուզ մեկ բարձրաստիճան պաշտոնյա, որի նկատմամբ անկարելի լինի անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել։

Բայց վերակառուցման այդ պրոցեսը հարթ ու անհիվանդագին չէր ընթանում։ Եթե Վ. Ի. Լենինը հաստատակամորեն ու անդուլ կերպով զարգացնում, կատարելագործում էր պետական վերահսկողության սիստեմը, պարտիայի



թշնամիներն ամեն կերպ դիմադրում էին և ամեն միջոցներով ճգնում վիժեցնել կատարման ամենօրյա, խստագույն ստուգման կենսագործումը։

Ժողկոմսովետի և աշխատանքի պաշտպանության խորհրդի նախագահների տեղակալների աշխատանքի վերաբերյալ որոշումների նախագծի մասին քաղբյուրոյի անդամների արած դիտողություններին տված իր պատասխանում Վ. Ի. Լենինը սուր քննադատության ենթարկեց Տրոցկու թշնամական, հակապարտիական դիրքը բանգյուղտեսչության և պետպլանի դերի ու խնդիրների հարցում։ Ցույց տալով Տրոցկու պրովոկացիոն դիտավորությունները, Լենինն ընդգծում էր. «...չի կարելի կառավարվել առանց Բանգյուղտեսչության։ Հարկավոր է և պետք է սիստեմատիկորեն ու համառ կերպով աշխատել դրանց վրա՝ դրանից ամբողջ պետաշխատանքի ստուգման ու բարելավման ապարատ ստեղծելու համար։ Այլապես, ստուգելու, բարելավելու, աշխատել սովորեցնելու ոչ մի գործնական միջոց չկա» (Երկեր, հ. 33, էջ 417)։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, պարտիայի XII համագումարն ընդունեց ծավալուն որոշում «ԲԳՏ և ԿՎՀ խնդիրների մասին»։ Համագումարն ստեղծեց ԿՎՀ—ԲԳՏ միացյալ օրգանը, որի վրա դրվեցին պատասխանատու խնդիրներ՝ մեր պարտիայի միասնության պահպանումը, պարտիական և պետական կարգապահության ամրապնդումը, սովետական պետության ապարատի ըստ ամենայնի բարելավումը։

Կազմակերպական հարցերը սերտորեն շաղկապելով քաղաքական հարցերի հետ, խորամուխ լինելով սոցիալիստական պետական վերահսկողության գործունեության բոլոր կողմերի մեջ, Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն է նվիրում վերահսկման ապարատի կազմակերպմանը, նրա կադրերի ընտրությանն ու դաստիարակմանը, նրա գործնական, ամենօրյա աշխատանքի դրվածքին։

Վլադիմիր Իլյիչը պահանջում էր բանգյուղտեսչությունը դարձնել խսկական օրինակելի հիմնարկ, այնպիսի մի հիմնարկ, որն անվերապահ հարգանք ու վստահություն ներշնչի բոլորին։ Այդ խնդրի հաջող կատարման առաջին պայմանը Լենինը համարում էր կադրերի ճիշտ ընտրությունը։ Ուստի, խոսելով բանգյուղտեսչության վերակազմության մասին, Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «...հարկավոր է, որ նոր ժողկոմատ ստեղծելիս մեծագույն զգուշությամբ, խոհեմությամբ, իրազեկությամբ գործադրվի իրոք այն լավագույնը, ինչ որ կա մեր սոցիալական հասարակարգում» (Երկեր, հ. 33, էջ 582)։

Մեծ բարձրության վրա դնելով և մեծ իրավունքներով օժտելով բանգյուղտեսչությունը, Վ. Ի. Լենինը միաժամանակ բանգյուղտեսչության աշխատողներին նախազգուշացնում էր որևէ կերպ «մեծամտելուց», որը ձեռնտու կլինի միայն բյուրոկրատներին։ Վ. Ի. Լենինը մշտապես ընդգծում էր, որ վերահսկողության բնագավառի աշխատողների ամենակարևոր հատկանիշը պետք է համեստությունը լինի։

Իր «Լավ է քիչ, բայց լավ» հոդվածում Վ. Ի. Լենինը բանգյուղտեսչությանը սովորեցնում էր ամբողջ ստուգման ու տեսչական աշխատանքը դնել խոր, լուրջ, իսկական գիտական հիմքերի վրա։ Նա մատնանշում էր, որ կատարման ստուգման եղանակները պետք է բանգյուղտեսչությունում ուսումնասիրվեն ու ամփոփվեն։ Վ. Ի. Լենինը ԿՎՀ—ԲԳՏ-ի կադրերի պարտականություններից մեկն էր համարում «...տեսությամբ զբաղվելը, այսինքն՝ այն աշխատանքի կազմակերպման տեսության, որին նրանք մտադիր են նվիրել իրենց»։ Նա ԿՎՀ—ԲԳՏ աշխատողներից պահանջում էր բարձր սկզբունքայնություն և

մատնանշում էր, որ նրանք, «նկատի չառնելով անձնավորությունները» պետք է հետևեն, որ «...ոչ ոքի հեղինակությունը չկարողանա խանգարել նրանց հարցապնդում անելու, ստուգելու փաստաթղթերը և առհասարակ հասնելու անպայման իրազեկության և գործերի խստագույն կանոնավորության» (Երկեր, հ. 33, էջ 577)։

Վլադիմիր Իլյիչը ամենայն սրությամբ դրեց բանգյուղտեսչության աշխատողների անձնական պատասխանատվության հարցը այն թերությունները շտկելու գործում, որոնք իրենք բացահայտել են այս կամ այն կազմակերպության մեջ, նշելով, որ եթե բանգյուղտեսչությունը չի աշխատում վերացնել տվյալ հիմնարկում եղած թերությունները, ապա նրան հիմնարկի ղեկավարի հետ մեկտեղ պետք է մեղավոր համարել իր պարտքը չկատարելու համար։

Սոցիալիստական պետական վերահսկողության կադրերի դաստիարակման համար հսկայական նշանակություն ունեն Վ. Ի. Լենինի այն ցուցումները, որ պարունակում է նրա ««Երկակի» ենթարկման և օրինականության մասին» խորագիրը կրող նամակը։ Այս նամակում Վ. Ի. Լենինը առանձին ուժով ընդգծում է սովետական օրենքների խստիվ կատարման անհրաժեշտությունը, նշելով, որ չի կարող լինել Կալուգայի կամ Կազանի իրարից տարբեր օրինականություն, պետք է լինի միասնական, համառուսական օրինականություն։ Շեշտելով այն հանգամանքը, որ օրենքների պաշտպանության դիրքերում պետք է կանգնած լինի դատախազությունը, իսկ օրենքների անշեղ կատարման համար պետք է պայքարի բանգյուղտեսչությունը, Վ. Ի. Լենինը նշում էր, որ ի տարբերություն դատախազության, «Բանգյուղտեսչությունը դատում է ոչ միայն օրինականության տեսակետից, այլև նպատակահարմարության տեսակետից»։

Կանգնած լինելով օրինականության պահպանման դիրքերում, բանգյուղտեսչությունը միաժամանակ կոչված է ավելի հեռուն նայելու։ Նա պետք է ամեն կերպ որոնի պետական ապարատի բարելավման ու էժանացման նոր ուղիներ ու միջոցներ, գտնի միջոցների խնայողության նոր աղբյուրներ, աշխատանքի արտադրողականության բարձրացման նոր ռեզերվներ, առաջ քաշի այնպիսի նոր հարցեր, որոնց կենսագործումն անհրաժեշտ է նպատակահարմարության, այսինքն՝ պետության շահերի տեսակետից։

Այսպիսով Վ. Ի. Լենինը հաստատակամորեն և անդուլ կերպով հոգ էր տանում մեր երկրում իսկական ժողովրդական վերահսկողություն ստեղծելու ու զարգացնելու մասին, դրան տալով ոչ միայն առաջնահերթ, այլև հսկայական քաղաքական ու գործնական նշանակություն։ Լենինյան այդ սկզբունքների հիման վրա ստեղծված միասնական պարտիական-պետական վերահսկողության կուռ սիստեմը վիթխարի դեր խաղաց երիտասարդ սովետական պետության ամրապնդման ու բարգավաճման գործում, ազդակ հանդիսանալով երկրի արտադրողական ուժերի բուռն զարգացման համար։ Այդ վերահսկողությունը, որն ամբողջովին կառուցված էր դեմոկրատական լայն հիմունքներով և իր գործունեության մեջ էր ներգրավել աշխատավորական մասսաներին, մի հզոր զենք էր գողերի, պորտաբույծների, բյուրոկրատների, բոլոր նրանց դեմ մղված պայքարում, ովքեր արգելակում էին սովետական հասարակության արագ ու պլանաչափ առաջընթացը։

Սակայն պարտիական-պետական վերահսկողության կուռ ու միասնական լենինյան սիստեմը, վերահսկողության լենինյան սկզբունքները ոտնահարվեցին Ստալինի անձի պաշտամունքի շրջանում և ի վերջո փոխարինվեցին բյուրո-



կրատական վերահսկիչ ապարատով։ Ստալինի առաջարկությամբ պարտիայի XVII համագումարում վերահսկողության միասնական օրգանի՝ ԿՎՀ—ԲԳՏ-ի փոխարեն ստեղծվեց երկու վերահսկիչ կենտրոն՝ պարտիայի Կենտկոմին առընթեր պարտիական վերահսկողության հանձնաժողով և ՍՍՌՄ Ժողկոմսովետին առընթեր սովետական վերահսկողության հանձնաժողով։ Միասնական պարտիական-պետական վերահսկողության սիստեմի խախտումով անտեսվեց ու դեն նետվեց վերահսկողության լենինյան այնպիսի կարևորագույն սկզբունք, այնպիսի վճռական հենարան, ինչպիսին աշխատավորական լայն մասսաներն են, նրանց վերահսկողության օրգանների աշխատանքում ներգրավելու սկզբունքն է։ Այսպիսով, վերահսկողության գաղափարն իր լենինյան ըմբռնմամբ անհամատեղելի դարձավ անհատի պաշտամունքի գաղափարախոսության հետ։



Մեր երկրում սոցիալիստական ժողովրդական վերահսկողության զարգացման մեջ նոր էջ բացեց ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը (1962 թ.), որը արմատական միջոցառումներ նշեց վերահսկողության լենինյան սկզբունքները վերականգնելու ուղղությամբ։

ՍՄԿՊ XX և XXII համագումարներում հասկանալի պատճառներով լուրջ ուշադրություն նվիրվեց վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ կազմակերպման հարցերին։ Հիրավի, վերջին տարիներում առանձնապես ակնառու կերպով երևում էր, որ արտադրողական ուժերի վիթխարի զարգացման ներկա պայմաններում, ժողովրդական տնտեսության ղեկավարման է՛լ ավելի բարդանալու կապակցությամբ, մասսայական համաժողովրդական հսկողության դերը գնալով ավելի կարևոր է դառնում։ Ուստի կենսականորեն անհրաժեշտ դարձավ վերահսկողության վերակառուցումը լենինյան սկզբունքներով, այն դարձնելով կոմունիստական պարտիայի և սովետական պետության կարևորագույն զենքը նոր հասարակարգի կառուցման գործում, պարտիական ու պետական ղեկավարման կատարելագործման, պարտիայի ու ժողովրդի կապերի ամրապնդման, երկրի կառավարման գործերում մասսաների ներգրավման հզոր միջոց։

Հենվելով ՍՄԿՊ XXII համագումարի դիրեկտիվների վրա, ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը որոշում ընդունեց մեր վերահսկողության սիստեմը վերակազմելու մասին։ Ընդ որում այդ վերակազմության հիմնական նպատակն է՝ միասնական պարտիական-պետական վերահսկողության լենինյան գաղափարի վերականգնումը, վերահսկողություն, որն ընդունակ լինի ընդգրկելու երկրի կյանքի ամբողջ բազմազանությունը և շարունակ գործի սովետական ժողովրդի լայն մասսաների մասնակցությամբ։

Այդ խնդիրը կատարելու համար, ինչպես հայտնի է, ստեղծվել է մեկ միասնական օրգան՝ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի Պարտիական-պետական վերահսկողության կոմիտե իր համապատասխան օրգաններով տեղերում։ Ինչպես սահմանված է այդ կոմիտեի գործունեության վերաբերյալ ընդունված կանոնադրության մեջ, այն կոչված է պարտիային և պետությանը օգնություն ցույց տալու ՍՄԿՊ Ծրագիրը կատարելու գործում, սիստեմատիկորեն ստուգելու պարտիայի և կառավարության դիրեկտիվների փաստական կատարումը, նպաստելու կոմունիստական շինարարության ղեկավար-

ման հետագա կատարելագործմանը, սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ վերելքին և, վերջապես, կանգնած լինելու պարտիական ու պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության պահպանման դիրքերում:

Այդ լուրջ խնդիրները պարտիական-պետական վերահսկողության օրգաններից պահանջում են խորամուխ լինել մեր ժողովրդական տնտեսության բոլոր հարցերում, լավ իրազեկ լինել գործերի դրությանը կյանքի բոլոր բնագավառներում և ճիշտ, օբյեկտիվ գնահատականներ տալ պարտիայի ու կառավարության որոշումների կատարման ընթացքին:

Բայց ինչպե՞ս հասնել այդ բանին: Եզրակացությունը պարզ է: Պարտիական-պետական վերահսկողության օրգանների հաջող գործունեության գրավականը և անվերապահ պայմանը, իհարկե, աշխատավորական մասսաների՝ կոմունիստների, անպարտիականների, ակտիվիստների, կանանց ու երիտասարդության ամենաակտիվ մասնակցությունն է վերահսկողության գործին, հայտնաբերված թերությունների ու խախտումների և դրանց առթիվ ընդունված միջոցառումների լայն հրապարակայնությունը աշխատավորական ժողովների, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության միջոցով, ուշադիր վերաբերմունքը սովետական մարդկանց ահազանգներին ու առաջարկություններին:

Այսպիսով, պարտիական-պետական վերահսկողության օրգանների աշխատանքի հաջողությունը կարելի է ապահովել միայն այն դեպքում, երբ նրանք հանդես գան որպես պատմության մեջ դեռևս չտեսնված մասսայական համաժողովրդական վերահսկողության պրակտիկ կազմակերպիչներ:

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշման հիման վրա ստեղծված պարտիական-պետական վերահսկողության օրգանները օժտված են համապատասխան իրավունքներով և նրանք ո՛չ միայն կվերահսկեն, այլև խստորեն կպատժեն սովետական օրինականությունը խախտողներին: Սակայն նրանց գլխավոր խնդիրն է՝ ժամանակին կանխել սխալները և ամեն տեսակ չարաշահումների հնարավորությունները. պարտիական ու կառավարական օրգաններին օգնել կադրերին դաստիարակելու և զերծ պահելու թերություններից ու վրիպումներից, կյանքի բոլոր բնագավառներում աշխատողների ուշադրությունն ու ջանքերն ուղղելու տնտեսական-քաղաքական խնդիրների հաջող լուծմանը:

Պարտիական-պետական վերահսկողության կոմիտեները, իրենց շուրջը համախմբված ակտիվիստների հսկայական բանակի հետ մեկտեղ, պետք է այնպես կառուցեն իրենց ամբողջ աշխատանքը, որ բյուրոկրատներն ու քաշքշուկի սիրահարները, պորտաբույծները, կաշառակերները, գողերը, սպեկուլյացիայով և աչքակապությամբ զբաղվողները զգան պատժի անխուսափելիությունը, սարսռան սովետական հասարակայնության մեծ ուժի հանդեպ:

Բայց պարտիական-պետական վերահսկողության օրգանների գործունեությունը չպետք է դրանով էլ սահմանափակվի: Խախտումները բացահայտելու և մեղավորներին պատժելու հետ մեկտեղ այդ օրգանները պետք է ամենաակտիվ կերպով աջակցեն, խրախուսեն ու զարգացնեն այն ամենը, ինչ նոր է առաջավոր ու առաջադիմական մեր կյանքի բոլոր բնագավառներում, վճռականորեն ու հաստատակամորեն հասնեն այն բանին, որ թերությունների վերացման հետ մեկտեղ բարելավվի գործերի վիճակը, ապահովվի պարտիայի և կառավարության դիրեկտիվների անվերապահ կատարումը:

Սակայն չպետք է կարծել, թե պարտիական-պետական վերահսկողության օրգանների վրա դրված խնդիրները պարտիական, սովետական ու տնտեսական



կազմակերպությունների վրայից վերցնում են նրանց պատասխանատվությունը որոշումների կատարման ստուգման համար: Ընդհակառակը, ստեղծելով պարտիական-պետական վերահսկողության օրգաններ, ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը ընդգծեց, որ անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել պարտիական, սովետական, տնտեսական, պլանային և այլ օրգանների, վարից վեր ամբողջ պարտիական ու պետական ապարատի պատասխանատվությունը պարտիայի ու կառավարության դիրեկտիվների անվերապահ կատարման կազմակերպման համար:

Իսկ ինչպիսի՞ կազմակերպական ձևեր ունեն պարտիական-պետական վերահսկողության ստեղծվող օրգանները: Ամենից առաջ պետք է նշել, որ կազմակերպական ձևերի հիմքում դրված է վերահսկողության օրգանների լայն դեմոկրատացման սկզբունքը, հատկապես սովետական հասարակայնությանը աշխատանքի մեջ առավելագույն չափով ներգրավելու տեսակետից:

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի Պարտիական-պետական վերահսկողության նորաստեղծ կոմիտեն միութենական-ռեսպուբլիկական օրգան է: Դրան համապատասխան էլ մեր ռեսպուբլիկայում կազմակերպված է ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի Պարտիական-պետական վերահսկողության կոմիտե, ինչպես նաև նրա օրգանները տեղերում, այսինքն՝ բոլոր քաղաքներում, շրջաններում, արդյունաբերական-արտադրական գոտիներում և կոլտնտեսային-սովխոզային վարչություններում: Դրանց կազմի մեջ մտնում են ինչպես բուն այդ օրգանների ներկայացուցիչները, այնպես էլ արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, մամուլի ներկայացուցիչներ, հեղինակավոր ընկերներ բանվորներից, կոլտնտեսականներից ու ինտելիգենցիայից:

Բայց վերահսկողության օրգանների հիմքը, նրանց սկզբնական և առավել մասսայական օղակը պարտիական-պետական վերահսկողության օրգաններին աջակցող բազմաքանակ խմբերն են, որոնք ստեղծվել են բոլոր ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում և տնային կառավարչություններին կից: Այդ խմբերի կազմի մեջ ընտրական սկզբունքով մտնում են պարտիական, արհմիութենական, կոմերիտական և այլ հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ, որոնք ընտրվել են այդ կազմակերպությունների ժողովներում, ինչպես նաև կոլտնտեսականների ու տնային կառավարչության բնակիչների ժողովներում: Ինքնին հասկանալի է, որ աջակցող խմբերում աշխատելու համար առաջադրվում են ամենից ավելի ակտիվ ու հեղինակավոր ընկերները — ինչպես կոմունիստներ, այնպես էլ անպարտիականներ — բանվորներ, կոլտնտեսականներ, մասնագետներ, ծառայողներ, գիտնականներ, գրականության և արվեստի գործիչներ, թոշակառուներ, տնային տնտեսուհիներ:

Բայց դրանով իսկ չի սահմանափակվում վերահսկողության օրգանների ճյուղավորված ցանցը: Աջակցող ընդհանուր խմբերից բացի համապատասխան աջակցող խմբեր կամ պոստեր ստեղծվեցին նաև խոշոր ձեռնարկությունների ցեխերում, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքային տեղամասերում ու բրիգադներում: Պարտիական-պետական վերահսկողությանն աջակցող հենց այդ բոլոր խմբերն ու պոստերը դառնում են այն կազմակերպող կենտրոնները, որոնց շուրջը համախմբվում է ամբողջ հասարակական վերահսկողությունը:

Կարելի է պարզորոշ պատկերացնել, թե ինչպիսի հսկայական ուժ կներկայացնեն պարտիական-պետական վերահսկողության այդ ստորին օղակները, մանավանդ որ աջակցող խմբերին լայն իրավունքներ են տրված ադմինիստրացիայի, պարտիական, արհմիութենական կազմակերպությունների և պարտիական-պետական վերահսկողության կոմիտեների առջև դնելու այնպիսի հարցեր, որոնք վերաբերում են իրենց բացահայտած թերությունների վերացմանը և մեղավորներին պատասխանատվության կանչելուն։ Ընդ որում, աջակցող խմբերի առաջարկությունները պետք է պարտադիր կարգով և ուշադիր քննարկվեն ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների և հիմնարկների ղեկավարների, ինչպես նաև սկզբնական պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կողմից։

Այսպիսով, վերահսկողության ամբողջ սիստեմի վերակառուցումը, որ մեր երկրում սկսվեց ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշմամբ, միասնական պարտիական-պետական վերահսկողության օրգանի և վերահսկողության տեղական օրգանների ճյուղավորված ցանցի ստեղծումը, հասարակայնության լայն ներգրավումը վերահսկողության գործում և ներկայումս կենսագործվող այլ միջոցառումներ՝ հնարավորություն են տալիս լիովին վերականգնել և իրականացնել ժողովրդական վերահսկողության գործունեության այն կարևոր սկզբունքները, որոնք այնքան իմաստուն կերպով կանխագծել էր Վլադիմիր Իլյիչը իր «Ինչպես վերակազմենք Բանվորագյուղացիական տեսչությունը» և «Լավ է քիչ, բայց լավ» նշանավոր աշխատություններում։

Ոչ մի տարակույս չի կարող լինել այն բանում, որ մեր վերահսկողության սիստեմի արմատական վերակառուցման հիանալի արդյունքները մենք կտեսնենք արդեն մոտիկ ապագայում։

---

**ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԳԴՌ-ՈՒՄ**

Արդյունաբերական արտադրանքի ընդլայնման նպատակով 1962 թվականին արդյունաբերական 600 ձեռնարկություններում կատարվեցին վերակառուցման և շինարարական աշխատանքներ: ԳԴՌ-ի արդյունաբերության մեջ շինարարական աշխատանքների համար ծախսվեց մոտ 2,5 միլիարդ մարկ: Շինարարական գլխավոր օբյեկտներն էին՝ Լուբենաուի էլեկտրակայանը, որի առաջին հերթն արդեն գործարկվել է, Շվեդտի նավթավերամշակման գործարանը, Ռիզա քաղաքի պողպատաձուլական գործարանը, Բեռնբուրգի ցեմենտի գործարանը, «Շվարցե պումպե» և «Բունավերկե» կոմբինատների երկրորդ հերթը և այլն:

1962 թվականին շինարարական աշխատանքների համար հատկացված միջոցների ընդհանուր գումարը կազմեց 7,2 միլիարդ մարկ: 1962 թվականին այդ նպատակների համար հատկացումները կկազմեն 8,3 միլիարդ մարկ:

# ՀԱՎԵՐԺՈՂ ՄԱՐՔՍԸ

(Մահվան 80-ամյակի առթիվ)

Ա. ԱԴՈՅԱՆ

## ԱՆՄԱՀ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆԵՐԸ

Փիլիսոփաները միայն տարբեր կերպով բացատրել են աշխարհը, սակայն խնդիրն այն փոխելն է: Երիտասարդ Կ. Մարքսը դարագլուխ կազմող այս սկզբունքին հանգավ գիտությունների ու պատմության տքնաջան ուսումնասիրությունից, մանավանդ ռևոլյուցիոն շարժմանն ունեցած իր ակտիվ մասնակցությունից։ Գիտության այդ անմահ ռահվիրայի, նրա անզուգական բարեկամ և զինակից Ֆրիդրիխ Էնգելսի անվան հետ է կապված անցյալ դարի կեսերին ձևավորված միջազգային կոմունիստական շարժումը։ Անմիջականորեն մասնակցելով ռևոլյուցիոն խմբավորումների պրակտիկ և տեսական պայքարին, մերվելով բանվոր դասակարգի մղած կռիվներին, նրանք օրինաբար նվաճեցին համաշխարհային պրոլետարիատի սերն ու վստահությունը, դառնալով նրա նոր վարդապետության կողներն ու պրակտիկ շարժման պարագլուխները։ Սուր պայքարի բռնվելով մանր-բուրժուական սոցիալիզմի տարբեր ուսմունքների՝ առաջին հերթին պրուդոնիզմի հետ, նրանք մշակեցին ռևոլյուցիոն պրոլետարական սոցիալիզմի թեորիան ու տակտիկան, որն սկզբում ձևակերպվեց Կ. Մարքսի «Փիլիսոփայության աղքատությունը» *(1847 թ.)*, և նրանց երկուսի հեղինակած հռչակավոր «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը» *(1848 թ.)* երկերում։

Պատմության անհրաժեշտ զարգացմամբ կոմունիստներն են կոչված հեղափոխելու աշխարհը՝ կեղեքման վրա հիմնված հանրակարգի խորտակման, և առհասարակ դասակարգերի վերացման միջոցով։ Կապիտալիստական վարձկանների դեմ մղվող մարտերում պրոլետարները ոչինչ ունեն կորցնելու, բացի իրենց շղթաներից, սակայն մի աշխարհ են շահելու։ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» այս բոցաշունչ գաղափարները, սասանելով կապիտալիզմի հիմքերը, տարածվեցին աշխարհով մեկ, մարդկության երջանիկ կյանքի մոտալուտ օրն ավետելով։ Հանդիսանալով նոր աշխարհազգացման, նաև սոցիալական կյանքն ընդգրկող հետևողական մատերիալիզմի, դիալեկտիկայի, դասակարգային պայքարի, կոմունիստական հասարակություն կերտող պրոլետարիատի ազատագրական մեծագույն դերի գիտական հիմնավորումը, այդ երկը շուտով դարձավ կոմունիստական միջազգային շարժման անփոխարինելի ուղեցույցը։

Պատմությանը հայտնի են հասարակական-գաղափարական խոշոր իրադարձություններ հեռավոր անցյալում, բայց դրանցից և ոչ մեկն իր նպատակի ռեալականությամբ, առաջադրված խնդիրների վեհությամբ, ինչպես և շարժման խորությամբ ու զանգվածայնությամբ՝ համեմատության որևէ եզր չունի մարքսիզմի հետ։ Վերջինս վաղուց է դարձել ամբողջ աշխարհի առաջավոր մարդկության միակ գիտական մտածելակերպը, ժողովուրդներին դեպի նոր կյանք առաջնորդող լուսատու փարոսը։

Իմպերիալիզմի կործանման և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում շնորհիվ Վ. Ի. Լենինի ու նրա կոփած կոմունիստական պարտիայի, Մարքսի ուսմունքը հարստացավ և զարգացավ նոր պայմանների համեմատ, հանդես գալով իբրև մարքսիզմ-լենինիզմ, որը բազմակողմանիորեն արտացոլում է բնության հասարակական կյանքի, նաև մարդկային մտածողության վերընթաց շարժման բոլոր ելևէջները, նրա զարգացման կնճռոտ օրենքները։ Այժմ, Մարքսի մահվան 80-ամյա տարելիցին, աշխարհի բոլոր կոմունիստները և առաջավոր մարդիկ երախտագիտության խոր զգացումով խոնարհելով իրենց գլուխները հանճարեղ ուսուցչի ու առաջնորդի շիրմի առջև, հպարտությամբ կարող են ասել, որ շնորհիվ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի և ՍՄԿՊ փառավոր պայքարի, այսօր ինչպես որ մարքսիզմ-լենինիզմն է տիրապետել մասսաներին, այնպես մասսաներն են խորապես տիրապետել այն։ Դեռ ավելին, մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո կառուցված սոցիալիստական հզոր լագերն այժմ դարձել է մարդկության առաջատար ուժը։ Այսօր մարդկության մեկ երրորդը կենսագործում է Մարքսի, Էնգելսի ու Լենինի ազատաշունչ գաղափարները, որոնք իրենց խոր կնիքն են դրել պատմության երթուղիների վրա։

Ի դեպ, նշենք այն հույժ կարևոր առանձնահատկությունը, որ, ի տարբերություն նախորդ մեծագույն մտածողների, Կարլ Մարքսը տեսական իր բոլոր հետազոտությունները սերտորեն շաղկապեց բանվոր դասակարգի ազատագրական պայքարի հետ, մտքի իր հասումները բազմիցս ստուգեց այդ պայքարի ու համաշխարհային պատմության ընթացքով։ Հանդիսանալով I Ինտերնացիոնալի (1864 թ. Լոնդոն) «Բանվորների միջազգային ընկերության» ռևոլյուցիոն ոգին, Մարքսը ահագին պրակտիկ ջանքերի գործադրումով մշակեց միջազգային պրոլետարիատի դասակարգային կռվի միասնական տակտիկան։ Զուգակցելով տիտանական թեորիական հետազոտությունները ռևոլյուցիոն թեժ կռիվների պրիոմների ու տակտիկայի մշակման հետ, Մարքսը, Էնգելսի անմիջական աջակցությամբ կերտեց իր ուսմունքը, որն իրավամբ Լենինը համարում էր այն լավագույնը, ինչ ստեղծել է մարդկությունը 19-րդ դարում։

## ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԻ ԾՆՈՒՆԴԸ

Մարքսի ամբողջ հանճարեղությունն այն էր,— ասում է Լենինը,— որ նա պատասխան տվեց մարդկության առաջավոր մտքի առաջադրած հարցերին։ Այդ հարցերի պատասխանների մշակման հիմքում դնելով իրականության մատերիալիստական-դիալեկտիկական ըմբռնումը, Մարքսն իր ուսմունքը զարգացրեց որպես նախորդ անգլիական կլասիկ քաղաքատնտեսության, ֆրանսիական սոցիալիզմի ու գերմանական դասական փիլիսոփայության անմիջական



շարունակությունը։ Այդ ուսմունքի մեծագույն նշանակությունն այն է, որ դրա միջոցով բանվոր դասակարգը հասավ ինքնաճանաչման և ինքնագիտակցության. մարքսիզմը մատնանշեց նրան իր և ամբողջ մարդկությանը՝ կեղեքումից ազատագրվելու ուղիները։

Բնորոշ է, որ երբ 1842 թվականին, քսանչորսամյա Մարքսը դարձավ «Հռենոսյան լրագրի» գլխավոր խմբագիրը և լայն շփում ունեցավ կյանքի հետ, նկատեց, որ բավարար չգիտե քաղաքատնտեսությունը, իսկ իրավունքի ու փիլիսոփայության իր գիտելիքները պատասխան չեն տալիս իրեն մտատանջող հարցերին։ Այն ժամանակ դեռևս ռևոլյուցիոն դեմոկրատ Մարքսը, որը Ֆոյերբախյան կամուրջով հեռացավ հեգելյան իդեալիզմից և ամուր կանգնեց նախորդ մատերիալիստների նվաճած գետնին, շարունակեց առաջ ընթանալ, մշակելով մատերիալիստական իր նոր թեորիան, որի օգնությամբ և հեղափոխականացրեց քաղաքատնտեսությունը։

Ըստ արժանվույն գնահատելով Լ. Ֆոյերբախի հեգելյան իդեալիզմի հետ ունեցած կապերի վճռական խզումը, նշելով նրա մատերիալիզմի անհետևողականությունն ու միակողմանիությունը, Մարքսը միաժամանակ առաջ մղեց զարգացման Հեգելի ուսմունքը՝ վերամշակելով այն մատերիալիստական հիմքերի վրա։

Իմ դիալեկտիկական մեթոդը,— ասում է Մարքսը,— յուր հիմքով ոչ միայն տարբերվում է հեգելյան դիալեկտիկայից, այլև նրա ուղղակի հակադրությունն է։ Հեգելի համար բուն իրականությունը միայն իդեայի «արտաքին երևմունքն է լոկ»։ Մինչդեռ Մարքսի համար, իդեականը մարդկային գլխում թարգմանված նյութականն է։ Եվ ահա հեգելյան դիալեկտիկայի միստիկական կեղևից դուրս կորզելով նրա ռացիոնալ հատիկը, Մարքսը մատերիալիզմին անվերջ զարգանալու հնարավորություն ընձեռեց։ Քանի որ նյութական հիմքին կռթնած դիալեկտիկական իրականության պոզիտիվ ըմբռնման մեջ «միաժամանակ մտցնում է իրականության բացասման, նրա անհրաժեշտ կործանման ըմբռնումն էլ, ամեն մի իրականացած ձև նա ըմբռնում է հոսանուտ շարժման մեջ, ուրեմն նաև քննում է նրա անցողական կողմից, ոչ մի բանի առջև ծնկի չի իջնում, յուր էությամբ քննադատող ու հեղափոխական է» (Կ. Մարքս, «Կապիտալ», հատ. 1, էջ XXX—XXXI)։

Այսպիսով, կեցությունը սեպելով առաջնային, իսկ մտածողությունը երկրորդային, շարժումը համարելով մատերիայի ատրիբուտը կամ գոյաձևը, աշխարհի միասնությունը գտնելով նրա նյութականության, այլ ոչ նրա կեցության մեջ, հռչակելով մատերիայի ու շարժման անքակտելի, բայց հակասալի միասնությունը, պրակտիկան մուծելով իմացության տեսության մեջ որպես նրա հիմքը և իմացաբանական պրոցեսի նպատակ, որպես ճշմարտության չափանիշ, Մարքսն իր ուսմունքի սկզբունքները վերառնելով իրականությունից, ուղղեց այդ իսկ իրականության մեջ առկա ռևոլյուցիոն բախումների նպատակահարմար զարգացմանը։

Հաղթահարելով մետաֆիզիկական մատերիալիզմի, իդեալիստական դիալեկտիկայի ու սահմանափակ կլասիկ տնտեսագիտության օրգանական արատները, Մարքսը, դիալեկտիկան պսակեց արգասաբեր և հավերժ կենսալի մատերիալիզմի հետ, որի հետևանքով այն դարձավ բնության և հասարակության, ինչպես նաև մարդկային իմացության նոր ուսմունքը։ Դիալեկտիկայի ու մատերիալիզմի մարքսյան այդ զուգորդումը միայն հնարավոր դարձրեց

ռևոլյուցիոն պրոլետարիատի նոր աշխարհայացքի՝ դիալեկտիկական մատերիալիզմի պատմական հաղթանակները։ Եվ ամենևին պատահական չէ, որ անցյալ ու մեր դարի ինչպես հասարակական կյանքի ընթացքը, այնպես և բնական գիտությունների բուռն զարգացումը բազմիցս ապացուցեցին մարքսիզմի ճշմարտացիությունը, քանի որ այն ճիշտ է արտացոլում մեր մտածողությունից դուրս եղած օբյեկտիվ և այնքան հարուստ աշխարհը։

Մարքսն իր բոլոր աշխատություններում այն սկզբունքն էր կիրառում, թե մատերիալիստական դիալեկտիկայի՝ մեր գլխի արտացոլած օրենքները աբստրահվում են հասարակության և բնության բուն պրոցեսներից։ Նախքան մարդիկ դիալեկտիկորեն մտածելն և ըմբռնելն այն՝ անվերջ գոյն իր բազում ձևերով զարգացել է ռեալ դիալեկտիկայի օրենքների համաձայն։ Զարգացման որոշ աստիճանի վրա միայն մարդը աստիճանաբար սկսում է հասկանալ իրականության հակասականությունը, երևույթների փոխադարձ կապերը, օրինաչափությունները և նրանց բազմազան դրսևորումները։

Փայլուն կերպով կիրառելով և զարգացնելով մատերիալիստական-դիալեկտիկական աշխարհըմբռնումը, Մարքսը ստեղծեց համակողմանի ու հետևողական մի ուսմունք՝ մարքսիզմ կամ դիալեկտիկական մատերիալիզմ։

Լենինը բազմիցս ընդգծել է մարքսիստական իմացաբանության այն հավերժ կենդանի սկզբունքը, որ մարդկային տրամաբանության կատեգորիաները «օբյեկտիվի արտացոլումներն են մարդու սուբյեկտիվ գիտակցության մեջ»։ Հետևելով Մարքսին ու էնգելսին, նա ասում է, թե «Իմացությունը մտածողության հավերժական, անվերջ մոտեցումն է օբյեկտին։ Բնության արտացոլումը մարդու մտքի մեջ պետք է հասկանալ ոչ թե «մեռյալ», ո՛չ թե «աբստրակտ», ո՛չ թե առանց շարժման, ո՛չ թե առանց հակասությունների, այլ շարժման, հակասությունների առաջացման և դրանց լուծման հավերժական պրոցեսում» (Երկեր, հատ. 38, էջ 237)։

Խնդրի հենց այս կողմը նկատի ուներ Լենինը, երբ նուրբ հեգնանքով ասում էր, թե նարոդնիկները կարդացել են Մարքսի «Կապիտալը» և դիալեկտիկա չեն գտել մի գործում, որն ամբողջովին դիալեկտիկայի մարմնացում է։

## ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԸ

Եթե մինչմարքսյան մատերիալիզմն իր հետազոտության սահմանները պարփակում էր միայն բնության երևույթներով, ապա Մարքսն ու էնգելսը հասարակական կյանքին վերաբերող գիտությունը ևս դրին մատերիալիստական կայուն հիմքերի վրա։ Դիալեկտիկական մատերիալիզմը կիրառելով հասարակական կյանքի օրինաչափությունները բացահայտելու բնագավառում, նրանք ստեղծեցին պատմական մատերիալիզմ, որը հասարակական բոլոր երևույթների գիտական իմացության ուսմունքն է։ Ոչ թե մարդկանց գիտակցությունն է որոշում նրանց կեցությունը, այլ ընդհակառակը, ռեալ հասարակական կեցությունն է որոշում նրանց գիտակցությունը, ասում է Մարքսը։ Հենց այս սկզբունքը հանդիսացավ այն ելակետը, որից սկսելով Մարքսը բացահայտեց և մատերիալիստորեն հիմնավորեց հասարակական կյանքի խիստ յուրահատուկ օրինաչափությունները՝ նոր լույս սփռեց մարդկության անցած և գալիք ուղիների վրա։

Եթե փորձենք հակիրճ ձևով շարադրել պատմական մատերիալիզմի



ուղն ու ծուծը, ապա այն կարելի է մոտավորապես անել հետևյալ կերպ։

Հասարակական կյանքի հիմքը նյութական բարիքների արտադրությունն է, որը կատարվում է մարդկանց միջոցով։ Հասարակական բոլոր տեսակի հարաբերություններից ամենակարևորը արտադրական, տնտեսական հարաբերություններն են, որոնցով ի վերջո պայմանավորվում են հասարակական այլ կարգի հարաբերությունները։ Արտադրության մեջ գործող մարդիկ օժտված են աշխատանքային միջոցներով, հետզհետե զարգացած գործունեության ունակություններով, աշխատանքային փորձով, տեխնիկայի իմացությամբ, որոնք միասին վերցրած կազմում են տվյալ հասարակության արտադրաուժերը։ Հասարակական արտադրահարաբերություններն այն ձևն են, որում առաջանում և զարգանում են ռեալ արտադրաուժերը։ Մարդիկ արտադրական հարաբերությունների մեջ են մտնում ամենուր, անկախ իրենց գիտակցությունից, որովհետև նախքան իրենց հոգեկան ձգտումներին բավարարելը՝ նրանք պետք է ապրեն։ Այն հասարակության մեջ, որտեղ մասնավոր սեփականության և շահագործման հարաբերություններն են իշխում, մարդկանց արտադրական-հասարակական հարաբերությունները հենց այդ սեփականության հարաբերությունների դրսևորումն են։ Ամբողջ հարցն այն է, թե բուն արտադրողները սեփականատերեր են, թե՞ ոչ, կամ թերևս սեփականատերեր են մասամբ։ Կամ թե արտադրամիջոցները պատկանում են միայն սակավաթիվ տերերին, ինչպես այդ տեսնում ենք ստրկատիրական, ֆեոդալական և կապիտալիստական ֆորմացիաներում։

Այսպիսով, հասարակական տնտեսական ստրուկտուրան մարդկային արտադրահարաբերությունների մի ամբողջություն է, որը կազմում է հասարակության ռեալ բազիսը, որի վրա և հանգչում է իրավական ու քաղաքական վերնաշենքը։ Նյութական կյանքի արտադրաեղանակն է վերջին հաշվով որոշում հասարակության ողջ կյանքի ընթացքը։ Տվյալ հասարակության մասին ճիշտ պատկերացում կարելի է կազմել իմանալով միայն, թե ինչպես է արտադրվում, ինչ եղանակով է արտադրվում, այլ ոչ թե, ինչ է արտադրվում։

Իրենց զարգացման որոշ աստիճանի վրա մարդկանց արտադրահարաբերությունները ետ են մնում արտադրաուժերի զարգացումից, դառնալով վերջիններիս համար կապանք, որի հետևանքով տեղի են ունենում սուր բախումներ հասարակության ընդերքում, բախումներ, որոնք պայթում են սոցիալական ռևոլյուցիայով։ Երբ փոխվում է հասարակական արտադրաեղանակը, վաղ թե ուշ փոխվում են վերնաշենքի բոլոր ոլորտները։

Ահա սա է պատմության մատերիալիստական ուսմունքի գլխավոր առանցքը, որը շարադրված է Կ. Մարքսի «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» գրքի ներածականում։ Միայն պատմության մատերիալիստական ըմբռնման մարքսյան հայտնագործումից հետո հնարավոր դարձավ ճիշտ հասկանալու հասարակության զարգացման օրինաչափությունները, մեկ հասարակարգից մյուսին անցնելու ուղիները և, վերջապես, ըմբռնել մարդկանց գործունեության տարբեր ձևերի բուն շարժառիթները։

Պատմական մատերիալիզմի այնպիսի կատեգորիաները, որպիսիք են՝ աշխատանք, նյութական արտադրություն, արտադրողական ուժեր, արտադրական հարաբերություններ, բազիս, վերնաշենք, դասակարգեր, պետություն, հեղափոխություն և այլն, արտացոլում են հասարակական կյանքի էական կողմերը և կենդանի կապերը։ Ոչ միայն բաշխման և սպառման հարա-

հարաբերություններն են պայմանավորված արտադրության եղանակով, այլև վերջին հաշվով՝ կրոնական, բարոյական, արվեստի և առհասարակ հոգեկան աշխարհի ամբողջ արգասիքը:

Բայց սա այնպես չպետք է հասկանալ, թե հասարակական կյանքում մնացած հարաբերությունները և հոգեկան տարբեր ազդակները ոչ մի դեր չեն խաղում: Ուշագրավ է, որ իր նամակներից մեկում Ֆ. Էնգելսը սպառիչ պատասխան է տվել բազիսի ու վերնաշենքի փոխհարաբերության հարցին: Նա ասում է. «Քաղաքական, իրավական, փիլիսոփայական, կրոնական, գրական, գեղարվեստական և այլ զարգացումը տնտեսական զարգացման վրա է հիմնըված: Բայց նրանք բոլորը նույնպես ազդում են միմյանց վրա ու տնտեսական հիմքի վրա: Բանը բոլորովին այնպես չէ, թե միայն տնտեսական դրությունն է միակ ակտիվ պատճառը, իսկ մնացածը միայն պասսիվ հետևանք է: Ո՛չ, այստեղ փոխազդեցությունը կատարվում է տնտեսական անհրաժեշտության հիմքերի վրա, որը վերջին հաշվով միշտ ճանապարհ է բացում իրեն համար» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Նամակներ «Կապիտալի» մասին» էջ 379):

Ինչպես տեսնում ենք, Էնգելսը ժխտում է վերնաշենքի վրա ունեցած բազիսի ազդեցության ավտոմատիկ բնույթը: Նա նշում է, որ մարդիկ իրենք են կերտում իրենց պատմությունը, բայց կերտում են որոշ, նրանց պայմանավորող միջավայրում, արդեն գոյություն ունեցող իրական հարաբերությունների հիմքի վրա: Միայն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակով մարդիկ դադարում են պատմական անհրաժեշտության կույր գործիքը լինելուց և իրենց բախտը կերտում են նախապես գիտակցված ու մշակված մի ընդհանուր պլանով:

Այսպիսով, պատմական մատերիալիզմը հասարակական կյանքը հետազոտելիս «հիմնական» և «սկզբնական» է համարում հասարակական հարաբերություններից միայն մեկը՝ արտադրականը: Այս տեսանկյունից քննարկելով պատմությունը, Մարքսն ու Էնգելսը բացահայտեցին հասարակության ընթացքը որպես տնտեսական ֆորմացիաների մի բնապատմական պրոցես»: Միայն հասարակական տնտեսական ֆորմացիաների մարքսիստական այդ հանճարեղ գաղափարը,— ասում է Լենինը, «...հնարավորություն տվեց նըշմարելու կրկնելիությունն ու կանոնավորությունը և ընդհանրացնելու տարբեր երկրների կարգերը հասարակական ֆորմացիա մի հիմնական հասկացության մեջ: Հենց միայն այսպիսի ընդհանրացումն էր, որ հնարավորություն տվեց հասարակական երևույթների նկարագրությունից (և իդեալի տեսակետից կատարվող գնահատումից) անցնելու նրանց խիստ գիտական վերլուծությանը, որ օրինակի համար ասենք, զատում է այն, ինչով մի կապիտալիստական երկիր տարբերվում է մյուսից, և հետազոտում է այն, ինչ ընդհանուր է նրանց բոլորին» (Երկեր, հատ. 1, էջ 158):

Հետազոտելով պատմության ընթացքը, Մարքսը մատնանշեց միաժամանակ, թե նրա լոկոմոտիվը ռևոլյուցիան է, որը դասակարգային կռվի բարձրագույն ձևն է: Ռևոլյուցիոն պերիոդները պատմության զարգացման ամենակարևոր և բարձր գագաթներն են, երբ մասսաները հրաշքներ են գործում արագացնելով պատմության երթը: Մասսաները հասարակական պրոգրեսում եղել են և մնում են վճռական ուժ, բազմիցս նշել է Մարքսը:

Դասակարգերի բաժանված հասարակության զարգացումը վերջանում է նրանով, որ կործանելով անտագոնիստական հասարակարգը, պրոլետարիատը



ստեղծում է իր դասակարգի դիկտատուրան, որի օգտագործմամբ պետք է ազատագրի և ամբողջ մարդկությանը: Պրոլետարիատի դիկտատուրայի հայտնագործումը,— Փարիզյան կոմունայի փորձն ամփոփելով,— Մարքսի մեծագույն երախտիքն է: Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի օրինաչափությունները բացահայտելիս, նա վճռական դեր վերապահեց պրոլետարիատի դիկտատուրային: Այս հարցի մշակման բնագավառում սեփական դերին անդրադառնալով տակավին 1852 թ. Մարքսը գրել է. «Իմ մտցրած նորն այն է, որ ես ապացուցում եմ հետևյալը. 1) որ դասակարգերի գոյությունը կապված է արտադրության զարգացման որոշ պատմական փուլերի հետ միայն, 2) որ դասակարգային պայքարն անհրաժեշտաբար տանում է դեպի պրոլետարիատի դիկտատուրան, 3) որ այդ դիկտատուրան ինքը սոսկ մի անցում է դեպի ամեն տեսակ դասակարգերի ոչնչացում և դեպի անդասակարգ հասարակություն» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Նամակներ «Կապիտալի» մասին», 1954 թ., էջ 50):

Դասակարգային կռվի մարքսիստական տեսությունն այն ղեկավար թելն է,— ասում է Լենինը,— որը թույլ է տալիս բացահայտելու քաոս, լաբիրինթոս թվացող հասարակական կյանքի վայրիվերումները և օրինաչափությունները:

Ապագան պատկանում է պրոլետարիատին, որովհետև նրա ռևոլյուցիոն ձգտումները զարգացող արտադրողական ուժերի առաջադիմական տենդենցի քաղաքական դրսևորումներն են:

## ԱՄԵՆԱՍԱՐՍԱՓԵԼԻ ԱՐԿԸ

Մարքսի աշխատություններն առհասարակ, իսկ նրա հանճարի թագ ու պսակ «Կապիտալը» հատկապես, դիալեկտիկայի, տրամաբանության և մատերիալիստական իմացության ներդաշնակ մարմնացումն է: Մի երկ, որը պատմության մատերիալիստական ըմբռնման և աշխարհը ռևոլյուցիոն ճանապարհով վերափոխելու աննման կոթող է: Ով կամենում է գիտենալ ռևոլյուցիոն պրոլետարիատի լոգիկայի ուժն ու թափը, նա պետք է ուսումնասիրի Մարքսի մտքի քառասնամյա երկունքից ծնված «Կապիտալը», որը բուրժուազիայի գլխին պայթած «ամենասարսափելի արկն» էր:

Վ. Ի. Լենինը քանիցս նշել է, որ Մարքսի այդ երկը գիտական սոցիալիզմի «ամենախոր, ամենակողմանի և մանրակրկիտ հաստատումն ու կիրառումն է»:

Քաղաքացիական հասարակության անատոմիան հետազոտելով քաղաքատնտեսության մեջ, Մարքսը բացահայտեց և գիտական անհերքելի փաստերով հիմնավորեց կապիտալիզմի ծագման, զարգացման ու կործանման օրենքները, օրենքներ, որոնց գիտական իմացությամբ զինելով պրոլետարիատին, նա ցույց տվեց վերջինիս ելքը մտավոր և ֆիզիկական ստրկությունից:

Այնտեղ, ուր բուրժուական տնտեսագետները իրերի հարաբերություն էին տեսնում, Մարքսը բացահայտեց մարդկանց հասարակական հարաբերությունները,— նշում է Լենինը: Նման հայացքի կիրառումը տնտեսագիտության մեջ իր հոյակապ արդյունքները տվեց: Պրոլետարիատն ունեցավ իր քաղաքատնտեսությունը, որը միաժամանակ բուրժուական տնտեսագիտության սպառիչ քննադատությունն էր:

Քննադատորեն վեր առնելով կլասիկ տնտեսագիտության նվաճումները,

Մարքսը այն դրեց գիտական հիմքերի վրա: Մի կողմ նետելով տնտեսական բազմաթիվ երևույթների պատահական, արտաքին կապերը, նա սպառիչ հըստակությամբ վերլուծեց ու գնահատեց կապիտալիստական արտադրաեղանակի բոլոր տնտեսական կատեգորիաները, վեր հանելով նրանց ներթաքուն կապերն ու հարակցությունները: Նա մեզ տվեց պատճառի և հետևանքի, հասարակական կյանքում եռեկող ներհակությունները: Իր ուսումնասիրությունն սկսելով ամենահասարակից, ամենապարզից՝ ապրանքից, Մարքսը կապիտալիզմի այդ հասարակ սաղմից ընթացավ մինչև նրա զարգացման բոլոր փուլերը, երևան բերեց դրա էվոլյուցիայի ռևոլյուցիոն ավարտի ուղիները:

Տնտեսագիտության մեջ առաջինը Մարքսը հաստատեց, որ արժեքն ստեղծվում է հանրորեն անհրաժեշտ աբստրակտ աշխատանքով: Ապրանքների սովորական փոխանակության մեջ նա բացահայտեց փողային ձևի ամբողջ գաղտնիքը և «դրանով իսկ սաղմնային դրությամբ աշխատանքի արդյունքի բոլոր բուրժուական ձևերի գաղտնիքը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Նամակներ «Կապիտալի» մասին», էջ 144):

Ցեշտելով, թե տվյալ ապրանքի արժեքի մեծությունը պայմանավորված է նրա սուբստանցի՝ աբստրակտ աշխատանքի քանակությամբ, Մարքսը հաստատեց, որ արժեքն իրային թաղանթով քողարկված հասարակական հարաբերություն է: Ապրանքի սպառարժեքի և փոխանակային արժեքի հիմքում ընկած է կոնկրետ և աբստրակտ աշխատանքների հակադրությունը: Աշխատանքի այդ երկակի բնույթն առաջին անգամ մատնանշել է Մարքսը: Եվ դա այն հանգուցակետն է, որի շուրջը պտտվում էր քաղաքատնտեսության ըմբռնումը երկար ժամանակ,— նշում է Մարքսը:

Ապրանքային արտադրության զարգացման հետևանքը կամ բարձրագույն աստիճանը կապիտալիստական տնտեսությունն է, որտեղ արտադրության անմիջական նպատակը՝ հավելյալ արժեքի ստացումն է:

Հավելյալ արժեքի թեորիան Մարքսի տնտեսագիտական ուսմունքի անկյունաքարն է,— ասում է Լենինը: Պատմական այն իրողությունը, երբ մարդիկ գնում են վաճառելու նպատակով՝ հղի է կապիտալի ծագման հնարավորությամբ: Վերջինիս իրական առաջացման նախնական և գլխավոր պայմանը՝ աշխատանքի անջատումն է հողային սեփականությունից և բանվորների կախումը՝ վարձող դասակարգից: Սրա հետ միասին փողը պետք է կուտակվեր տերերի մոտ, իսկ սեփականության հետ իր պորտը կտրած բանվորը պետք է ազատ լիներ՝ իր աշխատուժը վաճառելու փողատիրոջը: Ինքնին հասկանալի է, որ հավելյալ արժեքի և հավելյալ աշխատանքի առկայությունը ենթադրում է արտադրողականության մի այնպիսի աստիճան, երբ աշխատուժն ի վիճակի է վերարտադրել ավելի մեծ արժեք, քան իր արժեքն է, ավելին, քան պետք է նրա գոյությունը պահպանելու համար:

Բանվորի հավելյալ աշխատանքով ստեղծված արժեքը, որն ամբողջովին պատկանում է կապիտալիստին՝ Մարքսը կոչեց հավելյալ արժեք, որը արտադրության կապիտալիստական հարաբերություններում վերածվում է կապիտալի: Կապիտալի պտույտի մեջ փողի աճման փաստը,— ասում է Լենինը,— հանրահայտ է: Հենց այդ «աճումն» է, որ փողը դարձնում է կապիտալ, որպես արտադրության հատուկ, պատմականորեն որոշ, հասարակական հարաբերություն: Հավելյալ արժեքի աճման կամ կապիտալի աղբյուրի գաղտնիքը Մարքսը մեկնաբանեց այն սովորական երևույթի վերլուծմամբ, թե փողի տերը երբ



շուկայում գնում է մի այնպիսի ապրանք, «որի սպառողական արժեքն ինքնարժեքի աղբյուր դառնալու օրիգինալ հատկություն ունի», մի այնպիսի ապրանք, որի սպառման պրոցեսը առավել մեծ արժեքներ արտադրելու պրոցես է: Եվ այդ առանձնահատուկ ապրանքը աշխատուժն է:

Այսպիսով, Մարքսը բազմիցս ընդգծում է, որ հավելյալ արժեքն այն հարաբերությունն է, որի մեջ դրսևորվում է կապիտալի և աշխատանքի պայքարը: «Հավելյալ արժեքի արտադրությունը կամ շահառությունն արտադրության կապիտալիստական եղանակի բացարձակ օրենքն է» («Կապիտալ», հ. 1, էջ 587): Կապիտալիստական արտադրությունը ոչ միայն ապրանքների, այլև գերազանցապես հավելյալ արժեքի, կապիտալի արտադրությունն է: Դա մի արտադրություն է, ուր «միայն այն բանվորն է արտադրողական, որը հավելյալ արժեք է արտադրում կապիտալիստի համար կամ թե ծառայում է կապիտալի աճմանը» («Կապիտալ», հ. 1, էջ 477): Սա արտադրության այն եղանակն է, երբ արտադրողական բանվոր լինելը միանգամայն դժբախտություն է,— ասում է Մարքսը: Այնուհետև նա տալիս է կապիտալի իր կլասիկ սահմանումը. «Կապիտալը իր չէ, այլ որոշակի, հասարակական, պատմական որոշ ֆորմացիայի հասարակության պատկանող արտադրական հարաբերություն, որը դրսևորվում է իրի մեջ և դա նրան յուրահատուկ հասարակական բնույթ է տալիս» («Կապիտալ», հատ. 3, մաս 2, էջ 351—352, ռուս. հրատ.):

Տնտեսագիտության մեջ Մարքսի արած մեծ հայտնագործությունների թվին է պատկանում կապիտալի կուտակման նրա ուսմունքը: Նա ցույց տվեց կապիտալիստական արտադրության բուն նկրտումը՝ որքան կարելի է մեծ քանակի հավելյալ արժեք վերածել կապիտալի՝ արտադրության ընդլայնման նպատակով: Ահա թե ինչու կապիտալի հաստատուն մասը աճում է ավելի արագ, քան փոփոխունը: Գնալով՝ կապիտալի օրգանական այս աճը ծնում է լուրջ բախումներ և հակասություններ:

Կապիտալի կուտակմանը նվիրված իր փայլուն վերլուծությամբ Մարքսը հաստատեց, որ կապիտալի օրգանական կազմի աճմամբ, հասարակական մի բևեռում կուտակվում է ահռելի հարստություն, իսկ մյուսում՝ սոսկալի թշվառություն: Գոյանում է միլիոնների հասնող «բանվորական պահեստի բանակը», մի «կապիտալիստական գերբնակչություն», որն իր բազմազան ձևերով կապիտալին հնարավորություն է տալիս «արտակարգ արագությամբ ընդլայնելու արտադրությունը»: Սակայն զարգացման որոշ աստիճանի վրա հասարակական կապիտալի վերարտադրությունը խանգարվում է գերարտադրության պատճառով:

Հասարակական կապիտալի վերարտադրության իր հոյակապ շարադրանքում Մարքսը բացահայտեց կապիտալիստական տնտեսական ճգնաժամերի իրական պատճառները, նրանց հնարավոր և անխուսափելի շարժառիթները: Լուսաբանելով կապիտալի վերարտադրության ներհատուկ հակասություններն իրենց այլևայլ երանգավորումներով, Մարքսը հանգեց այն եզրակացության, որ կապիտալի «Համաշխարհային ճգնաժամերը պետք է դիտել իբրև բուրժուական տնտեսության բոլոր հակասությունների ռեալ զուգորդում և բռնի համահարթում» (Теории прибавочной стоимости, том II, ч. 2, 1932 г., стр. 186):

Մարքսի հետազոտությունները նրան այն համոզման բերին, որ «...կա-

պիտալիստական արտադրությունը մի բնական պրոցեսի անհրաժեշտությամբ ծնում է յուր սեփական բացասումը: Սա բացասման բացասումն է», որը նա իրավաբանական լեզվով որակեց իբրև ունեզրկողների ունեզրկում:

«Կապիտալի» երրորդ հատորում Մարքսը, շարունակելով իր հետազոտությունը, մեզ տվեց կապիտալի վերարտադրության իր բոլորովին նոր և չափազանց կարևոր թեորիան: Արտադրության գնի և շահույթի առեղծվածի գիտական լուծումով նա հսկայական չափով առաջ մղեց տնտեսագիտական մտքի զարգացումը:

Մարքսի տնտեսագիտական հանճարի փայլուն արգասիքն է և ռենտայի կնճռոտ հարցի լուծումը: Առաջին անգամ նա սահմանեց, որ հողի արդյունքի արտադրագինը որոշվում է ոչ թե միջին, այլ վատթարագույն հողի վրա արված ծախքերով, «արդյունքը շուկա հասցնելու ոչ թե միջին, այլ վատ պայմանների համեմատ»:

Նա միաժամանակ մահացու հարված հասցրեց «հողի նվազ պտղաբերության» մալթուսյան չարաբաստիկ տեսությանը, ապացուցելով, որ աշխատավորության թշվառության պատճառները պետք է որոնել կապիտալիստական սիստեմում և ոչ թե բնության օրենքներում: Այս կապակցությամբ Մարքսը բացահայտեց մի օրենք ևս, որ հողագործությունը կապիտալիզմի օրոք անհամեմատ ետ է մնում արդյունաբերությունից, որի պատճառը հողի մասնավոր սեփականությունն է:

Այս ամենից կարելի է գալ մի հետևության, որ «կապիտալիստական հասարակությունը սոցիալիստականի փոխարկման անխուսափելիությունը Մարքսն ամբողջապես ու բացառապես հետևցնում է ժամանակակից հասարակության շարժման տնտեսական օրենքից (ընդգծումը մերն է— Ա. Ա.): «Այդ փոխարկման ինտելեկտուալ ու բարոյական շարժիչը և ֆիզիկական կատարողն է հանդիսանում հենց կապիտալիզմի դաստիարակած պրոլետարիատը: Նրա պայքարն ընդդեմ բուրժուազիայի, արտահայտվելով զանազան և ավելի ու ավելի բովանդակալից ձևերով, անխուսափելի կերպով դառնում է քաղաքական պայքար ուղղված պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանությունը գրավելուն» (Լենին, Երկեր, հատ. 21, էջ 76—77):

Ահա Կ. Մարքսի ուսմունքի լենինյան հետևությունը: Ահա նրա տնտեսագիտության պատմա-քաղաքական մեծագույն արժանիքը: Ահա «Կապիտալի» հեղինակի հետազոտած կատեգորիաների պատմա-տրամաբանական ավարտը:

Եվ այս ամենից հետո, որքա՜ն անզոր և որքա՜ն խղճուկ են այն փորձերը, որոնք բազմիցս կատարել են մարքսիզմի բուրժուական հակառակորդները, այն տապալելու համար: Սակայն մարքսիզմի ոչնչացման նպատակով արված գրոհները, վաղուց հօդս են ցնդել, դեմ առնելով Մարքսի ուսմունքի շարունակողի ու զարգացնողի՝ մեծ Լենինի մտքի վահանին, Մարքսի թեորիան գործի վերածող կոմունիստական պարտիաների անառիկ պատվարին: Ամե՛ն օր, ամե՛ն ժամ, քանիցս ծեծկված բուրժուական գրչակները փորձ են արել թաղել մարքսիզմը: Սակայն այսօր մարքսիզմ-լենինիզմի դրոշն է ծածանվում մարդկության մեկ երրորդի կապույտ երկնակամարում: Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի լույսի տակ միլիոններն են ընթանում դեպի կոմունիզմ:





Յուր վիթխարի տեսական ու պրակտիկ գործունեության ընթացքում Մարքսը բնավ չէր երկմտում, որ իր համախոհների համար վերջնական գիտական հաղթանակ ձեռք կբերի:

Այո՛, վաղուց է իրականացել հավերժ կենդանի Մարքսի իղձը, իրականացում, որպիսին մարդկությունը պարտական է նրա և Լենինի հանճարի թափին, Լենինի ստեղծած ՍՄԿՊ-ի աշխարհաշեն տակտիկային: Առանց մարքսիզմ-լենինիզմի սոցիալիզմի գործը չի հաղթանակի և ոչ մի երկրում: Առանց սոցիալական կյանքի ռևոլյուցիոն վերափոխման արքիմեդյան այդ լծակի՝ Մարքսի ու Լենինի ուսմունքի, կոմունիստական միջազգային շարժումը պատմական մեծ հաղթանակներ չէր նվաճի: Եվ «...կոմունիզմը, որը մի ժամանակ սոսկ երազանք էր», այժմ «դարձել է արդիականության մեծագույն ուժը...», որովհետև միշտ ղեկավարվել է վառած ջահովն այն տիտանների, որոնք կոչվում են Մարքս, Էնգելս ու Լենին:

Հայտնի է, որ իր բազմակողմանի տեսության մշակմանը համընթաց, Մարքսը մինչև կյանքի վերջն անզիջում և անաչառ քննադատում էր բուրժուական և մանր-բուրժուական այն բոլոր հոսանքները, որոնք այս կամ այն ձևով ծառանում էին սոցիալիզմի դեմ: Այս առումով, մարդկությանը մատուցած նրա մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ նա գիտական ամուր հիմքերի վրա դրեց սոցիալիզմը, կուռ փաստերով ապացուցելով, որ այն կենսագործողը ռևոլյուցիոն պրոլետարիատն է:

Ուստի պատահական չէ, որ ամբողջ աշխարհի աշխատավորների սրտին այնքան մոտ է ու հարազատ «Կապիտալի» հեղինակի անունը: Ազնիվ աշխատանքով ապրող և ոչ մի մարդ չի մոռանա, որ աքսորի, բռնությունների, հալածանքների սարսափն արհամարհելով, իր առողջությունը, կյանքի երջանկությունը և ընտանիքի բարօրությունը զոհելով, Մարքսը միշտ բարձր ծածանեց միջազգային կոմունիստական շարժման դրոշը, անաղարտ պահեց գիտության ռահվիրայի պատիվը:

Լենինն առանձնապես բարձր էր գնահատում Մարքսի ջանքերը, որոնք գործադրվում էին պրոլետարիատի պայքարի տակտիկան մշակելու ուղղությամբ: Եթե մատերիալիզմը որպես փիլիսոփայություն չի նպաստում կղերվող մարդկության ազատագրմանը, նա «արդարացիորեն այն համարում էր կիսատ, միակողմանի, մեռյալ»: Հիրավի, Մարքսը պրոլետարիատի տակտիկայի հիմնական խնդիրը բնորոշում էր մատերիալիստական-դիալեկտիկական աշխարհայեցողության բոլոր նախադրյալներին խիստ համապատասխան,— հիշատակում է Լենինը: Կիրառելով մատերիալիստական դիալեկտիկան դասակարգային կռվի վերլուծության մեջ, նա պայքարում էր իր հայացքների պրակտիկ կենսագործման համար և պահանջում համախոհներից. որպեսզի այդ պայքարի հիմքում նախ և առաջ դրվի երկու բան՝ վերջնական նպատակը, հասարակական կոնկրետ իրադրության ճշգրիտ հաշվառքը:

Խարազանելով ֆրազամոլ հեղափոխականներին, Մարքսը նշում էր, որ կոմունիստները պարտավոր են թեորիան կիրառելիս նկատի առնել, որ իր ուսմունքը գործողության ուղեցույց է և ոչ դոգմա: Ահա թե ինչու Լենինը դեռ անցյալ դարի վերջին հատկապես շեշտում էր, որ Մարքսի աշակերտները պարտավոր են մարքսիզմը կիրառել և զարգացնել յուրաքանչյուր երկրի պատ-

մական, սոցիալ-տնտեսական կոնկրետ հանգամանքների համեմատ։ Եվ հենց ինքը՝ Լենինը, հանդես եկավ որպես Մարքսի տեսության ու պրակտիկայի հանճարեղ շարունակողն ու զարգացնողը։ Լենինի պարտիան՝ ՍՄԿՊ-ն, բազմիցս ցուցադրել է ստեղծագործական մարքսիզմի զարգացման և ճկուն կիրառման հոյակապ օրինակներ։

Կարլ Մարքսի մահից անցել է ութսուն տարի. որպիսի՜ հրաբորբ, պատմական իրադարձություններով լի և վառ տարիներ։ Աշխարհում մեծագույն փոփոխություններ կատարվեցին։ Լենինի գլխավորած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայով բացվեց բոլորովին նոր առավոտ «անեզրական աշխարհի վրա»։ «Մարդկության մեկ երրորդը նոր կյանք է կառուցում գիտական կոմունիզմի դրոշի ներքո։ Սոցիալիզմի աշխարհն ընդլայնվում է, կապիտալիզմի աշխարհը նեղանում... Իմպերիալիզմն անզոր է կանգնեցնելու պատմական անհաղթահարելի պրոցեսը (ՍՄԿՊ Ծրագրից)։

Որքա՜ն կհրճվեր «մեծ Մավրը», եթե այսօր տեսներ, թե ինչպես Սովետական Միության ժողովուրդներն իր կանխատեսած կոմունիզմի պալատն են կառուցում, թե ինչպես այժմ «Աշխարհի վրայով անցնում է մաքրող մի մեծ ամպրոպ, նշանավորելով մարդկության գարունը»։ Նա չէր կարող չլցվել անհուն բերկրանքով, եթե տեսներ, թե ինչպես սոցիալիզմի հզոր լագերի երկրները մեծ հաջողություններով ընթանում են Սովետական Միության հարթած ուղիներով։ Այժմ Մարքսին խորապես սիրող ու նրա վսեմ գաղափարներով տոգորված մարդիկ չեն կարող չոգեշնչվել միջազգային կոմունիստական շարժման այն մեծ վերելքով, որին ականատես ենք այսօր։ Կոմունիստները խոր գոհունակությամբ են հնձում սերմնացան Մարքսի ցորեանի հունձի արտերը և դրանով իսկ արագացնում իմպերիալիզմի մայրամուտը։

Մեր դարաշրջանը մարքսիզմ-լենինիզմի գաղափարների փայլուն հաղթանակների դարաշրջանն է, մի դարաշրջան, երբ «Համաշխարհային կապիտալիստական սիստեմն ամբողջությամբ վերցրած հասունացել է պրոլետարիատի սոցիալական ռևոլյուցիայի համար»: Սովետական Միության ժողովուրդները հաստատորեն գործի են վերածում ՍՄԿՊ Ծրագիրը, որը հանդիսանում է ստեղծագործական մարքսիզմի պատմական մի կոթող։

Կարլ Մարքսի մեծագույն հուշարձանն այն ամենն է, ինչ իրենից նշանավորում է կոմունիստական գաղափարների կենսագործումը։ Այսօր «Կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմի սարսափներից փրկելու պատմական միսիան և աշխարհում հաստատում է Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդների համար» (ՍՄԿՊ Ծրագրից)։

Ահա թե ինչու դեպի կոմունիզմ ընթացող բազմազան ժողովուրդների ալ դրոշների վրա վառ փողփողում են ռևոլյուցիոն մտքի ու գործի հանճարների՝ Մարքսի, Էնգելսի ու Լենինի պատկերները։ Ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունն այսօր ապրում է, ստեղծագործում և պայքարում նրանց վեհ գաղափարներով։

Այժմ և միշտ դեպի կոմունիզմ ընթացող ժողովուրդների անկասելի երթում հանճարեղ Մարքսն է հավերժում։

---

# ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԲԼՈԿՈՒՄ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Վերջին ժամանակներս իմպերիալիստական լագերի պարագլուխները կապիտալիստական աշխարհի միասնության մասին խոսելիս չեն կարողանում թաքցնել իրենց տագնապը։ Միասնության գաղափարը Արևմուտքում տեսական վիթխարի էվոլյուցիա է ապրել, վերաճելով «ինտեգրացիայի» պլանի, որի հեռավոր նպատակն է կապիտալիստական ամբողջ աշխարհը միաձուլել տնտեսական, ռազմական և նույնիսկ պետական-քաղաքական տեսանկյունից։ Անշուշտ այս բոլորը հստակորեն արտացոլում է պրոբլեմների այն կոմպլեքսը, որոնք ծառացել են ժամանակակից կապիտալիզմի առջև սոցիալիստական հզոր սիստեմի առաջացման և նրա անընդմեջ զարգացման, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հաղթանակների ու գաղութակալության փլուզման, գիտա-տեխնիկական ռևոլյուցիայի ու արտադրողական ուժերի աննախընթաց զարգացման շնորհիվ։ Սակայն կյանքը ցույց է տալիս, որ կապիտալիստական աշխարհի «կուռ միասնության» և առավել ևս այն «միաձույլ» դարձնելու տեսական ծրագրերն իրականություն դարձնելու ճանապարհին ծագում են այնպիսի տարաձայնություններ ու հակասություններ, որոնք երբեմն հասցնում են ճգնաժամային դժվարությունների ու բարդությունների։ Իսկ դրանք հաղթահարելու համար սկսված դիվանագիտական մարաթոնները երբեմն տարիներ են տևում։

## ՏԱՐԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՆԱՏՕ-Ի ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ

Ինչպես հայտնի է, անգլո-ամերիկյան համաձայնությունը Բահամյան կղզիներում անցած տարվա դեկտեմբերին, որն ստացավ Նասսաուի պակտ անունը, հանդիսացավ ՆԱՏՕ-ի ներսում գոյություն ունեցող հակասությունների բորբոքման նոր էտապի սկիզբը։ ԱՄՆ-ի դիվանագիտությունը բահամյան դեմարշով նպատակ ուներ վճռական քայլ կատարել իր ստրատեգիական սկզբունքներն իրականություն դարձնելու ճանապարհին։ «Նյու-Յորք Թայմս» թերթը 1963 թվականի համար արած կանխատեսումների մեջ նշում էր, որ ՆԱՏՕ-ի ներսում բազմակողմանի միջուկային ուժերի ստեղծումը կարագացնի այն օրվա գալուստը, երբ նրա անդամ պետությունները կդառնան փոխադարձաբար միմյանցից կախված՝ բառիս իսկական իմաստով։ Սակայն հակառակ ամերիկացիների սպասումների, Նասսաուի համաձայնությունը ո՛չ միայն չամրապնդեց ատլանտյան դաշինքի միասնությունը, այլև լակմուսի թղթի նման հրապարակ

հանեց նրա ներքին տարաձայնություններն ու հակասությունները։ Կարելի է ասել՝ այդ հակասություններն ու տարաձայնությունները երբեք այնքան բյուրեղացած չեն եղել, ինչպես հիմա։

Ամենից առաջ Նասսաուի պակտը ըստ էության ո՛չ թե վերացնում, այլ ավելի է խորացնում հակասություններն Անգլիայի և Միացյալ Նահանգների միջև։ Դեռևս բահամյան հանդիպման նախօրյակին անգլիական «Թայմս» թերթը գրում էր, որ Նասսաուում քննարկվող հարցը ո՛չ միայն Մակմիլանի քաղաքական կարիերայի, այլև Մեծ Բրիտանիայի ապագայի, նրա անկախ միջուկային ուժերի և Վաշինգտոնի ու Լոնդոնի միջև յուրահատուկ հարաբերությունների հարցն է։

Այժմ արդեն պարզ է, որ հետևանքները շատ ավելի ցնցող էին, քան կարող էր ենթադրել «Թայմսը»։ Նասսաուի պակտի դրույթները Ատլանտյան համագործակցության վրա տարածելու առաջին փորձերը առաջացրել են աննախընթաց իրարանցում և հակամարտություն արևմտյան բլոկում, սպառնալով խախտել ՆԱՏՕ-ի կազմակերպչական և կառուցվածքային սկզբունքները։

Խոսքն ամենից առաջ վերաբերում է Ֆրանսիային, որը կտրականապես հրաժարվում է ընդունել անգլո-ամերիկյան համաձայնության դրույթները։ Իսկ դրանք հանգում են հետևյալին։

Դեռևս 1960 թվականին ԱՄՆ-ը և Անգլիան ստորագրեցին մի համաձայնագիր, որով ամերիկացիներն իրավունք էին ստանում Հոլի-Լոխում, Անգլիայի հյուսիսում կառուցել բազա իրենց ատոմային սուզանավերի համար, որոնք կրում են «Պոլարիս» տիպի միջուկային լիցք ունեցող հրթիռներ։ Փոխադարձաբար Միացյալ Նահանգները խոստացան Անգլիային վաճառել «օդ-գետին» կարգի «Սկայբոլտ» տիպի հրթիռներ, որոնք ունենալու էին միջուկային մարտագլխիկներ և արձակվելու էին ռեակտիվ ռմբակոծիչներից։

Ցանկանալով ձեռք բերել «Սկայբոլտ» տիպի հրթիռներ, անգլիական կառավարությունը հույս ուներ ստեղծել սեփական, ինքնուրույն, անկախ միջուկային ուժեր։ Անգլիայի այդ ձգտումը սկզբից ևեթ հակասում էր ամերիկյան կառավարության նպատակներին։

Դեռևս անցյալ տարվա հունիսի 26-ին Դին Ռասկի՝ Եվրոպայում կատարած դրամատիկ շրջագայության ժամանակ Մակմիլանը Համայնքների պալատում, պատասխանելով լեյբորիստական օպոզիցիայի հարցերին, աներկմտորեն ընդգծեց, որ Անգլիան ունի ինքնուրույն միջուկային ուժեր և դրանք ինքնուրույն կերպով տնօրինելու կոնստիտուցիոն իրավունք, չնայած այն բանին, որ պրակտիկ նկատառումներով նա ռազմական պլանները մշակում է ԱՄՆ-ի հետ մեկտեղ։ Սակայն, քանի որ Անգլիան չէր կարող առանց ԱՄՆ-ի մասնակցության իրագործել իր ծրագիրը, ուստի վերջինս հնարավորություն ուներ ճնշում գործադրելու իր կրտսեր պարտնյորի վրա։ Անցյալ տարվա վերջին Միացյալ Նահանգների կառավարությունը հայտարարեց, որ դադարեցնում է «Սկայբոլտ» տիպի հրթիռի կատարելագործման աշխատանքները, որովհետև դրանք խիստ թանկ են նստում և անարդյունավետ են։ Միաժամանակ Անգլիային առաջարկվում էր սեփական միջոցներով շարունակել այդ աշխատանքները։ Ամերիկյան կառավարությունը հեշտությամբ արեց այդ առաջարկությունը, կանխապես գիտենալով, որ Անգլիան պատրաստ է հրաժարվել դրանից, որովհետև պահանջվում էր 100 միլիոն դոլար շարունակելու համար մի աշխատանք, որի հեռանկարները պարզ չէին։ Միևնույն ժամանակ ԱՄՆ-ը հայտարարեց, որ



ինքն առհասարակ հրաժարվում է «Սկայբոլտ» հրթիռից և հետագայում մտադիր չէ գնել նույնիսկ նրա կատարելագործված վարիանտը։

Այսպիսով Անգլիան մնաց երկընտրանքի առաջ։ Ինչպես վկայում է ՅՈՒՊԻ գործակալությունը, պրեզիդենտ Քենեդին Բահամյան կղզիներ մեկնելիս իր առջև նպատակ էր դրել հասնել այն սկզբունքի ճանաչմանը, որ միջուկային զենքը Արևմուտքի տրամադրության տակ լինելու է «անբաժան» և գտնվելու է միասնական հրամանատարության ներքո։ Հետևապես «Սկայբոլտի» շուրջը ծավալված ողջ պատմության նպատակն էր՝ ստիպել Անգլիային հրաժարվել ինքնուրույն միջուկային ուժեր ունենալու մտադրությունից։ Ահա թե ինչու Քենեդին Անգլիային առաջարկեց դրանց փոխարեն ԱՄՆ-ից գնել «Պոլարիս» տիպի հրթիռներ, որոնք նախանշված են ատոմային սուզանավերից արձակելու համար և թռչում են մինչև 300 կիլոմետր։

Ի վերջո Մակմիլանը ո՛չ թե նահանջեց, այլ ուղղակի փախուստի դիմեց ամերիկյան ճնշումից։ Այսպիսով, Անգլիան փաստորեն կորցրեց մեկ միլիարդ ֆունտ ստեռլինգ գումարը, որը նա ծախսել էր «Սկայբոլտ» հրթիռների համար «Վուլկան» տիպի ռեակտիվ ռմբակոծիչներ պատրաստելու վրա։ Անգլիան համաձայնեց ատոմային սուզանավեր պատրաստել «Պոլարիս» հրթիռների համար. մի բան, որ զգալի չափով ծանրաբեռնեց նրա՝ առանց այն էլ ուռճացած ռազմական բյուջեն։ Անշուշտ ամերիկացիները փորձեցին գործը ներկայացնել այնպես, թե իբր ԱՄՆ-ը «Պոլարիս» տիպի հրթիռները Անգլիային տրամադրելու է ինքնուրույն տնօրինման համար։ Սակայն շուտով պարզ դարձավ, որ հանուն ՆԱՏՕ-ի «բազմակողմանի» կամ «կոալիցիոն» միջուկային ուժերի սկզբունքի Մեծ Բրիտանիան իր հրթիռակիր սուզանավերը (թեև ոչ բոլորը) պետք է դնի ՆԱՏՕ-ի ընդհանուր հրամանատարության տրամադրության տակ։ Այսպիսով Բահամյան կղզիներում տեղի ունեցած անհավասար գործարքը Հյուսիս-Ատլանտյան դաշինքի ներսում միասնական միջուկային քաղաքականության, իսկ ըստ էության ամերիկյան քաղաքականության իրականացման վճռական փուլը հանդիսացավ։

Անգլիայի նահանջը, ըստ էության, նշանակում է, որ ի չիք է դառնում ԱՄՆ-ի և Անգլիայի միջև յուրահատուկ հարաբերությունների դոկտրինան, և վերջինս հավասարվում է ատլանտյան մյուս դաշնակիցներին։

Նույնիսկ պահպանողական պարտիայի աջ շրջանները Նասսաուի հանդիպումը որակեցին որպես «դիվանագիտական Դյունկերկ»։ Թերևս այդ համեմատությունն ավելի քան դիպուկ կերպով է բնորոշում Անգլիայի կապիտուլյացիան, միայն այն վերապահումով, որ, ի տարբերություն դյունկերյան պատմական ողբերգության, այս անգամ նա ստիպված էր միայնակ ճաշակել պարտության դառնությունը։ Ֆրանսիան իր գեներալ պրեզիդենտի գլխավորությամբ գերադասեց մերժել ամերիկյան առաջարկը։ Դրանով իսկ ավելի ցայտուն դարձան ֆրանս-ամերիկյան հակասությունները։ Այս առնչությամբ, ԱՄՆ-ի պետական քարտուղար Դին Ռասկը «Նեյշնլ Բրոդքաստինգ քոմպանի» հեռուստատեսային ընկերության կողմից հաղորդված ինտերվյուի ժամանակ խոստովանեց, որ Միացյալ Նահանգների և Ֆրանսիայի միջև տարաձայնություններ կան ՆԱՏՕ-ի բազմակողմանի միջուկային ուժեր ստեղծելու, Անգլիային «ընդհանուր շուկա» թույլ տալու հարցերում, ինչպես նաև Ֆրանսիային «Պոլարիս» տիպի հրթիռ վաճառելու ԱՄՆ-ի առաջարկի կապակցությամբ։

Այդ տարաձայնություններն ավելի պարզ դարձան պրեզիդենտ դը Գոլի

հունվարի 14-ի պրեսկոնֆերանսից հետո։ Ջնականորեն «Պոլարիս» տիպի հրթիռներ ձեռք բերելու ամերիկյան առաջարկը մերժելը դը Գոլը հիմնավորեց այն բանով, որ Ֆրանսիան սուզանավեր չունի և ոչ էլ հրթիռների համար միջուկային մարտագլխիկներ։ Սակայն, ինչպես նշեց պրեզիդենտը, հիմնականում հարցը վերաբերում է ստրատեգիական սկզբունքներին. Ֆրանսիան ձգտում է ունենալ իր սեփական ատոմային ուժերը։

Դը Գոլի կարծիքով Արևմուտքի և Արևելքի միջև ուժերի ներկա հարաբերակցության պայմաններում, հարաբերակցություն, որի հիմքում ընկած է երկու լագերների խոշորագույն տերությունների միջուկային հզոր ուժերի առկայությունը, «Ատլանտյան դաշինքի համար, այսինքն, ըստ էության ամերիկյան հրամանատարության համար» միջուկային զենքի գործադրումը Եվրոպայի պաշտպանության նպատակներով կորցրել է իր բացարձակ նշանակությունը։ Եվ, ինչպես ցույց տվեց Կարաիբյան ճգնաժամը, ասաց դը Գոլը, Միացյալ Նահանգները միջուկային զենքը կգործադրեն ոչ թե Եվրոպայի, այլ ԱՄՆ-ի պաշտպանության համար։ «Ավելին,— հայտարարեց դը Գոլը,— կասկածից դուրս է այն փաստը, որ զսպող ուժ ունեն և՛ սովետական կողմը, և՛ ամերիկյան կողմը, իսկ դա էլ նշանակում է, որ ընդհանուր ատոմային պատերազմի դեպքում անխուսափելի կլինեն սարսափելի, և գուցե, նույնիսկ մահացու ավերածությունները այս կամ այն երկրում։ Այդ պայմաններում ոչ ոք աշխարհում չի կարող ասել— ոչ ոք ամբողջ աշխարհում, և մասնավորապես Ամերիկայում, չի կարող ասել, երբ, ինչպես և ինչ չափով ամերիկյան միջուկային զենքը կկիրառվի Եվրոպայի համար։

Այսպիսով, սկզբունքները և պայմանները, պարագաները ստիպեցին, հարկադրեցին մեզ ստեղծել սեփական ատոմային ուժեր։ Հասկանալի է, Ֆրանսիան չի բացառում այդ ուժերի գործողությունները զուգակցել իր դաշնակիցների նույնատիպ ուժերի գործողությունների հետ, բայց մեզ համար ինտեգրացիան իմաստազուրկ է ինքնըստինքյան»։

Դը Գոլը իր համար հավասար տեղ է պահանջում ատլանտյան արևի տակ՝ ԱՄՆ-ի և Անգլիայի կողքին։ Սակայն անժխտելի է, որ ամերիկյան ռազմաքաղաքական պլաններին ընդդիմանալով, Ֆրանսիան ձգտում է փրկել իր ազգային ինքնուրույնությունն ամերիկյան ոտնձգություններից։

Ամերիկյան իմպերիալիզմը իր «գլոբալ տիրապետության» քաղաքականությունը միշտ աշխատել է սքողել իրավահավասարության մասին վերամբարձ ֆրազներով։ Իր ուղերձում, խոսելով Ատլանտյան դաշինքի ներսում եղած տարաձայնությունների մասին, Քեննեդին դրանք անվանեց «ազնիվ տարաձայնություններ պատվավոր պարտնյորների միջև», իսկ արևմտյան դաշինքը որպես «հպարտ և սուվերեն երկրների դաշինք»։

Բայց միաժամանակ նա պարծենկոտությամբ հիշատակում է, որ այս տարի ԱՄՆ-ի ծախսերը միայն միջուկային զենքի վրա կազմելու են 15 միլիարդ դոլար, որն ավելի է, քան Միացյալ Նահանգների եվրոպական երկրների դաշնակիցների ռազմական բոլոր ծախսերը միասին վերցրած։ Անշուշտ ամերիկյան մոնոպոլիաները, որոնք սպառազինությունների մրցավազքը համարում են ամենաձեռնտու բիզնես և տնտեսական ռիսկի հետ կապված երևույթ, երբեք չեն համաձայնի, որ ԱՄՆ-ի դաշնակիցները դրա համար վարձահատույց լինեն իրավահավասարության, անկախության և ինքնուրույնության պահանջներով։ Փաստորեն Բահամյան կղզիներում առաջ քաշված սկզբունքը նպատակ



ունի ԱՄՆ-ը դարձնել ՆԱՏՕ-ի միջուկային արսենալը և նրա անդամներին մշտական պատվիրատուներ ամերիկյան մոնոպոլիաների համար։

Այսպիսով, ՆԱՏՕ-ի շրջանակներում բազմազգ, բազմակողմանի միջուկային ուժեր ստեղծելու ամերիկյան պլանը սպառազինությունների մրցավազքի ուժեղացման պլան է, որը արևմտյան տերությունների ուռճացած ռազմական բյուջեները ծանրաբեռնելու է նորանոր հոդվածներով։ Այն կհանգեցնի հարկերի ավելացման և մասսաների նյութական դրության վատթարացման։

Մյուս կողմից ինքնուրույն ազգային ուժերի ստեղծումը բազմազգ ուժերի փոխարեն չի կարող ալտերնատիվ լինել։ Նախ՝ այն պարզ պատճառով, որ ոչ թե նվազեցնում, այլ սաստկացնում է պատերազմի վտանգը, քանի որ նշանակում է միջուկային զենքի հետագա տարածում, որը դժվարացնում է վերահսկելու և արգելելու գործը։

Անհա թե ինչու ելքը ոչ թե միջուկային սպառազինության գործում ալտերնատիվներ փնտրելն է, այլ ընդհանուր և լրիվ զինաթափումը։

## ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԾԻԿԸ

«Վաշինգտոն պոստ ընդ թայմս Հերալդ» թերթը, մեկնաբանելով պրեզիդենտ դը Գոլի հունվարի 14-ի ելույթը՝ պրես-կոնֆերանսում գրել է. «Դը Գոլը բանավոր կերպով երկու ատոմային ռումբ նետեց. առաջինը «ընդհանուր շուկայում Անգլիայի անդամության վրա և երկրորդը՝ իրեն «Պոլարիս» հրթիռներով օգնելու ամերիկյան առաջարկության վրա»։

Դը Գոլի վճռական ելույթը Անգլիային «ընդհանուր շուկայի» մեջ ընդունելու դեմ ամպրոպի պես պայթեց Ատլանտյան օվկիանոսի երկու կողմերում։ Անգլիայի բանակցությունները «վեցյակի» հետ շարունակվեցին ավելի քան 18 ամիս, և այս տարվա հունվարի 29-ին ավարտվեցին ձախողումով։ Չնայած ԱՄՆ-ի ճնշմանը (պրեզիդենտ Քեննեդին ԳՖՌ-ի էկոնոմիկայի մինիստր Էրհարդին ուղերձ էր հղել՝ խնդրելով այդ բանակցությունները դուրս բերել փակուղուց), «ընդհանուր շուկայի» մեջ Անգլիայի մտնելու հարցը տապալվեց և դրա քննարկումը հետաձգվեց անորոշ ժամանակով։ «Վեցյակի» երկրների ներկայացուցիչները Անգլիայի պատվիրակության ղեկավար Հիթին հաղորդեցին, որ եվրոպական տնտեսական համագործակցությունն առայժմ ի վիճակի չէ Անգլիայի հետ շարունակելու բանակցությունները։ Այսպիսով, լուրջ վտանգի տակ է դրված ատլանտյան համագործակցության ներքին միասնությունը։ Ինչո՞ւմն է բանը, ինչո՞ւ է այդ հարցը դարձել սուր բախումների ու հակասությունների հանգուցակետ։

Այդ հարցը բախվում է Փարիզ—Բոնն առանցքի դիմադրությանը, առանցք, որը տիրապետող դիրք է գրավում «վեցյակի» ներսում։ Անտարակույս, առանցքի երկու բևեռները միատեսակ չեն վերաբերվում այդ հարցին։ Այսպես Բոննում կցանկանային Անգլիային թույլ տալ մուտք գործել «ընդհանուր շուկա», եթե նա համաձայներ Արևմտյան Գերմանիան միջուկային զենքով զինելու պրակտիկ իրագործման հետ։ Լեյբորիստական պարտիայի ղեկավարներից Հարոլդ Վիլսոնը խոսելով արևմտագերմանական արտաքին գործերի մինիստր Շրեդերի՝ հունվարի սկզբին Լոնդոն այցելելու մասին, ուղղակի նշում էր, որ նա «ցանկանում էր բանակցություններ վարել ոչ այնքան այն մասին, թե ինչպես

օգնել Անգլիային «մտնել» Եվրոպայի մեջ, որքան եվրոպական ռումբի մասին, որի դետոնատորի վրա լինելու է Արևմտյան Գերմանիայի մատը»։

Մյուս կողմից Փարիզ—Բոնն առանցքի համար Անգլիայի մուտքը «ընդհանուր շուկա» վտանգավոր է այնքանով, որքանով որ քաղաքական տեսակետից այն սպառնում է վերջ դնել առանցքի տիրապետությանը շուկայի ներսում։ Բացի այդ այն կարող է վերացնել «ընդհանուր շուկայի» ներփակ բնույթը և դրանից բխող բոլոր առավելությունները։ Ինչ խոսք, որ Անգլիան համառորեն ձգտում էր վիչումների՝ աշխատելով «ընդհանուր շուկայի» անդամության իրավունք ստանալ, չկորցնելով կայսերական արտոնյալ տարիֆները և իր յուրահատուկ տնտեսա-առևտրական կապերը ազգերի բրիտանական համագործակցության երկրների հետ։ Հենց այս հանգամանքն էլ խիստ անհանգստացնում էր «վեցյակին»։ Դը Գոլը հունվարի 14-ի պրես-կոնֆերանսում պնդեց, որ «...բնույթը, կառուցվածքը, կոնյունկտուրան, որոնք յուրահատուկ են Անգլիային, խորապես տարբերվում են մայրցամաքային երկրների բնույթից, կառուցվածքից և կոնյունկտուրայից»։

Ընդգծելով Անգլիայի և «վեցյակի» երկրների միջև խիստ մեծ տարբերությունը, դը Գոլը գտնում է, որ Անգլիայի մուտքի հետևանքով «ընդհանուր շուկայի» մեջ կմտնեն նաև այն երկրները, որոնք կապված են Անգլիայի հետ՝ ազատ առևտրի զոնայի շրջանակներում, իսկ դա կհեղաբեկի «ընդհանուր շուկան»։ Հարկ կլիներ ընդլայնել «ընդհանուր շուկայի» սահմանները, իսկ դա առաջ կբերի նոր պրոբլեմներ այլ երկրների և հատկապես ԱՄՆ-ի հետ։

«Ընդհանուր շուկայի» ընդլայնման դեպքում դը Գոլի կարծիքով՝ «վերջին հաշվով երևան կգա վիթխարի ատլանտյան համագործակցություն, որը կախված կլինի ամերիկացիներից և կընկնի ամերիկյան ղեկավարության ներքո, որն արագորեն կկլանի Եվրոպա համագործակցությունը»։

Այդ պատճառով դը Գոլը բացեիբաց հանդես եկավ «ընդհանուր շուկայի» մեջ Մեծ Բրիտանիան ընդունելու դեմ, գտնելով, որ նա պատրաստ չէ դրա համար։ Այս դիրքավորումը չէր կարող ահարեկող արձագանք չգտնել ԱՄՆ-ում։ Բանը միայն նրանում չէ, որ Անգլիայի մեկուսացումը նոր ճեղքվածք է առաջացնում Հյուսիս-Ատլանտյան դաշինքում՝ ի չիք դարձնելով ռազմա-քաղաքական ինտեգրացիայի խնդիրը։ Ամերիկյան իմպերիալիզմին վախեցնում է նաև «ընդհանուր շուկայի» նեղ պրոտեկցիոնիզմը։ Այդ տագնապը միանգամայն հիմնավորված է, եթե նկատի ունենանք ամերիկյան հողագործության մինիստր Օրվիլ Ֆրիմենի զայրացկոտ բողոքներն այն մասին, որ «ընդհանուր շուկան» ընտրել է «պրոտեկցիոնիստական» քաղաքականություն, որն ԱՄՆ-ին կարող է նստել հարյուր միլիոնավոր դոլարներ, որովհետև ամերիկյան գյուղատնտեսական մթերքները կկորցնեն եվրոպական տրադիցիոն շուկան։

«Ընդհանուր շուկայի» դարպասներն Անգլիայի առջև ընդմիշտ փակելու դեպքում նա կհայտնվեր Եվրոպայում առևտրական պատերազմ մղելու անհրաժեշտության առաջ։ Սակայն բրիտանական զառամյալ առյուծը բավական փորձ ունի կռահելու համար, որ այդպիսի պատերազմի հեռանկարներն իր համար անմխիթար են։

Այս խճճված հակադրությունների ու պայքարի մեջ Ֆրանսիան ամեն կերպ կառչում է Փարիզ—Բոնն առանցքից։ Ֆրանս-գերմանական առանցքի ստեղծումը և նրա առանձնահատուկ վիճակը «ընդհանուր շուկայի» ներսում ինքնըստինքյան վկայում է այնտեղ գոյություն ունեցող անիրավահավասարության



մասին։ Ահա թե ինչու ամերիկյան իմպերիալիզմը Ֆրանսիայի դիմադրությունը կոտրելու և «ընդհանուր շուկայի» դարպասները լայն «ինտեգրացիայի» միրահարների առաջ բացելու համար ձգտում է օգտագործել նրա ավելի թույլ անդամների դժգոհությունը Փարիզ—Բոնն առանցքի ճնշումից։

Ամերիկյան տեսաբան Ուոլտեր Լիպմանը գրում է, որ Փարիզ—Բոնն առանցքը իր ուժի և իշխանության պաշտամունքով ամենալուրջ երկյուղ է առաջացնում Իտալիայի, Բելգիայի և բոլոր մեծ ու փոքր երկրների մոտ։ Բահամյան կղզիներում տեղի ունեցած հանդիպումը այդ առանցքին այնպիսի մի հարված հասցրեց, որից նա այլևս երբեք ուշքի չի գա։

Սակայն, քանի որ այդ հարվածի նպատակն էր ԱՄՆ-ի համար պահպանել տիրապետող, արտոնյալ դիրք, դը Գոլը որոշեց հարվածին պատասխանել հարվածով։ Անտարակույս ստեղծված իրադրության մեջ «ընդհանուր շուկայի» մյուս չորս անդամների՝ Անգլիայի հետ համաձայնության եզր գտնելու ձգտումը պայմանավորված է նրանց աննախանձելի վիճակով։ Զգտելով Եվրոպայի այդ խոշոր տերությունը ներգրավել «ընդհանուր շուկայի» մեջ, նրանք հույս ունեն հակակշռել Փարիզ—Բոնն առանցքը։ ԱՄՆ-ը օգտագործում է այս ձգտումը, իր առջև նպատակ դնելով ստեղծել Անգլիա—Իտալիա—Հոլանդիա—Բելգիա— Լյուքսեմբուրգ խմբավորումը՝ ուղղված Արևմտյան Գերմանիայի և Ֆրանսիայի դեմ։ ԱՄՆ-ը քաջալերում է Իտալիայի պրոանգլիական դիրքավորումը։ Իտալական պրեմիեր-մինիստր Ֆանֆանիի Վաշինգտոն կատարած ուղևորության արդյունքները լիովին ապացուցում են այդ։ Պատահական չէ, որ Ֆանֆանին, վերադառնալով ԱՄՆ-ից, պառլամենտում ամենախիստ ձևով քննադատեց դը Գոլի քաղաքականությունը ինչպես միջուկային ստրատեգիայի, այնպես էլ «ընդհանուր շուկայի» հարցում։

Ինչ վերաբերում է Բենիլյուքսի երկրներին, ապա նրանք պահանջում են շարունակել ուղիներ որոնել Անգլիայի հետ ընդհանուր հայտարարի գալու համար, իսկ Բելգիայի արտաքին գործերի մինիստր Սպաակը դը Գոլի քաղաքականությունը որակեց որպես «հնացած նացիոնալիզմ»։

Ֆրանս-գերմանական մերձեցման կարևոր պատճառներից մեկն էլ Անգլիան չեզոքացնելու և նրան Եվրոպայում տիրապետող դիրք գրավելու հնարավորությունից զրկելու ձգտումն է։ Դը Գոլը ձգտում է դրան այն պարզ պատճառով, որ Անգլիան իր տիրապետությունը Եվրոպայում միշտ պահպանել է Ֆրանս-գերմանական հակասությունների և մրցակցության վրա խաղալով։ «Քաղաքական, տնտեսական, ստրատեգիական տեսակետից վերախմբավորել Հռենոսը, Ալպերը և Պիրենները շրջափող պետությունները, այդ կազմակերպությունը դարձնել մոլորակի երեք ուժերից մեկը, թե հարկ լինի, միջնորդ երկու՝ սովետական և անգլո-սաքսոնական լագերների միջև... Իմ պարտքը գերազանցապես այդտեղ է»,— գրել է դը Գոլը իր «Հուշերում»։

1961 թվականի սեպտեմբերի 12-ին, ի պատասխան անգլո-ամերիկյան ճնշման, դը Գոլը պահանջեց իր «ատլանտյան դաշնակիցներից միշտապես Ֆրանսիայի և Գերմանիայի միջև կենալու և դրանով ողբալի թշնամության բոցը բորբոքելու փոխարեն» հանգիստ թողնել երկու ժողովուրդներին, որոնք «իրենք կկարգավորեն իրենց գործերը»։

Եվ ահա դը Գոլը այժմ գտնում է, որ իրեն հաջողվել է այդ բանը, որ «թշնամության և կոնֆլիկտների 400 տարիներից» հետո երկու երկրները, որոնք

«փոխադարձաբար լրացնում են միմյանց», կարողացել են իրար հասկանալ։

Անշուշտ ֆրանսիական և գերմանական մոնոպոլիաների դաշինքը, արևմտագերմանական ռևանշիստների և ֆրանսիական մարտնչող իմպերիալիզմի դաշինքը, որին ըստ էության հասել է դը Գոլը «հաշտեցման» իր քաղաքականությամբ, ընդհանուր ոչինչ չունի ֆրանսիական և գերմանական ժողովուրդների իսկական բարեկամության հետ։

Հունվարի 22-ին Փարիզում Ադենաուերի և դը Գոլի ստորագրած պայմանագիրն այդ մասին է վկայում։ Խոսելով այդ դաշինքի իսկական բնույթի մասին, սոցիալիստական պարտիայի օրգան «Պոպյուլեր» թերթը գրում էր. «Գերմանիան կժառանգի ֆրանսիական պրոբլեմները, այդ թվում Աֆրիկային վերաբերվող պրոբլեմները և Ֆրանսիան՝ գերմանական պրոբլեմները, այդ թվում այն պրոբլեմները, որոնք վերաբերում են Արևելքում սահմանների վիճակի հարցին»։

Այդ պայմանագրի ագրեսիվ բնույթն ակնբախ է։ Այն նույնիսկ նախատեսում է օպերացիոն հետազոտությունների ֆրանս-գերմանական ինստիտուտներ ստեղծել, այլ կերպ ասած, համատեղ մշակել ստրատեգիական և տակտիկական կոնցեպցիաներ ու պլաններ։

Իհարկե, ինչպես իմպերիալիստական տերությունների միջև կնքված ամեն մի պայմանագիր, այնպես էլ այս պայմանագիրը չի կարող հանդիսանալ երկուստեք անկեղծ ձգտումների արդյունք։ Հայտնի է, որ թեև Ֆրանս-գերմանական քաղաքական ամուսնության մեջ մեղրամիսը խիստ երկար է շարունակվում, նրան սկզբից ևեթ օտարոտի չեն ապահարզանի սաղմերը։ Դա հաշվով կատարված ամուսնություն է, որտեղ կողմերից ամեն մեկի համար մյուսը միայն միջոց է նեղ, եսասիրական նպատակների հասնելու համար։ Ո՞վ ում ուսերի վրա պետք է քայլի դեպի համաեվրոպական իշխողի պատվանդանը— ահա այս երկակի խաղի իմաստը։ Բոննը երբեք չի թաքցրել և չի թաքցնում, որ ինքը թանկ է գնահատում ամերիկյան իմպերիալիզմի աջակցությունը, և զառամյալ կանցլերը շատ զգույշ է Վաշինգտոնի նկատմամբ։ Եվ, թեև մյուս կողմից նա աշխատում է ջերմագին ողջագուրանքներով շահել դը Գոլի վստահությունը, հակասությունները Փարիզ—Բոնն առանցքի ներսում ակներև են։ Բավական է նշել, որ ՆԱՏՕ-ի ներսում բազմակողմանի ուժեր ստեղծելու ամերիկյան առաջարկությունը խանդավառությամբ դիմավորեցին արևմտագերմանական կառավարական շրջաններում։ Դա Բոննի ռևանշիստների համար միջուկային զենք ձեռք բերելու ամենակարճ և առավել էժան ուղին է։

Արևմտագերմանական ռևանշիստներին դը Գոլի հետ միավորում է հայացքների նույնությունը միջազգային այնպիսի կարևոր և անհետաձգելի հարցերի շուրջը, ինչպիսին են, Բեռլինի հարցը, զինաթափման պրոբլեմը, Արևմուտքի և Արևելքի միջև փոխհարաբերությունների հարցը և այլն։ Դա ուղղակի դավաճանություն է հենց ֆրանսիական ժողովրդի շահերին։

Միանգամայն բնական է, որ այս խելացնոր, անտրամաբանական քաղաքականությունն իրագործելու ճանապարհին իմպերիալիստներն ստիպված են բախվել բազմաթիվ հակասությունների հետ իրենց բուն լագերի ներսում։ Եվ որքան էլ ճռճեն հակակոմունիզմի ցնցոտի դարձած դրոշը, նրանց երբեք չի հաջողվի ձերբազերծվել իրենց ծվատող ներքին հակասություններից։

---

# ԴԻՖԵՐԵՆՑԻԱԼ ՌԵՆՏԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ*

Հ. ՊԵՏՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Սոցիալիզմի քաղաքատնտեսության վիճելի պրոբլեմների շարքում առանձին տեղ է գրավում հողային դիֆերենցիալ ռենտայի հարցը։ Դիֆերենցիալ ռենտան, իբրև տնտեսական կատեգորիա, բխում է հավելյալ արդյունքի իրացման ապրանքափողային հարաբերություններից որպես բաշխման յուրահատուկ ձև։

Գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը կախված է նաև բնական պայմաններից. նույն չափով ծախսված աշխատանքը մարմնացած է լինում ավելի կամ պակաս քանակությամբ արդյունքներում։ Լույսը, ջերմությունը, ջուրը և օդը բերքատվության ֆիզիկական խոշոր գործոններ են և բնական բերրիությունը աշխատանքի արտադրողականության մեծ նախադրյալն է։ Մյուսը, ամենագլխավորը հասարակական աշխատանքի արտադրողականությունն է։ Գյուղատնտեսական արտադրության այս երկու ընդհանուր գործոններն իրենց փոխներգործմամբ պայմանավորում են հողագործության արտադրանքի մակարդակը։

Անվիճելի է, որ արտադրողական ուժերի զարգացմամբ փոխվում կամ կատարելագործվում են հողի մշակման մեթոդներն ու ձևերը։ Հասարակական արտադրության յուրաքանչյուր եղանակ հարուցում է հողի տնտեսական յուրացման յուրահատուկ միջոցառումներ ու մեթոդներ։

Մեր երկրում սոցիալիզմի սկզբունքներով կազմակերպված գյուղատնտեսական արտադրությունը բոլորովին այլ, միանգամայն նոր վիճակ ստեղծեց հողագործության համար։

Սովետական գիտությունը ոչ մի ջանք չի խնայում տեխնիկայի և գիտության միջոցով հողի տնտեսական բերրիությունը բարձրացնելու համար, քանի որ առանց լավ զարգացած գյուղատնտեսության, առանց գյուղատնտեսական մթերքների առատության, բարգավաճող սոցիալիստական էկոնոմիկա չի կարող լինել։ Որովհետև տնտեսական բերրիությունը որոշվում է ոչ միայն հողի բնական որակով, որը գոյություն ունի առանց մարդու ներգործության (որպես նրա բնական հատկություն), այլև այն որակով, որ ձեռք է բերում հողը մարդու ներգործության շնորհիվ։ Ի դեպ, մարդու ներգործությամբ հողի բերրիության մեծացումը գործնականորեն դառնում է նույնպես հողի օբյեկտիվ հատկու-

* Տպագրում ենք առաջարկության կարգով։ Խմբ.

*թյուն, ինչպես որ նա գոյանում է բնության կենսական պրոցեսների շնորհիվ։ Աշխատանքի միջոցով բնության ուժերը ոչ միայն ճանաչվում, այլև «բեղմնավորվում» են, վերածվելով բերքատվության, որը հողի բերրիության և կուլտուրական բույսի կյանքի ու գործադրված ամբողջ աշխատանքի արդյունքն է։ Բերքատվությունը ոչ միայն հողի հետ կապված երևույթ է, այլև հասարակական երևույթ, այսինքն՝* արտադրության արդյունք:

*Հասարակական արտադրության բազմապիսի ճյուղերի ամբողջությունը կազմում է ժողովրդական տնտեսություն։ Սակայն գյուղատնտեսության տեղն ու դերը ժողովրդական տնտեսության մեջ առանձնահատուկ են։ Այդ մասին Մարքսը գրում է. «...տնտեսագիտական ամենալայն իմաստով առած երկրագործական աշխատանքը պետք է բավական արտադրողական լինի, որպեսզի անմիջական արտադրողների տրամադրության տակ գտնվող բանվորական ամբողջ ժամանակը չկլանվի նրանց համար նախանշված սննդամիջոցների արտադրությամբ, հետևաբար հողագործական հավելյալ աշխատանքն ու հողագործական հավելյալ արդյունքը հնարավոր լինեն։ Այնուհետև անհրաժեշտ է, որ հասարակության մի մասի երկրագործական ամբողջ աշխատանքը—անհրաժեշտ աշխատանքն ու հավելյալ աշխատանքը—բավարար լինի ամբողջ հասարակության համար, ուրեմն նաև ոչ-հողագործական բանվորների համար անհրաժեշտ սննդամիջոցներն արտադրելու, որ, հետևաբար, հնարավոր լինի աշխատանքի այս մեծ բաժանումը երկրագործների ու արդյունաբերողների միջև, նույնպես էլ սնունդ արտադրող ու հումքեր արտադրող հողագործների միջև»*[1]*։*

*Տնտեսական կյանքի այս պահանջը հաստատում է այն, որ մարդը չի կարող իր գործունեության այլ ճյուղերը զարգացնել, եթե անբավարար է սննդամիջոցների արտադրությունը։*

*Հողային դիֆերենցիալ ռենտան, իբրև տնտեսական երևույթ, ծագում է հողագործության հավելյալ արդյունքից և* այն հավելյալ արդյունք է փողով արտահայտված, *թեև ամեն հավելյալ արդյունք դիֆերենցիալ ռենտա չէ։ Ճիշտ այնպես, ինչպես ստրուկը մարդ է, բայց մարդը ստրուկ չէ, կամ մեքենան կապիտալ է, բայց կապիտալը մեքենա չէ։ Որպեսզի հողագործության հավելյալ աշխատանքի արդյունքը դիֆերենցիալ ռենտայի աղբյուր դառնար, պատմականորեն անհրաժեշտ էին ապրանքա-փողային հարաբերությունները։ Տնտեսագիտությունը ապացուցել է,* որ հողային դիֆերենցիալ ռենտան ապրանքային արտադրության տնտեսական կատեգորիա է:

*Երբ վերլուծում ենք սոցիալիստական հողագործության մեջ դիֆերենցիալ ռենտայի առաջացման հարցը, մեզ համար անվիճելի է այն, որ արտադրության կապիտալիստական եղանակի անհետացմամբ անհետացել են և դիֆերենցիալ ռենտա ծնող այն պայմանները, որոնք հատուկ էին միմիայն կապիտալիզմին։*

*Սակայն անհերքելի է և այն, որ սոցիալիզմի ժամանակ էլ դեռ մնում են պայմաններ դիֆերենցիալ ռենտայի առաջացման համար։ Դրանք են.* հողի հարաբերական բերրիությունը, ապրանքա-փողային հարաբերությունների գոյությունը:

*Գյուղատնտեսական արտադրության մեջ հողերի հարաբերական բերրիու-*

---

[1] Կ. Մարքս, *Կապիտալ, 3-րդ հատոր, 2-րդ մաս, Երևան, Պետական հրատարակչություն, 1949, էջ 179։*



*թյունն իբրև բնա-պատմական երևույթ, միշտ էլ կմնա որպես հողերի բնական և աշխատանքի հասարակական արտադրողական ուժի զարգացման հետևանք։ Այսպիսով, հողի* բնական բերրիությունը և հասարակական արտադրողական ուժերի զարգացումը, *որպես հարաբերական բերրիության աղբյուրներ, առհավետ են և նրանք կարող են անհետանալ այն դեպքում միայն, երբ մարդկային հասարակությունը դադարի արտադրելուց։*

*Մարդու կողմից բնության վերափոխման պրոցեսը տեղի է ունենում նախ և առաջ բույսի բնույթի ճանաչման միջոցով, միջավայրի նկատմամբ նրա ունեցած պահանջների խոր ըմբռնմամբ, բույսերի նոր սորտերի անհրաժեշտ բազմազանության ստեղծման ճանապարհով,* իսկ կուլտուրական բույսերի բնույթի իմացությունը հենց բույսերի ճիշտ սնման պրոբլեմի գիտական լուծման մեջ է: *Վեգետացիայի ժամանակ բույսերի սնման պրոցեսը և նրան օգնող բոլոր գործոնների համագործակցության հարահոս վիճակը հողագործական արտադրության տեխնոլոգիան է։ Բույսի ստադիական զարգացման ողջ պրոցեսի ուսումնասիրումը և ճանաչումը, նրա տեխնոլոգիայի ճիշտ կիրառումը* կուլտուրական բույսերի բերքատվության բարձրացման ուղին են:

Հետևաբար, միմիայն հողագործության բարձր կուլտուրայի դեպքում է հողի տնտեսական բերրիությունն անընդհատ աճում և կուլտուրական բույսերի բերքատվությունը բարձրանում:

*Սոցիալիստական հասարակության զարգացման այս օբյեկտիվ պրոցեսը՝ տեխնիկայի և արտադրության գործիքների անընդհատ կատարելագործումը, նրանց կիրառման հարուստ փորձը և սոցիալիստական դաշտերի աշխատողների ազնիվ աշխատանքն ու գործիմացությունը հողի տնտեսական բերրիության աճի հիմնական գործոնն են։*

*Գյուղատնտեսության զարգացման այս օրինաչափություններից ելնելով՝ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների առջև խնդիր է դրել մոտակա տարիներին ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնել. ցորեն և հացահատիկային այլ կուլտուրաներ՝ 20—25, հատիկացու եգիպտացորեն՝ 50, ոլոռ՝ 20—30, հատիկացու կերի լոբազգի կուլտուրաներ՝ 20—30, սիլոսացու եգիպտացորեն՝ 300—500, սիլոսացու կերի լոբազգի կուլտուրաներ՝ 200—300, շաքարի ճակնդեղ՝ 200—250, բամբակ՝ առնվազն 25, արևածաղիկ՝ 20, կարտոֆիլ՝ 120—200, բանջարեղեն՝ 250—300 ցենտների։*

*Այստեղ հարց է ծագում. արդյո՞ք մարդու և բնության այս օբյեկտիվ հարաբերության ընթացքում, երբ բարձրանում է* հողերի հարաբերական բերրիությունը, *դիֆերենցիալ ռենտա է ստեղծվում։ Իհարկե ոչ, որովհետև հողերի հարաբերական բերրիությունը ինքնին ռենտա չի ծնում։ Դիֆերենցիալ ռենտան, որպես տնտեսական կատեգորիա, բխում է հասարակական-տնտեսական հարաբերությունների ապրանքափողային ձևից։*

*Սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտայի առաջացման երկու տարբեր գործոնները՝ հողերի հարաբերական բերրիությունը և ապրանքա-փողային հարաբերությունները համազոր չեն այդ տնտեսական կատեգորիայի գոյացման գործում. առաջինը* պայմանն է, *իսկ երկրորդը՝ դիֆերենցիալ ռենտայի առաջացման* պատճառը: *Դիֆերենցիալ ռենտայի առաջացման հարցում այդ երկու գործոնների շփոթումը տնտեսագի-*

տության մեջ առաջ է բերել ոչ ճիշտ կարծիքներ ռենտայի մասին[1]: Այդ բանը, մեր կարծիքով, տեղի է ունեցել սպառողական արժեքի և արժեքի սխալ ըմբռնումից կամ նրանց էական տարբերությունների անտեսումից, երբ մոռացվում է, որ հողը գործում է իբրև արտադրության գործոն, երբ ստեղծվում է սպառողական արժեք, ցորեն: Բայց դա ոչ մի առնչություն չունի ցորենի արժեքի արտադրության հետ:

Սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտայի գոյության մասին, ըստ էության, կա երեք կարծիք՝

ա) կոլտնտեսություններում կան տնտեսական ու բնական պայմաններ՝ դիֆերենցիալ ռենտայի գոյացման համար.

բ) դիֆերենցիալ ռենտա կոլտնտեսություններում կա, բայց սովխոզներում չկա, որովհետև այստեղ գործում է մթերքների վաճառման պետական միասնական գինը.

գ) սոցիալիստական հողագործության պայմաններում գոյություն չունի դիֆերենցիալ ռենտա, քանի որ սոցիալիզմի ժամանակ դադարել են գործել շահույթի միջին նորմայի օրենքը և արտադրության գինը:

Սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտայի գոյության հարցը քննելիս անհրաժեշտ է ելնել հետևյալ հիմնական տեսական դրույթներից:

ա) առանձին կոլտնտեսությունների արտադրության պրոցեսում, նրանց ներքին տնտեսական հարաբերությունների պայմաններում դիֆերենցիալ ռենտա չի կարող գոյանալ կամ ծագել, անկախ այն բանից, որ ամեն մի առանձին դեպքում առատ կամ սակավ բերք է ստացվում:

բ) Հետևապես, դիֆերենցիալ ռենտան առաջ է գալիս ոչ թե կոլտնտեսության արտադրանքի մասսայից, այլ հասարակական տնտեսական հարաբերություններից, ոչ թե սպառողական արժեքից, այլ արժեքից: Այսինքն՝ դիֆերենցիալ ռենտան ապրանքային արտադրության առանձնահատուկ պայմանների տնտեսական կատեգորիա է, իբրև արժեքի և գնի տարբերությունից առաջացած բաշխման երևույթ:

գ) Պետական սոցիալիստական ձեռնարկություններն ինչպես արդյունաբերության մեջ, նույնպես և գյուղատնտեսության մեջ կարող են արտադրության պրոցեսում արտադրել դիֆերենցիալ հավելյալ արդյունքներ, սակայն այդ հավելյալ արդյունքները չեն կարող դառնալ դիֆերենցիալ ռենտայի նյութական կրողներ, քանի որ նրանք պատկանում են հասարակությանը՝ ամբողջապես վերցրած: Մեր միտքը պարզելու նպատակով բերենք երկու օրինակ:

Ընդունենք, որ երկու կոլտնտեսություն հավասար հողակտորների վրա կազմակերպել են հացահատիկի արտադրություն և հավասարաչափ նյութական ու աշխատանքային ծախսումներ կատարելով ստացել են անհավասար արդյունք, դրանցից առաջինի հավելյալ աշխատանքը առարկայացած է եղել 3, իսկ երկրորդինը՝ 4 ցենտներ հացահատիկի մեջ: Ենթադրենք, որ մեկ ցենտներ հացահատիկի պետական գնման գինը հավասար է 7 ռուբլի 50 կոպեկի և այդ գինը համընկնում է երկու կոլտնտեսությունների արտադրանքի արժեքին: Այս դեպքում առաջին կոլտնտեսության հավելյալ աշխատանքի արդյունքը՝ 3

[1] Օրինակ՝ 1. Ն. Մանասերյան «Դիֆերենցիալ ռենտան կոլտնտեսություններում», «Հայաստանի ժողովրդական տնտեսություն», № 3, 1962, էջ 61:



ցենտներ հացահատիկի արժեքը, հավասար է 22 ռուբլի 50 կոպեկի, իսկ երկրորդ կոլտնտեսության հավելյալ աշխատանքի արդյունքը՝ 4 ցենտներ հացահատիկի արժեքը, նույնպես հավասար է 22 ռուբլի 50 կոպեկի, քանի որ նրանք երկուսն էլ հավասար աշխատանք են ծախսել այդ նյութական բարիքների արտադրության պրոցեսում: Սակայն, չնայած այդ բանին, երկրորդ կոլտնտեսությունն իր հավելյալ արդյունքի խմբային սեփականատերը լինելով, ամեն մի ցենտներ հացահատիկը հասարակությանը վաճառում է ոչ թե իր անհատական արժեքով՝ 5 ռուբլի 62 կոպեկով, այլ պետական գնման գնով՝ 7 ռուբլի 50 կոպեկով: Նա այդ բանը կարողանում է կատարել ապրանքա-փողային հարաբերությունների շնորհիվ և իր հավելյալ արդյունքը, հասարակության իրացման պրոցեսում, վաճառում է՝ 30 ռուբլով, այսինքն՝ իր անհատական արժեքից 7 ռուբլի 50 կոպեկով ավելի: Հենց այս գումարն էլ կկազմի կոլտնտեսության դիֆերենցիալ ռենտան: Միմիայն տնտեսական այսպիսի հարաբերությունների շնորհիվ է, որ երկրորդ կոլտնտեսությունը, ապրանքի արժեքի և պետական գնման գնի միջև եղած տարբերությամբ ձեռք է բերում լրացուցիչ զուտ եկամուտ:

Հնարավոր է նաև այսպիսի երևույթ: Ասենք երկու կոլտնտեսություններ նույն պայմաններում վարել, մշակել են իրենց տնտեսությունը. առաջինն արտադրել է 4 ցենտներ հավելյալ արդյունք, որի ամեն մի ցենտներ հացահատիկի մեջ պարունակվում է 10 ռուբլու հասարակական աշխատանք, իսկ երկրորդ կոլտնտեսությունը՝ 5 ցենտներ հավելյալ արդյունք և յուրաքանչյուր ցենտներ հացահատիկի մեջ պարունակվում է 8 ռուբլու հասարակական աշխատանք: Այս դեպքում նույնպես պետական գնման գինը հավասար է 7 ռուբլի 50 կոպեկի: Առաջին կոլտնտեսությունն իր 4 ցենտներ հավելյալ արդյունքը պետությանը վաճառելով ստանում է 30 ռուբլի զուտ եկամուտ, իսկ պետական գնման գնի և 4 ցենտներ հավելյալ արդյունքի արժեքի տարբերությունը կազմող 10 ռուբլին անցնում է պետությանը, որպես համապետական զուտ եկամտի ֆոնդը կազմող մաս, հասարակության ընդհանուր կարիքների համար, իսկ երկրորդ կոլտնտեսությունն իր հավելյալ արդյունքի 4 ցենտները վաճառում է պետությանը և ստանում 30 ռուբլի զուտ եկամուտ:

Այս դեպքում ապրանքի անհատական արժեքի և պետական գնման գնի տարբերությունը՝ 2 ռուբլին, անցնում է պետությանը որպես համապետական զուտ եկամտի ֆոնդ կազմող մաս: Բայց երկրորդ կոլտնտեսությանը դեռևս մնում է բնաձևով մեկ ցենտներ հացահատիկ: Վերջինս, օգտվելով կոլտնտեսային շուկայի ազատ գների հնարավորությունից, իր մեկ ցենտներ հավելյալ արդյունքը վաճառում է 15 ռուբլով և այդ ճանապարհով ձեռք բերում ոչ միայն պետությանն անցած 2 ռուբլին, այլև ստանում է 5 ռուբլի դիֆերենցիալ ռենտա: Հենց այդ էլ կկազմի կոլտնտեսության լրացուցիչ զուտ եկամուտը: Հետևապես դիֆերենցիալ ռենտան է գոյացնում կոլտնտեսության լրացուցիչ զուտ եկամուտը և ոչ թե լրացուցիչ եկամուտն է դիֆերենցիալ ռենտա դառնում:

Սոցիալիստական հասարակության տնտեսական կյանքում նման երևույթներն առաջ են գալիս այն բանի հետևանքով, որ, ինչպես հողի բնական բերրիության պտուղները, նույնպես և աշխատանքի արտադրողական ուժերի կարգացման առավելությունների արդյունքները դեռևս պատկանում են ոչ թե հասարակությանը ամբողջապես վերցրած, այլ առանձին կոլտնտեսություններին, որոնք իրենց տնտեսությունը վարում են բնական բարենպաստ պայմաններում

կամ ինտենսիվ եղանակով և իրենք են տնօրինում այն հավելյալ արդյունքը, որ ստացվում է արտադրության այդ բարենպաստ պայմանների շնորհիվ։

Եթե սոցիալիստական հողագործության հավելյալ աշխատանքի արդյունքը պատկաներ հասարակությանն ամբողջապես վերցրած, ապա հասարակությունը, առաջին օրինակում, հացահատիկի 7 ցենտներ հավելյալ արդյունքի իրացման համար կվճարեր 45 ռուբլի, որպես նրանց մեջ առարկայացած հասարակական աշխատանքի փողային քանակությունը և ոչ թե 52 ռուբլի 50 կոպեկ։ Հետևապես հասարակությունը, որպես սպառող, գյուղատնտեսական մթերքներն ավելի էժան կգներ։

Պարզ է, սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտան կարող է գոյանալ կոլտնտեսությունների դիֆերենցիալ հավելյալ արդյունքի արժեքի և պետական գնման գների տարբերությունից կամ կոլտնտեսային շուկայական ազատ գների տարբերություններից։ Տնտեսական կյանքի նմանօրինակ երևույթները հաստատում են, որ դիֆերենցիալ ռենտան փողի այն քանակն է, երբ կոլտնտեսությունները ձեռք են բերում իրենց հավելյալ արտադրանքի իրացման հասարակական-տնտեսական հարաբերությունների շնորհիվ, որպես վաճառման բարձր գնի և իրենց արտադրանքի արժեքի տարբերություն։

Տնտեսական այդպիսի երևույթը կարող է առաջանալ, մի դեպքում, հողի բնական բերրիության առավել նպաստավոր պայմանների առկայությամբ, մի այլ դեպքում՝ տնտեսությունն առավել ինտենսիվ վարելու շնորհիվ։ Առաջինի դեպքում ստացվում է դիֆերենցիալ ռենտա առաջինը, իսկ երկրորդ դեպքում դիֆերենցիալ ռենտա երկրորդը։ Երկու դեպքում էլ այդ հնարավորությունը բխում է աշխատանքի արտադրողականության բարձրացումից։ Սակայն արտադրության պրոցեսի աշխատանքի արտադրողականության բարձրացման այդ պտուղներից օգտվում են տնտեսության օբյեկտի մենաշնորհային իրավունքը վայելող կոլտնտեսությունները, որպես սոցիալիստական կոլեկտիվ սեփականատերեր և ոչ թե հասարակությունն ամբողջապես վերցրած։

Դիֆերենցիալ ռենտայի գոյությունը, բացարձակ կերպով վերցրած, բացասական երևույթ է մեր տնտեսության մեջ, քանի որ սոցիալիստական պլանային տնտեսությունը պահանջում է համարժեքային փոխանակություն, մինչդեռ դիֆերենցիալ ռենտան այդ հարաբերության խախտման արդյունք է։



Այսպիսով, սոցիալիստական հողագործության պայմաններում կարող է հանդես գալ դիֆերենցիալ ռենտան, որպես տնտեսական երևույթ, կապված կոլտնտեսությունների ապրանքա-փողային հարաբերությունների հետ։ Սակայն սովխոզներում տնտեսական այդ երևույթի առաջացումն անհնար է, քանի որ սովխոզների ամբողջ արտադրանքը պատկանում է պետությանը և վաճառվում է պետությանը իրենց արժեքից ցածր կամ հավասար, արտադրանքի արժեքից բարձր երբեք չի վաճառվում։ Եվ, եթե առանձին սովխոզներում այս օրինաչափությունը խախտվում է, պետությունը պետական բյուջեով փոխհատուցում է։ Հետևապես, սովխոզների, ինչպես հողի բնական բերրիության պտուղները, նույնպես և տնտեսությունն առավել ինտենսիվ վարելու պտուղները, ամբողջապես պատկանում են հասարակությանը, հանձին պետության. դա է պատ-



ճառը, որ հասարակությունը, որպես սպառող, միշտ էլ օգտվում է սովխոզների գյուղատնտեսական մթերքներից ավելի ցածր գներով։

Սոցիալիստական հողագործության պայմաններում դիֆերենցիալ ռենտայի առաջացումը կայուն բնույթ չունի, քանի որ պետությունն իր գների քաղաքականությամբ ձգտում է համարժեքային հարաբերություններ ստեղծել տնտեսության օբյեկտների միջև։ Պարտիայի Ծրագիրն այդ մասին ուղղակի ասում է. «Պետք է շարունակ բարելավել գների սիստեմը, այն համապատասխանեցնելով կոմունիստական շինարարության խնդիրներին, տեխնիկական առաջադիմությանը, արտադրության և սպառման աճին, արտադրական ծախքերի նվազեցմանը։ Գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերը, ապահովեն արտադրության ու շրջանառության ծախքերի փոխհատուցումը և որոշակի շահույթ՝ նորմալ կերպով աշխատող յուրաքանչյուր ձեռնարկությանը»։ Ապրանքների գների այդպիսի քաղաքականությունը համարժեքային հարաբերություն կառաջացնի տնտեսության տարբեր օբյեկտների միջև և դրանով իսկ դիֆերենցիալ ռենտան որպես տնտեսական երևույթ կկորցնի իր պրակտիկ նշանակությունը։

Հետևապես սխալ են այն տնտեսագետները, որոնք կոլտնտեսությունների տնտեսական շահագրգռվածությունը կապում են ռենտայի հետ։ Կոլտնտեսությունների եկամուտների աճը կախված է աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումից, արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկ իջեցման միջոցով հավելյալ արդյունքի ավելացումից։ Նշանակում է, կոլտնտեսությունն իր ուշադրությունը պետք է բևեռի այդ կարևոր հարցի վրա՝ իր եկամուտներն անշեղ աճեցնելու համար և ոչ թե իր արտադրանքի անհատական արժեքի և բարձր գների շնորհիվ, ի հաշիվ հասարակության հարստանալ։

Մեր տնտեսագետները, ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի պատմական որոշումներից, ներկայումս պետք է զբաղվեն գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման ակտուալ հարցերով, արտադրանքի ինքնարժեքի իջեցման խնդիրներով, վարձատրության ու մթերքների առատության ստեղծման լուրջ պրոբլեմներով։

---





## ԶԱՐԳԱՑՆԵԼ ՀԵՌԱՆԿԱՐԱՅԻՆ ՃՅՈՒՂԵՐԸ

*Հողի բերրիությունը բարձրացնելու, կայուն ու բարձր բերք ապահովելու նպատակով ՍՄԿԿ XXII համագումարն անհրաժեշտ համարեց իրագործել տնտեսությունների ավելի խոր, գիտականորեն հիմնավորված մասնագիտացում, խնդիր դրեց առավելապես ավելացնել գյուղատնտեսական արտադրանքի այն տեսակների արտադրությունը, որոնց համար լավագույն պայմաններ կան և ավելի քիչ ծախսեր են պահանջվում։ Շամշադինի պարտիական կազմակերպությունները, հաշվի առնելով բնա-կլիմայական նպաստավոր պայմանները, լուրջ ուշադրություն են հատկացնում հողագործության բարձր եկամտաբեր ճյուղերից մեկի՝ ծխախոտագործության հետագա զարգացմանը։*

*Մեր կոլտնտեսականները, կիրառելով ծխախոտի մշակության ագրոտեխնիկան, արմատավորելով նորն ու առաջավորը, դարձել են իրենց գործի վարպետներ։ Եթե առաջներում պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից նրանք ստանում էին 4—5 ցենտներ, ապա այժմ հավաքում են 25—30, իսկ առաջավոր տնտեսություններում՝ մինչև 40—42 ցենտներ բերք։ Շամշադինում տարեցտարի բարձրացել է ծխախոտի բերքատվությունն ու եկամտաբերությունը. այդ են ցույց տալիս ստորև բերվող աղյուսակի թվերը.*

| Տարիներ | Մշակվող տարածությունը (հեկտար) | Ստացվել է համախառն բերք (տոննա) | Հեկտարից ստացվել է բերք (ցենտներ) | Դրամական եկամուտներ |
|---|---|---|---|---|
| 1952 թ. | 1580 | 1462 | 9,3 | 880 հազ. ռ. |
| 1958 թ. | 1000 | 1852 | 18.5 | 2,5 մլն. ռ. |
| 1960 թ. | 980 | 2487 | 25,4 | 3.3 մլն. ռ. |
| 1962 թ. | 903 | 2543 | 28 | 4,1 մլն. ռ. |

*Ինչպես տեսնում ենք, վերջին տասնամյակում (1952—62 թթ.) մեզ մոտ աստիճանաբար կրճատվել է այդ կուլտուրայի ցանքատարածությունը՝ 1952 թվականի 1580 հեկտարի դիմաց անցյալ տարի ցանվել է 903 հեկտար։ Այդ պայմաններում պարտիական կազմակերպությունները ձգտել են ավելացնել ծխախոտի արտադրությունը՝ բերքատվության բարձրացման ճանապարհով։ Հողի արդյունավետ օգտագործման, անարտադրողական ծախքերի կրճատման և արտադրանքի որակի բարձրացման միջոցով անցած տասնամյակում խոշոր չափով ավելացել է ծխախոտի համախառն արտադրանքը և մոտ հինգ անգամ՝ նրանից ստացվող դրամական եկամուտները։*

*Անցած տնտեսական տարում շամշադինցիներն աճեցրին ծխախոտի բարձր բերք։ Դա ավելի ակնհայտ է դառնում, երբ այն համեմատում ենք 1960 թվականի արդյունքների հետ։ Բնա-կլիմայական պայմանների տեսակետից 1960 թվականն արտակարգ բարենպաստ էր ծխախոտի մշակության համար. 980 հեկտար հողատարածությունից հավաքվեց 2487 տոննա հումք. Շամշադինի շրջանում ոչ մի տարի նման բերք չի ստացվել։ Շատերը գտնում էին, թե այդ այն բնագիծն է, որն իբր թե հնարավոր չէ գերազանցել։*

*1962 թվականը եկավ հերքելու նրանց անհիմն պնդումները։ Տնտեսական տարին շրջանի ծխախոտագործներն սկսեցին նախորդ տարվանից շարունակվող տևական երաշտի պայմաններում։ Ճիշտ է ասված, որ դժվարությունները մարդուն հմուտ են դարձնում, կոփում են կամքը, արիություն տալիս։ Եվ այժմ, երբ հանրագումարի ենք բերում և վերլուծում անցյալ տարվա արդյունքները, ակնհայտ է դառնում պարտիական կազմակերպությունների բեղմնավոր գործունեությունը։*

*Հաջողության հիմքը դրվեց ջերմոցներում, քանի որ առողջ ու փարթամ սածիլը բարձր բերքի ստացման առաջին և կարևոր գրավականն է։ Եթե նախորդ տարիներին սածիլը դաշտ էր դուրս բերվում մայիս ամսվա վերջերին, ապա անցյալ տարի, հաշվի առնելով աննպաստ պայմանները, ջերմոցներում սածիլները շուտ աճեցվեցին և շուտ էլ դաշտ դուրս բերվեցին (մայիսի առաջին օրերին)։ Վեգետացիոն շրջանը շուտ սկսվեց. մինչև շոգերը բույսերը փարթամորեն աճեցին։ Լավ խնամքի ու մշակության շնորհիվ բույսերը չչորացան։*

*Այս վկայում է մեր ծխախոտագործների վարպետության, նրանց հարուստ փորձի ու ջանասեր աշխատանքի մասին։ Բնության արհավիրքների դեմ մղվող երկարատև պայքարում ձեռք բերված այդ փորձը ցույց է տալիս, որ բնական բոլոր պայմաններում կարելի է ստանալ ծխախոտի կայուն, բարձր բերք։ Անցյալ տարվա ցուցանիշները խորհելու շատ բան են տալիս։ Շրջանի ծխախոտագործները 1927 տոննա պլանային արտադրանքի դիմաց մթերակայան հանձնեցին 2543 տոննա ծխախոտի հումք, մոտ 616 տոննայով գերակատարելով պլանային առաջադրանքը։ Մեկ հեկտարից միջին հաշվով ստացվեց 28 ցենտներ բերք։ Միայն գյուղատնտեսության այդ բնագավառից շրջանի կոլտնտեսությունները և Բերդի սովխոզը ստացան 4,1 միլիոն ռուբլու դրամական եկամուտ։ Անշուշտ, դրան մեծապես նպաստել է ծխախոտի հումքի վաճառքի գների բարձրացումը։ Բայց գլխավորն այն գործարար սոցիալիստական մրցությունն էր, որ ծավալվեց յոթնամյակի չորրորդ տարում՝ 2500 տոննա ծխախոտ ստանալու նշանաբանով։ Այսպիսով, անցյալ տարի նվաճվեց յոթնամյակի վերջին տարվա բնագիծը, և այս տարի մեր ծխախոտագործներն աշխատում են հասնելու ավելի բարձր ցուցանիշի։*

*Գովեստով պետք է խոսել Նորաշենի, Այգեձորի, Ղրղիի, Պառավաքարի, Չին-չինի, Չինարիի և մի շարք այլ կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունների, ծխախոտագործների ջանասիրության, հայրենանվեր աշխատանքի մասին։ Նորաշենցիները շրջանում ամենաբարձր բերք ապահովեցին, 65 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ստացան 38 ցենտներ, ծխախոտագործությունից տնտեսությունն ստացավ 424 հազար ռուբլու եկամուտ. Այգեձորի կոլտնտեսության ծխախոտագործները 94 հեկտարի յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին 33,6 ցենտներ բերք։ Ընդհանրապես բոլոր կոլտնտեսություններն էլ գերակատարեցին ծխախոտի հումքի հանձնման պլա-*

նային առաջադրանքները: Միայն պլանից դուրս հանձնված հումքից ստացվեց ավելի քան մեկ միլիոն ռուբլու լրացուցիչ եկամուտ:

Սակայն արդյունքներն այդքան մեծ չէին լինի, անգամ ագրոտեխնիկական բոլոր միջոցառումներն անթերի կիրառելու պայմաններում, եթե աշխատանքի կազմակերպման ու վարձատրման գործում չկիրառվեին այնպիսի առաջադիմական մեթոդներ ու ձևեր, ինչպիսիք են՝ անհատական գործավարձային սիստեմը, ծխախոտագործների նյութական շահագրգռվածության բարձրացումը: Երբ ծխախոտագործը համոզված է, որ իր աշխատանքի վարձատրության (ինչպես և լրացուցիչ վարձատրության) չափը պայմանավորված է մշակվող տարածությամբ, ստացված արտադրանքի քանակով ու որակով, ապա նա իրեն ամրացված տարածության վրա ամեն ինչ անում է, որպեսզի ավելին ստանա: Եվ, քանի որ նա պատասխանատու է նաև իր իսկ քաղած ու շարած ծխախոտի չորացման, հակավորման և հանձնման համար, ուստի նա փաստորեն վերահսկում է իր իսկ աշխատանքը, որպեսզի կանխվեն կորուստները, որակով լինի բերքը: Ահա թե ինչու Շամշադինում հաճախ կես-լուրջ, կես-կատակ ասում են. «Եթե ծխախոտագործին հայտնի է իր մշակելիք հողակտորը, ուրեմն մնում է միայն մտածել արդյունքները հաշվելու մասին»: Չնայած նյութական շահագրգռվածության ներկա սիստեմը կարոտ է հետագա բարելավման ու կատարելագործման, այնուամենայնիվ այն խիստ որոշիչ նշանակություն ունեցավ այդ կուլտուրայի եկամտաբերության բարձրացման գործում:

Անցյալ տնտեսական տարվա արդյունքներն ամփոփելիս, պարզորոշ տեսանելի են դառնում նաև մեր աշխատանքի թերությունները:

Պառավաքարի, Վերին Կարմիր Աղբյուրի և Ներքին Կարմիր Աղբյուրի կոլտնտեսությունները մշակում են 60-ական հեկտար ծխախոտի պլանտացիա: Երեքն էլ չնչին տարբերությամբ գտնվում են բնակլիմայական համանման պայմաններում: Բայց ահա նրանցից առաջինն ստացել է 203 տոննա համախառն բերք, երկրորդը՝ 192, երրորդը՝ 156 տոննա: Ինչո՞ւմն է բանը: Բանն այն է, որ բոլոր պարտիական կազմակերպությունները չէ, որ պատշաճ ուշադրություն են նվիրում այդ արժեքավոր կուլտուրայի մշակությանը, խորանում էկոնոմիկայի հարցերում: Դրա հետևանքը եղել է այն, որ նույնչափ հողատարածությունից, աշխատանքի նույն ծախսումներով պառավաքարցիները մոտ 90 հազարով ավելի դրամական եկամուտ են ստացել, քան Ներքին Կարմիր Աղբյուրի կոլտնտեսականները: Ահա և մեկ այլ օրինակ. Մովսեսի կոլտնտեսությունը տարիներ առաջ ո՛չ միայն շրջանում, այլև ռեսպուբլիկայում հայտնի էր որպես առաջատար ծխախոտագործական տնտեսություն: Բայց ահա երեք տարի է, ինչ ծխախոտի երբեմնի փառաբանված վարպետները բավարարվում են շատ համեստ արդյունքներով, նրանց մասին էլ չեն խոսում ու գրում: Այստեղ 90 հեկտար պլանտացիայից 1962 թ. ստացվել է 203 տոննա համախառն բերք կամ ամեն մի հեկտարից 22 ցենտներ: Նրանք իրենց մրցակից այգեձորցիներից (որոնց ծխախոտի հողատարածությունը միայն չորս հեկտարով է ավելի) 115 տոննայով պակաս բերք են ստացել: Ցածր բերքատվության պատճառները պետք է փնտրել միայն արտադրության ու աշխատանքի կազմակերպման մեջ:

Ծխախոտի ավելի բարձր եկամուտ ստանալու համար խիստ կարևոր նշանակություն ունի նաև հումքի որակը, այն, թե քրտնաջան աշխատանքով աճեցրած բերքը արդյոք ժամանակի՞ն է քաղվում ու շարվում, չորացվում, հակա-



վորվում ու հանձնվում մթերակայան: Մեզ մոտ կան շատ կոլտնտեսություններ, որոնք մեծ եկամուտ են ստանում որակի հաշվին: Օրինակ, Զորաթանի կոլտնտեսությունն անցած տարի ընդամենը 96 տոննա ծխախոտ է հանձնել պետությանը, ընդ որում 20 տոննան՝ երկրորդ տեսակի. մինչդեռ Ծաղկավանի կոլտնտեսությունը 136 տոննայից մթերակայան է ուղարկել միայն 800 կիլոգրամ երկրորդ տեսակի ծխախոտ: Եվ ստացվում է, որ երկու տնտեսություններում էլ, չնայած հավաքված բերքի մեծ տարբերությանը, ստացել են գրեթե նույնքան դրամական եկամուտ: Այնինչ ծաղկավանցիները կարող էին ստանալ մոտ 1,5 անգամ ավելի շատ եկամուտ, քան չորաթանցիները, եթե առաջինները չփչացնեին հավաքված հիանալի բերքը:

Միաժամանակ ծխախոտի ֆերմենտացիոն գործարանը հաճախ է պատճառ դառնում հումքի փչացման, արժեքազրկման: Անհրաժեշտ պահեստներ և մեծ տարողությամբ ֆերմենտացման խցիկներ չունենալու պատճառով գործարանը խիստ դանդաղ է ընդունում տնտեսությունների պատրաստի հումքը: Ուշ է սկսվում ֆերմենտացիան. կոլտնտեսություններում հումքի չորացման ու հակավորման գործն ավարտվում է նոյեմբեր ամսին, իսկ հումքի հանձնումը ձգձգվում է մինչև հաջորդ տարվա փետրվարը:

Այս և մի քանի այլ թերություններ, անշուշտ, չէին լինի, եթե պարտիայի նախկին շրջանային կոմիտեն ավելի մոտ կանգնած լիներ արտադրությանը և կոնկրետ ու պլանաչափ զբաղվեր գյուղատնտեսության ու նրա առանձին ճյուղերի զարգացման, ետ մնացող կոլտնտեսությունների էկոնոմիկայի հարցերով:

Այդ առումով տեղին ու ժամանակին էին ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի նշած միջոցառումները ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը վերակառուցելու մասին, որն, անկասկած, բարերար ազդեցություն կունենա արտադրության վրա: Կենսագործելով այդ որոշումը, կազմակերպվեց Շամշադինի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություն, գյուղական արտադրական պարտիական կոմիտե:

Առանց երկմտանքի կարելի է ասել, որ գյուղատնտեսության զարգացման հարցը դրված է ճիշտ ուղու վրա և ոչ մի տարակույս չի կարող լինել, որ արդեն իսկ ընթացիկ տարում այն կտա իր ցանկալի արդյունքը: Այլևս խոսք չի կարող լինել դիմազրկության, անպատասխանատվության, գործի նկատմամբ ձևական վերաբերմունքի մասին, քանի որ նորաստեղծ արտադրական ու պարտիական օրգանները հետապնդում են մի նպատակ՝ խելացի պլանավորել ու կազմակերպել արտադրությունը, ճիշտ օգտագործել ռեզերվներն ու հնարավորությունները, որպեսզի բոլոր տնտեսությունները դառնան առաջավոր:

Նոյեմբերյան պլենումից հետո անցած ժամանակաշրջանը մեր արտադրական վարչությունում եղել է լուրջ գործերի, նոր բնագծեր նվաճելու նախապատրաստման ժամանակաշրջան: Տնտեսություններն ամրապնդվել են գործիմաց, մասնագետ կադրերով, վերանայվել են սոցիալիստական պարտավորությունները, որոնց կենսագործումը մեծ ջանքեր է պահանջում, բայց միանգամայն ռեալ են: Մեր գյուղի մարդիկ, արձագանքելով Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության գյուղատնտեսության աշխատողների կոչին, խոստացել են յուրաքանչյուր հեկտարից ստանալ հացահատիկի 16,5, խաղողի 109, կարտոֆիլի 130, եգիպտացորենի հատիկի 39 ցենտներ բերք և պետությանը, 1962 թվականի համեմատությամբ, ավելի վաճառել 63,5 տոննա կաթ, 300

տոննա միս: Ծխախոտագործները պարտավորվել են 900 հեկտար պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից հավաքել 28,6 ցենտներ բերք: Այդ նշանակում է 2550 տոննա ծխախոտի հումք, որից սպասվում է հինգ միլիոն ռուբլու դրամական եկամուտ՝ վարչության կոլտնտեսությունների ամբողջ դրամական եկամուտների 70 տոկոսից ավելին:

Վարչության մասնագետներն ու պարտիական կոմիտեի աշխատողները գործնական օգնություն են ցույց տալիս տնտեսություններին առաջիկա գարնան գյուղատնտեսական աշխատանքները բարձր կազմակերպվածությամբ սկսելու և ընթացիկ տարին լավագույն ցուցանիշներով փակելու համար: Ավարտված է գյուղատնտեսական մեքենաների նորոգումը, նախապատրաստված է սերմացուն: Իսկ ծխախոտի ջերմոցներում արդեն ավարտվել է ցանքը, և բոլոր երաշխիքները կան, որ մեր ծխախոտագործներն այս տարի ևս բաց ճակատով դուրս կգան մրցությունից:

Մեր պարտիական կոմիտեի, սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև ծառացել են լուրջ խնդիրներ, որոնց իրականացման համար նրանցից պահանջվում է բարձրացնել կազմակերպական-գաղափարական աշխատանքի մակարդակը, ավելի մոտ լինել մարդկանց, հաղորդակից դառնալ նրանց մտորումներին ու հույզերին, թափանցել նրանցից յուրաքանչյուրի հոգեկան աշխարհը: Գտնել մարդու սրտի բանալին՝ այս է գործի հաջողության գրավականը:

Խ. ԹՈՒՄԱՆՅԱՆ
ՀԿՊ Շամշադինի գյուղական արտադրական
պարտիական կոմիտեի քարտուղար

## ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻՆ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ

Տնտեսության պարտիական ղեկավարման նախկին կառուցվածքը չէր համապատասխանում օրավուր աճող էկոնոմիկայի զարգացման մակարդակին և հնարավոր չէր այլևս գործիմացությամբ ու կոնկրետ զբաղվել արտադրության բոլոր ճյուղերով:

Եթե նախկինում գյուղական շրջանների էկոնոմիկայում գերակշռող մասը կազմում էր գյուղատնտեսական արտադրությունն իր սակավաթիվ ճյուղերով ու ցածր արտադրողականությամբ, ապա վերջին տասը տարում գյուղի դեմքն արմատապես փոխվեց: Հետևողականորեն հաղթահարելով գյուղատնտեսության ետ մնալը, տարեցտարի բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և խոշոր չափով ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Բազմաճյուղ դարձավ արտադրությունը, կառուցվեցին նաև արդյունաբերական շատ ձեռնարկություններ: Այդ բանում կարելի է համոզվել թեկուզ Հրազդանի շրջանի օրինակով:

Նախկինում այն հանդիսանում էր զուտ գյուղատնտեսական շրջան և, բնականաբար պարտիական սովետական օրգաններն իրենց ողջ ուշադրությունը հատկացնում էին միայն գյուղատնտեսությանը. այդ բնագավառի համար կադրերն ընտրվում էին ըստ մարդկանց գիտելիքների ու գյուղատնտեսական աշխատանքի փորձի:

Գյուղատնտեսության արագաթափ զարգացման հետ մեկտեղ շրջանում



առաջ եկան արդյունաբերական օջախներ: Գյումուշգէսի կառուցումից հետո սկսվեց Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանի, լեռնաքիմիական կոմբինատի, իսկ Լուսավան քաղաքում՝ երեք խոշոր գործարանների շինարարությունը: Դրանով իսկ մեծացան պարտշրջկոմի հոգսերը:

Հրազդանի շրջանն արդեն իրենից ներկայացնում էր տնտեսական-քաղաքական բարդ կոմպլեքս: 1962 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը կազմեց մոտ 7 միլիոն ռուբլի, իսկ շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը հասավ ավելի քան 8 մլն. ռուբլու: Պետական կապիտալ ներդրումների և արդյունաբերական ձեռնարկությունների ու տրանսպորտի միջոցների աճը պահանջում էր, որ պարտիական կազմակերպությունները մոտիկից ու պլանաչափ ղեկավարեին արտադրությունը, օգնեին ձեռնարկությունների ու կառույցների կոլեկտիվներին տնտեսական-տեխնիկական բարձր ցուցանիշներով կատարելու պետական առաջադրանքները: Միաժամանակ, ավելի մեծ ու դժվարին խնդիրներ էին առաջադրվում նաև գյուղատնտեսության աշխատողներին:

Հասկանալի պատճառներով պարտշրջկոմը, չնայած գործադրած բոլոր ջանքերին, ի վիճակի չէր ընդգրկելու արտադրության այդ երկու հիմնական ճյուղերը, խորիմացությամբ ու ժամանակին լուծելու հասունացած հարցերն ու պրոբլեմները:

Պարտիական օրգանների կազմակերպական նոր կառուցվածքը, որի հիմքում դրված է արտադրական սկզբունքը, անկասկած, հնարավորություն կտա ավելի կոնկրետ ու որակյալ ղեկավարել էկոնոմիկան: Գործի վերածելով ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները, ստեղծվեց Հրազդանի արդյունաբերական-արտադրական պարտիական կոմիտեն, որը միավորում է Սևանի, Հրազդանի և Աբովյանի շրջանների արդյունաբերական, շինարարական, տրանսպորտային ձեռնարկությունները՝ իրենց սկզբնական պարտիական կազմակերպություններով:

Ի՞նչ է ներկայացնում այսօր մեր արդյունաբերական գոտին: Արդյունաբերական 15 ձեռնարկություններ ընթացիկ տարում թողարկելու են 16 միլիոն ռուբլու համախառն արտադրանք. մեծ է կապիտալ շինարարության ծավալը՝ շինարարական հինգ վարչություններ 1963 թվականին կատարելու են ավելի քան 18 միլիոն ռուբլու շինարարական, մոնտաժային աշխատանքներ: Այստեղ կան չորս խոշոր հիդրոէլեկտրակայաններ, որոնք տալիս են ռեսպուբլիկայում արտադրվող էլեկտրաէներգիայի 70 տոկոսը, Երևան—Սևան երկաթգծի համարյա բոլոր կայարանները, վեց ավտոգրասենյակ, երկրաբանական-հետախուզական ութ պարտիաներ և այլն:

Մեր պարտիական կոնֆերանսում ընտրվել է փնջային պարտիական կոմիտե. այդ օրվանից անցել է երկու ամիս: Նախնական արդյունքները գոհացուցիչ են և խոստումնալից: Հենվելով սկզբնական պարտիական կազմակերպությունների ու ակտիվի վրա, մեր առաջին գործը եղավ խոր ու բազմակողմանի ուսումնասիրել արտադրության վիճակը, գործնական միջոցառումներ մշակել ու անմիջապես իրականացնել դրանք:

Արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ամենուրեք կան արտադրության զարգացման մեծ ռեզերվներ ու հնարավորություններ: Օրինակ, Լուսավանի գործիքաշինական գործարանը մշտապես կատարում է համախառն արտադրանքի պլանը, սակայն

չափազանց բարձր է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, շատ է խոտանը։ Լավ հիմքերի վրա չի գտնվում մետաղի ու անտառանյութի հաշվառման գործը։ Պարտիական վերահսկողության թուլության պատճառով երկար ժամանակ չէին լուծվում այդ կարևոր հարցերը։ Պարտիական կոմիտեի հանձնարարությամբ գործարանի կոմունիստները՝ մասնագետների հետ միասին ներկայումս գործնական քայլեր են կատարում ստեղծված դրությունը շտկելու և, հատկապես, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու ուղղությամբ։

Ամեն օր հասունանում են բազմապիսի նոր հարցեր, որոնք պահանջում են անհապաղ լուծում։

Ամենակարևորը ձեռնարկությունների գործունեության պլանավորումն է։ Հաճախ պլանավորող օրգանների և ժողտնտխորհի համապատասխան վարչությունների մեղքով ձեռնարկությունն աշխատում է ֆինանսական ծանր պայմաններում։ Օրինակ, Սևանի գործադիր սարքերի գործարանը 1961—62 թվականներին արտադրում էր ԻՄՏ—4 սարքերը, որոնք չեն կիրառվում ժողովրդական տնտեսության մեջ, թողարկված արտադրանքը չի սպառվում։ Այնինչ, գործարանի մեխանիկական պարկի և բարձրորակ կադրերի առկայության պայմաններում հնարավոր էր ավելի նոր ու կատարելագործված սարքեր պատրաստել։ Սակայն ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական և սարքաշինության արդյունաբերության վարչությունը այս հարցերով միայն վերջերս են սկսել զբաղվել՝ այն էլ պահանջելով գործարանից մի քանի օրվա ընթացքում վերակառուցել արտադրությունը՝ նոր ԿԴՌԻ սարքեր արտադրելու համար։ Կամ՝ երկու տարի է, ինչ Հրազդանի գորգագործական ֆաբրիկան արտադրում է նաև կարպետներ, մի բան, որ առևտրական կազմակերպությունները չեն ընդունում։ Այդ պատճառով էլ ձեռնարկության ղեկավարներն ավելի շատ զբաղված են պլանավորված արտադրանքը վաճառելու հոգսերով, քան թե արտադրության կազմակերպման, նոր տեխնիկայի արմատավորման, մարդկանց դաստիարակման հարցերով։

Երբ կոմիտեն մշակում էր միջոցառումներ, որոնք պետք է ապահովեին «Արզնի» հանքային ջրերի գործարանի 1963 թ. պետական առաջադրանքների կատարումը, պարզվեց, որ հանքային ջրի արտադրությունը կարելի է կրկնապատկել, եթե լուծվեն տարաների (շշերի) փոխադրման և պահեստավորման հարցերը։ Բանն այն է, որ դատարկ և լցված շշերը փոխադրվում են ավտոտրանսպորտի միջոցով։ Ինչ խոսք, որ անհնար է ավտոմեքենաներով օրվա ընթացքում Արզնու ապակետարայի գործարանից հանքային ջրերի գործարանը տեղափոխել ավելի քան հարյուր հազար դատարկ շիշ, իսկ այնտեղից էլ պատրաստի արտադրանքը տանել երկաթուղու էլարի կայարանը։ Դրա համար հարկավոր է կառուցել հանքային ջրերի գործարանից դեպի ապակետարայի գործարան տանող օդային գիծ (բրենսբերգ), որով մեծ չափով կավելանա արտադրանքը և վերջ կդրվի չարաշահումներին։

Շինարարական աշխատանքների ընթացիկ տարվա մեծ ծավալը պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է ավելի որակյալ ու գործնական ղեկավարություն ցույց տալ շինարարական վարչություններին, օգնել նրանց՝ հաջողությամբ կատարելու պետական առաջադրանքները։ Շինարարական ու բարեկարգման խոշոր աշխատանքներ են կատարվելու Հրազդան, Լուսավան և Աբովյան քաղաքներում, բանվորական ավաններում. ընթացիկ տարում կառուցվելու է 30 հազար քառակուսի մետր բնակելի տարածու-



թյուն։ Կառուցվում են Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, Լուսավանի գործիքաշինական, Սևանի ապակեթելերի, Աբովյանի մաթեմատիկական մեքենաների և Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանները։

Այդ նպատակով ամենից առաջ հարկավոր է արմատապես վերակառուցել պլանավորող և նախագծող կազմակերպությունների գործունեությունը, ինչպես դա պահանջում է ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը։ Ինչպե՞ս կարելի է խոսել շինարարական կազմակերպությունների համաչափ աշխատանքի ու պլանների անընդմեջ կատարման մասին, երբ 1963 թ. հունվարին մեր մի շարք կառույցներում տեխնիկական փաստաթղթերի ու նախահաշիվների բացակայության պատճառով փաստորեն գործ չի արվել։ Այսպես, մի՞թե անցյալ տարի «Հայարդշին նախագիծ» ինստիտուտը չէր կարող որոշել, թե Սևան քաղաքում բնակելի շենքերը քանի հարկից պետք է լինեն, մի բան, որ արվեց միայն նոր տարվա սկզբներին։ Նախագծող կազմակերպություններն անհիմն կերպով ուշացնում են նաև Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանի նոր կորպուսի, Աբովյանի մաթեմատիկական մեքենաների գործարանի, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի և շատ այլ օբյեկտների նախագծերը և նախահաշիվները։ Հաճախ դրանում մեղավոր են նաև այն գիտահետազոտական ինստիտուտները, որոնք նախագծային ինստիտուտներին ժամանակին չեն տալիս ելակետային տվյալներ։ Այս գործին թույլ է հսկում «Հայպետշինը», որտեղ հարցերը չափազանց դանդաղ են լուծվում։

Ահա մի քանի փաստ։ Քաղաքների գլխավոր հատակագծերի բացակայության պայմաններում առանձին օբյեկտների կառուցման գործում ստեղծվել է խառնաշփոթ վիճակ։ Աբովյան քաղաքում սկսված է բնակարանային և կոմունալ օբյեկտների շինարարությունը, սակայն մինչև հիմա դեռևս լուծված չեն ջրի և կոյուղու հիմնական մայրուղիների, կենտրոնական ջեռուցման հարցերը։ «Հայարդնախագիծ» ինստիտուտը, որը կազմում է Լուսավան քաղաքի գլխավոր հատակագիծը, քաղաքին ջուր մատակարարելու համար նախատեսում է օգտագործել Արզականի աղբյուրները, իսկ մի այլ նախագծող կազմակերպություն նախատեսել է այդ նույն աղբյուրների ջուրն օգտագործել Երևանի համար։ Անհասկանալի պատճառներով չեն լուծվում քաղաքաշինության հարցերը. շինարարական այդպիսի բարձր տեմպերի պայմաններում անհրաժեշտ է արագ ու օպերատիվ լուծել հարցերը, վերջ տալ քաշքշուկին։

Նախագծող ու պլանավորող կազմակերպությունների ոչ օպերատիվ աշխատանքն ավելի է խորացնում շինարարական կազմակերպությունների գործունեության մեջ առանց այն էլ տեղ գտած լուրջ թերությունները։ Մեր կարծիքով դրանցից ամենաէականն այն է, որ հաճախ, բավարարվելով գումարային առաջադրանքների կատարմամբ, հիմնական ֆոնդերը ժամանակին չեն իրացվում։ Քիչ չեն դեպքերը, երբ շինարարության տնտեսական ու պարտիական ղեկավարները հոգ տանելով միայն ֆինանսական պլանների կատարման մասին, ուշացնում կամ բոլորովին չեն կատարում բարեկարգման, կանաչապատման և այլ աշխատանքներ, այսինքն շինարարությունը չի կատարվում իր ամբողջ կոմպլեքսով։ Այսպես. Աթարբեկյանգէսշինը շինմոնտաժային աշխատանքների 1962 թվի պլանը կատարեց 105 տոկոսով, այդ թվում բնակարանային շինարարությունը՝ 117 տոկոսով։ Նախատեսված գումարը լրիվ իրացվել է։ Սակայն շահագործման հանձնված տասը շենքեր չեն բնակեցվում, քանի որ այդ նույն շինարարական վարչությունը ժամանակին չավարտեց դպրոցի, մանկապար-

տեղի, պոլիկլինիկայի, առևտրական ու հասարակական սննդի օբյեկտների շինարարությունը և միկրոշրջանի բարեկարգման աշխատանքները։

Այդ նույն շինարարական վարչության մեղքով ձախողվեց տնաշինական կոմբինատի, երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի, ավտոգարաժի, կաթսայատան և այլ օբյեկտների ժամանակին շահագործման հանձնելու գործը։ Նման փաստեր կան նաև Աբովյանի շինվարչությունում։ Անցյալ տարվա վերջերին ընդունված բնակելի մեծ շենքը մինչև հիմա չի բնակեցված, որովհետև շենքն ապահովված չէ ջրով, էլեկտրաէներգիայով, ջեռուցմամբ։

Այս օրինակները ցույց են տալիս, որ շինարարական աշխատանքների համախառն առաջադրանքների կատարումը չի կարող լրիվ բնութագրել գործերի իրական վիճակը։ Այն ավելի ցայտուն դրսևորվում է ենթակապալառու հատուկ շինարարական կազմակերպությունների գործունեության մեջ. օրինակ, «Պրոմվենտիլացիայի» (պետ Ստեփանով) և «Ջրարանսարքի» (պետ Կոխտիև) պատճառով ձգձգվեց Լուսավանի գործիքաշինական գործարանի չուգունի ձուլման կոմպլեքսի և Սևանի ապակեթելի գործարանի էլեկտրավառարանների ցեխի շահագործումը։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր շինարարական հրապարակներում իրենց կարողություններից 25—35 տոկոսով ցածր են օգտագործվում էքսկավատորները, քարտաշ մեքենաները, բուլդոզերները, վերամբարձ կռունկները. երկհերթ աշխատանք կազմակերպված չէ։

Շինարարության բախտը որոշող գործոններից մեկը շինարարական մեքենաների ու սարքավորումների ռացիոնալ օգտագործումն է. պարտիական կոմիտեն ինժեներների ու մասնագետների հետ մշակեց միջոցառումներ, որոնք կնպաստեն շինարարական բոլոր մեխանիզմների արտադրողականության բարձրացմանը։ Կարևորը սկզբնական պարտիական կազմակերպությունների կողմից դրա նկատմամբ ամենօրյա հսկողությունն է։

Վերջերս պարտիական կոմիտեի կազմած հանձնաժողովը ուսումնասիրեց կառուցվող օբյեկտների շինարարական աշխատանքների որակը, քանի որ հաճախ օբյեկտը շահագործման հանձնելուց հետո, մի քանի ամիս ստիպված են լինում վերացնել կիսատ գործերը, որի հետևանքով ծախսվում են ավելորդ միջոցներ և հետաձգվում են շահագործման հանձնելու ժամկետները։ Ստուգումները ցույց տվին, որ պարտիական կազմակերպություններում ստեղծված ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովները վատ են հսկում կատարվող աշխատանքի որակը։ Կոմիտեի հանձնարարությամբ շինարարական բոլոր պարտիական կազմակերպությունների ժողովներում քննարկվեց այդ հարցը։

Բոլոր բնագավառներում պետական առաջադրանքների կատարման բախտը որոշում են մարդիկ։ Պարտիական կոմիտեն ամսվա մեկ օրը հատկացրել է միջին ու ղեկավար կադրերի ուսուցմանը։ Այդ օրը արդյունաբերական ու շինարարական բոլոր կազմակերպություններում, հատուկ թեմատիկ պլանով անց են կացվում դասախոսություններ ու զրույցներ՝ նվիրված արդյունաբերության ու շինարարության էկոնոմիկայի հարցերին։ Բացի դրանից, սկզբնական պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից զբաղվել բանվորների որակավորումը բարձրացնելու, տեխնիկական ուսուցումը բարելավելու հարցերով, քանի որ մեզ մոտ արդյունաբերության ու շինարարության մեջ աշ-



խատող բանվորների գերակշռող մասը նախքան արտադրություն գալը ոչ մի մասնագիտություն չի ունեցել։

Արդյունաբերական արտադրական պարտիական կոմիտեի, գոտու սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև ծառացած են մեծ խնդիրներ, որոնց կատարումը պահանջում է ուժեղացնել պարտիական վերահսկողությունը արտադրության վրա, ճիշտ ընտրել, տեղաբաշխել ու դաստիարակել հրամանատարական կադրերը, բարձրացնել ամեն մի աշխատողի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Պարտիական կազմակերպական, գաղափարական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքը ենթարկելով հիմնականի՝ արտադրության հարցերի լուծմանը՝ մեր գոտու պարտիական կազմակերպությունները կապահովեն յոթնամյակի հինգերորդ տարվա խնդիրների հաջող կատարումը։

Մ. ԶՈՒՐԱԲՅԱՆ

Հրազդանի արդյունաբերական արտադրական
պարտիական կոմիտեի քարտուղար

## ԿԱՌՈՒՅՑԵԼ ԺԱՄԱՆԱԿԻՆ, ՈՐԱԿՈՎ ԵՎ ԷԺԱՆ

Ամենուրեք շինարարական հրապարակներ, վերամբարձ կռունկներ, քարտաշող մեքենաներ, բետոն խառնող ու խիճ կոտրող սարքավորումներ—ահա մեր օրերի Ալավերդին։ Յոթնամյակն է քայլում նրա կառույցներում. երկու հազար երեք հարյուր բազմազգ (հայ, ռուս, վրացի, հույն, ադրբեջանցի) շինարարներ, մոնտաժողներ, մեխանիզատորներ կառուցում են արդյունաբերական ձեռնարկություններ, բնակելի տներ, կուլտուրայի, առողջապահության և լուսավորության հիմնարկների շենքեր։ Այդ կառույցների ծավալը պատկերացնելու համար բավական է նշել, որ 1958 թվականին կապիտալ ներդրումների գումարը կազմել է մեկ միլիոն 153 հազար, իսկ 1962 թվականին՝ ավելի քան յոթ միլիոն ռուբլի։

Ալավերդին հարուստ է հանքային հանածոներով։ Այդ իսկ պատճառով կապիտալ ներդրումների հիմնական մասը օգտագործվում է հանքավայրերի հայտնաբերման և շահագործման հանձնելու, գունավոր մետաղների և քիմիական արդյունաբերության զարգացման, հրակայուն նյութերի արտադրության ընդարձակման նպատակով։

Արագ վերակառուցվում են պղնձաքիմիական կոմբինատի մի շարք ցեխեր, կառուցվում են նորերը։ Այստեղ շինարարական չորս տեղամասերի երեսուներեք օբյեկտներում աշխատում են տրեստի փորձված բանվորներ, մոնտաժողներ, ինժեներներ ու տեխնիկներ, որոնք ջանում են ժամանակին շահագործման հանձնել արդյունաբերական ձեռնարկությունները։

Պղնձաքիմիական կոմբինատի էլեկտրոլիզի ցեխի երրորդ հերթի կառուցման շինարարությունը հիմնականում ավարտվեց անցյալ տարվա սեպտեմբերի վերջերին։ Հարկավոր էր տեղադրել երկաթբետոնե 230 տարալուծիչ ավազաններ (յուրաքանչյուր սեկցիա քսան տոննա ծանրությամբ) ու համապատասխան սարքավորումներ։ Ավազանների կոնստրուկցիաների մեծ մասն արդեն պատրաստ էր, սակայն տեղադրելու համար կամրջային կռունկներ դեռևս չկային։ Դրանց ստանալը դեռևս ձգձգվում էր, ձգձգվում էր նաև ավազանների տեղադրումը։ Ախթալայի տրեստի և շինմոնտաժ տրեստի (Երևանի)

Ալավերդու տեղամասի պարտիական կազմակերպությունները, պղնձաքիմիական կոմբինատի ղեկավարությունը մտահոգվեցին գործն արագացնելու հարցով։ Սոցիալիստական մրցություն ծավալելու և անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով դրամական պարգևատրման խոստումով հանդես եկավ կոմբինատի դիրեկցիան։ Մոնտաժողները մի քանի օրվա ընթացքում ստեղծեցին հարմարանքներ և մեկ ու կես ամսում տեղադրեցին տարրալուծիչ ավազաններն ու սարքավորումները։

Նույնպիսի եռանդով են աշխատում նաև պղնձաքիմիական կոմբինատի մյուս օբյեկտների կառուցողներն ու մոնտաժողները։ Արդեն ընդլայնվել են պղնձարջասպի ցեխը, կոնվերտորային բաժանմունքը, մոնտաժվել է հարյուր մետր բարձրություն ունեցող ծխնելույզը։ Նոր ու վերակառուցված ցեխերը շահագործման հանձնելուց հետո պղնձաքիմիական կոմբինատն իր արտադրական կարողությամբ ավելի հզոր կլինի և հագեցված նորագույն տեխնիկայով։ Յոթնամյակի վերջին տարում, 1958 թվականի համեմատությամբ, նրա արտադրանքի թողարկումը կավելանա մի քանի անգամ։ Սինթետիկ եղանակով կվերամշակվի քաղաքը ծածկող ծուխը։

Յոթնամյակի կառույցներից արդեն շահագործման են հանձնվել Այրումի պահածոների նոր գործարանը (տարեկան երեսուն միլիոն պայմանական տուփ արտադրելու կարողությամբ), Ալավերդու գորգագործական ֆաբրիկան և արտադրական այլ օբյեկտներ։ Կառուցող բանվորները, մոնտաժողներն ու մասնագետներն ամեն ջանք գործադրում են, որպեսզի եկող տարի շահագործման հանձնվի նաև կարևորագույն արտադրական ձեռնարկություններից մեկը՝ Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկան։

Շուտով կավարտվի Դեբետ և Փամբակ գետերի ափերով ձգվող ասֆալտապատ ճանապարհի կառուցումը։ Այսուհետև ավտոմեքենայով Ալավերդուց Կիրովական կարելի է ուղևորվել Դեբետի կիրճով՝ ավելի կարճ ճանապարհով։

Ծավալված է նաև բնակարանային և աշխատավորության կուլտ-կենցաղային կարիքները բավարարող օբյեկտների շինարարությունը։ Յոթնամյակի չորս տարում միայն շինարարության տրեստը կառուցել և շահագործման է հանձնել 1805 բնակարան՝ 47569 քառակուսի մետր մակերեսով։ Միայն Ալավերդի քաղաքում կառուցվել է քսան տուն (ավելի քան յոթ հարյուր հիսուն բնակարանով), ծածկած շուկա, երկաթգծի նոր կայարանի շենք։ Գեղատեսիլ Ախթալայում ստեղծվել է նոր, սոցիալիստական տիպի բանվորական ավան՝ հազար բնակչի համար։ Կառուցումներն այստեղ շարունակվում են։ Մոտ ապագայում այն ավելի կընդարձակվի և ավանը կունենա իր բաղնիքը, ճաշարանը, դպրոցը, բուժարանը, խանութները և այլ հարմարություններ։

Շինարարական հրապարակներում, նորակառույցներում գործերն ավելի հաջող կգնային, եթե կառուցող կազմակերպությունների ղեկավարներն ավելի արդյունավետ օգտագործեին իրենց ներքին ռեզերվներն ու հնարավորությունները։ Տրեստի առաջին շինվարչությունը, որը գլխավորապես զբաղվում է պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցմամբ, անցյալ տարի պետական առաջադրանքը կատարեց միայն 85,3 տոկոսով կամ հատկացված գումարից չկարողացավ օգտագործել 735 հազար ռուբլի։ Պլանով նախատեսված տասնութ օբյեկտներից շահագործման չհանձնվեցին տասներկուսը, այդ թվում՝ ծծմբաթթվի ցեխը, թրծման ու էլեկտրահաղորդման փորձնական վառարանը, շրջանային ենթակայանը և այլն։ Շինարարական կազմակերպությունները



փորձում են այդ բանը բացատրել օբյեկտիվ պատճառներով։ Բայց, մեր կարծիքով, հիմնական պատճառն այն է, որ շինարարական կազմակերպությունները, պլանավորող, նախագծող և մատակարարող հիմնարկները չեն գործում միասնական, աշխատանքում չեն ցուցաբերում ձեռներեցություն։

Հայտնի է, որ կապիտալ ներդրումների խնայումն ապահովվում է հենց նախագծերի կազմման ժամանակ։ Դրա համար էլ, երբ որոշվում է նախագծեր կազմելու հարցը, նախօրոք այն պետք է հիմնավորվի տեխնիկա-տնտեսապես։ Ցավոք սրտի այս կարգը հաճախ խախտվում է։ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի անցյալ տարվա նոյեմբերյան պլենումը նշեց այն աղաղակող թերությունները, որ կան այս գործում։ Մեզ մոտ ևս հաճախ շենքի, նույնիսկ արդյունաբերական կարևոր օբյեկտի կառուցումն սկսում են, մինչդեռ նախագծերն ու նախահաշիվները վերջնականապես կազմված չեն։

Ընդունված է, որ մինչև շենքի կառուցումն սկսելը հարկավոր է պատրաստել ճանապարհները՝ շինանյութեր փոխադրելու համար, անցկացնել ջրմուղ, էլեկտրաէներգիայի հաղորդման և հեռախոսային կաբելներ։ Այնինչ շինարարներն ու պատվիրատուները շենքի կառուցումն սկսելուց կամ ավարտելուց հետո են միայն մտահոգվում այդ ամենով, որի հետևանքով ավելորդ ժամանակ ու միջոցներ են ծախսվում։ Անցյալ տարի «Արմգիպրոցվետմետ»-ը ուշացումով ուղարկեց կոմբինատի մի շարք օբյեկտների, այդ թվում № 9 ենթակայանի, թթվամուղի, բովախառնման բաժանմունքի, օդափակ և չեզոքացման կայանների նախագծերն ու նախահաշիվները։ Հաճախ միայն շենքը ավարտելուց հետո են մտածում էլեկտրալարերն անցկացնելու, սանիտարական-տեխնիկական մոնտաժ կատարելու մասին։

Կամ վերցնենք շինանյութերի մատակարարման, նոր կառուցված արդյունաբերական ձեռնարկությունների սարքավորումների հայթայթման ու տեղադրման հարցը։ Հաճախ կառուցումները կանգ են առնում շինանյութերի, մասնավորապես տեղական շինանյութերի պակասի պատճառով։ Դրա հետևանքով մարդիկ պարապուրդ են տալիս, գործը առաջ չի գնում, պետությունը վնասներ է կրում։

Պղնձաքիմիական կոմբինատի քիմիական մաքրման ցեխի սարքավորման, մեխանիկական ֆիլտրների, ծծմբաթթվի ցեխի կոնտակտային ապարատների և անտիգիմիտային սառնարանների հայտերը վաղուց են տրված պենզքիմմաշ գործարանին։ Վերը նշված օբյեկտների շինարարությունը ավարտվելուց հետո ձգձգվեց սարքավորումների մատակարարումն ու տեղադրումը, որի հետևանքով այդ ցեխերն ու բաժանմունքները ժամանակին չգործարկվեցին։

ՍՄԿՊ Ծրագրում նշված է, որ կապիտալ շինարարության հսկայական մասշտաբները պահանջում են շինարարական ինդուստրիայի արագ զարգացում։ Առանց աշխատատար պրոցեսների մեքենայացման, պանելային ու հավաքովի շենքերի կառուցման անցնելու հնարավոր չէ կապիտալ ներդրումների մեծ ծրագիրն իրագործել։ Մինչդեռ Ալավերդու հանգույցի շինարարական կազմակերպությունների բազմաթիվ կառույցներում դեռևս ցածր է մեքենայացման մակարդակը, իսկ եղած մեխանիզմներն ու սարքավորումներն օգտագործվում են անբավարար, պակասում է բանվորական ուժը։

Իհարկե, այս թերություններն ավելի քիչ կլինեին և շինարարության թափն՝ ավելի արագ, եթե նորակառույցների պարտիական կազմակերպությունները ավելի խոր կերպով զբաղվեին շինարարության հարցերով, ջանային ստեղծել

մշտական որակյալ բանվորական կադրեր՝ մեքենաները ռացիոնալ, շինանյութերը խնայողաբար օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։

Այս տարի Ալավերդու արդյունաբերական արտադրական գոտում կատարվելու է մոտ ինը միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն, այսինքն՝ անցյալ տարվա համեմատությամբ, ավելանալու է 30 տոկոսով։ Ուժեղ թափով շարունակվելու է պղնձաքիմիական կոմբինատի մի շարք ցեխերի վերակառուցումը և Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկայի, Ալավերդու հացի գործարանի և այլ արդյունաբերական օբյեկտների կառուցումը։ Նախապատրաստական աշխատանքներ են տարվելու առաջիկա տարիներին Սանահինի հարթավայրում տասներեք հազար բնակչի համար բանվորական ավան կառուցելու, որը լավագույն բնակավայրերի տիպն է լինելու։

Կառուցվելու են մանկապարտեզների, մանկամսուրների, առողջապահական հիմնարկների ու դպրոցների շենքեր, բազմաթիվ բնակելի տներ։ Ալավերդում կառուցվում է լայնէկրան կինո թատրոնի շենք՝ 600 տեղանոց հանդիսասրահով։

Կապիտալ շինարարության այս ծավալուն պլանը հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է, որ թե՛ տեղական պարտիական ու շինարարական կազմակերպությունները, թե՛ ռեսպուբլիկական կառուցող ու պլանային օրգանները ավելի օպերատիվ վարեն այդ գործը։

Ամենակարևորը շինարարության ինդուստրացման և շինանյութերի արտադրությունն ավելացնելու հարցն է։ Ախթալայի շինարարական տրեստի շինարարական իրերի արտադրության կոմբինատը կազմակերպվել է տարիներ առաջ, երբ կապիտալ ներդրումների ծավալը, ներկայիս համեմատությամբ, շատ փոքր էր։ Այժմ երկաթբետոնե կառուցվածքների և ատաղձագործական ցեխերի ծանրաբեռնվածությունը գերազանցում է դրանց նախագծային հզորությունը։ Կոմբինատի երկաթբետոնե կառուցվածքների ցեխը կարող է բավարարել նորակառույցների պահանջի միայն 50—60 տոկոսը։ Հետևաբար, անհրաժեշտ է ընդարձակել շինարարական իրերի արտադրության կոմբինատի կարողությունը։

Կապիտալ ներդրումների ծավալի մեծացումը պահանջում է ավելացնել նաև բանվորական ուժը։ Ավելի մեծ ուշադրություն պետք է հատկացնել շինարարական ինդուստրացմանը և աշխատատար պրոցեսների մեքենայացմանը, քանի որ դրա շնորհիվ գործն ավելի արագ է առաջ գնում, բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, իջնում ինքնարժեքը։

Շինարարության պլանների հաջող կատարումը պայմանավորված է նաև ճարտարապետական-տեխնիկական որակյալ կադրերով։ Յուրաքանչյուր տարի մեր երկրի բարձրագույն դպրոցները տալիս են հարյուրավոր ու հազարավոր մասնագետներ, բայց, ցավոք սրտի, նրանց աննշան մասն է գնում արտադրություն։ Նրանք գերադասում են մնալ մեծ քաղաքներում, զբաղվել աննշան, ոչ կարևոր գործերով, քան աշխատել անմիջականորեն նորակառույցներում. իսկ այդ գործին մեծ վնաս է հասցնում, որովհետև տեխնիկապես կիսագրագետ տասնապետներն ու աշխղեկներն այսօր արդեն անկարող են բավարարել մեր ներկա պահանջները։ Մեր ասածը հիմնավորելու համար բերենք մեկ օրինակ։ Ալավերդու շրջանային ենթակայանը կառուցում է կավէլեկտրամոնտաժ տրեստը։ Արդեն մի քանի տարի է, որ որակյալ մասնագետներ չլինելու պատճառով



ձգձգվում են նրա կառուցումն ու մոնտաժը։ Անցյալ տարի եկան նոր մարդիկ, որոնք խոտանեցին նախորդների կատարածը, որի մի մասը չէր համապատասխանում նախագծերին ու սխալ էր։ Կարծում ենք, որ շինարարական կազմակերպությունները մասնագետներին ոչ թե պետք է կենտրոնացնեն ապարատներում, այլ նրանց մի մասն ուղարկեն անմիջականորեն նորակառույցները՝ գործը ղեկավարելու համար։

Որպեսզի հաջողությամբ կատարվի ընթացիկ տարվա շինարարության պլանը, մեր կարծիքով, նպատակահարմար է ավելի համակենտրոնացնել կապիտալ ներդրումները, նյութական միջոցներն ու բանվորական ուժը՝ արդեն իսկ կառուցվող օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելու համար։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումը, քննության առնելով ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացման և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարության հարցը, անհրաժեշտ գտավ անցնել պարտիայի ղեկավար օրգանների կառուցման արտադրական սկզբունքի՝ վարից վեր։ Արտադրական սկզբունքով պարտիական օրգանների կառուցումը հնարավորություն կտա պարտիական կազմակերպությունների բոլոր ուժերը կենտրոնացնելու արտադրության զարգացման գլխավոր խնդիրների լուծման վրա, այդ նպատակին ուղղելու աշխատավորության ջանքերը։

Ստեղծվել է Ալավերդու արդյունաբերական արտադրական փնջային կոմիտե, որին ենթակա են Ալավերդու և Նոյեմբերյանի նախկին շրջանների արդյունաբերական ձեռնարկությունների և նորակառույցների պարտիական կազմակերպությունները։ Հանգույցում կան ութ շինարարական սկզբնական պարտիական կազմակերպություններ՝ 160 կոմունիստներով. նորակառույցներում աշխատում են 350 կոմերիտականներ։ Թե՛ պարտիական, թե՛ կոմերիտական կազմակերպությունները, բոլոր կոմունիստների ու կոմերիտականների, բոլոր շինարարների ջանքերը պետք է ուղղեն մի նպատակի՝ աշխատել ազնվորեն, կառուցել որակով ու էժան, հաջողությամբ կատարել յոթնամյակի հինգերորդ տարվա պլանները։

Ն. ԹՈՐՈՄԱՆՅԱՆ
ՀԿՊ Ալավերդու արդյունաբերական-
արտադրական կոմիտեի քարտուղար

## ԱՄԵՆ ՄԻ ՂԵԿԱՎԱՐ՝ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏ

Իսկական կազմակերպիչը, ղեկավարը նա է, ով մշտապես և անմիջականորեն զբաղվում է աշխատավորների գաղափարական-քաղաքական դաստիարակությամբ և իր գործունեության մեջ լայնորեն օգտագործում մասսաներին համոզելու, գաղափարապես նրանց վրա ներգործելու բազմապիսի միջոցները։

ՀԿՊ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի շրջկոմը ջանում է, որ շրջանի բոլոր ղեկավար աշխատողներն ակտիվ մասնակցեն գաղափարական կյանքին, սերտորեն զուգորդեն կազմակերպական ու պրոպագանդիստական գործունեությունը։ Այժմ շրջանի պարտիական, սովետական և տնտեսական բնագավառների բազմաթիվ ղեկավար աշխատողներ, արտադրության հրամանատարներ ագիտացիոն-պրոպագանդիստական արդյունավետ գործ են կատարում աշխատավորների շրջանում. պարբերաբար հանդես են գալիս քաղաքական զեկուցումներով, պարզաբանում պարտիայի քաղաքականության, տըն-

տեսական ու կուլտուրական շինարարության, միջազգային դրության հրատապ ու կենսական հարցերը։

Պարտիական լուսավորության ցանցի 464 քաղխմբակների և տեսական սեմինարների ղեկավարների մեծ մասը շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, ուսումնական հաստատությունների դիրեկտորներ են, մինիստրներ, գերատեսչությունների ու հիմնարկների պետեր, ինժեներա-տեխնիկական ղեկավար աշխատողներ և այլն։ Սովետական-տնտեսական ակտիվի լայն ներգրավումը պրոպագանդիստական աշխատանքում չափազանց բարերար է ազդել քաղաքական լուսավորության սիստեմի վրա, նկատելիորեն բարձրացել է պարապմունքների իդեական մակարդակը, ուսումնասիրվող թեմաներն այժմ ավելի սերտորեն են առնչվում տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ, պրակտիկ խնդիրների հետ։ Լավ պրոպագանդիստ է ամբարձիչ-տրանսպորտային սարքավորումների գործարանի դիրեկտոր Գ. Խաչատրյանը, որը ղեկավարում է գործարանի արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարը. պարապմունքներն անցնում են աշխույժ ու բովանդակալից, թեմաների քննարկմանը մասնակցում են բոլոր ունկնդիրները։ Իրենց պարտականությունները բարեխիղճ են կատարում առողջապահության մինիստրի տեղակալ Ն. Աղաջանյանը, ֆինանսների մինիստրի տեղակալ Է. Սարգսյանը, անտառային, թղթի և փայտամշակման արդյունաբերության բանվորների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեի նախագահ Հ. Նալբանդյանը, № 17 դպրոցի դիրեկտոր Ջ. Գրիգորյանը և շատ ուրիշներ։

Արդեն չորրորդ տարին է, որ № 7 բաներիտ դպրոցի դիրեկտոր Ս. Քալանթարյանը Երևանի շոգեքարշային դեպոյում ղեկավարում է ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող քաղխմբակը։ Նա ունի պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ և ամեն կերպ ձգտում է խոր, միաժամանակ մատչելի ձևով իր ունկնդիրներին պարզաբանել կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, նպատակամղելով նրանց ջանքերը՝ կատարելու և գերակատարելու արտադրական պլանները։ Շոգեքարշայինները սիրով են մասնակցում պարապմունքներին, մեծ հետաքրքրություն հանդես բերում քաղաքական հարցերի նկատմամբ։ Բացի այդ, ընկ. Քալանթարյանը դեպոյի կոլեկտիվում պարբերաբար դասախոսություններ է կարդում ինչպես քաղաքական թեմաներով, այնպես էլ գրականության, պատմության հարցերի շուրջ։

Հարյուրավոր պարտիական ու սովետական ակտիվիստներ ամեն օր զրույցներ են կազմակերպում ձեռնարկություններում, կուլտուրայի տներում, ագիտկետներում։ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրությունների նախապատրաստման օրերին ագիտատորների կազմը նորացվեց ու համալրվեց տնտեսավարների, արտադրության այնպիսի հրամանատարների հաշվին, որոնք տեսականորեն պատրաստված են և ունեն համոզելու, գաղափարապես ներգործելու ձիրք։

Օգտավետ գործ են կատարում պարտշրջկոմին առընթեր զեկուցողների և դասախոսական խմբերը, որոնցում ներգրավված են շրջանի պարտիական ու սովետական ակտիվը, բարձրագույն ուսումնական հաստատությունների բազմաթիվ դասախոսներ։ Օրացուցային պլանների համաձայն ամիսը մեկ-երկու անգամ նրանք պարտիական լուսավորության ցանցի ունկնդիրների և աշխատավորների համար զեկուցումներ ու դասախոսություններ են կարդում շրջանի



հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, ակումբներում, ագիտացիոն կետերում։ Միայն մեկ տարում կարդացվել է շուրջ 2400 զեկուցում ու դասախոսություն։ Երբ խոսում ենք ելույթների մասին, ապա նկատի ունենք ոչ միայն դրանց քանակը, այլև, առաջին հերթին, դրանց որակական կողմը՝ ունկնդիրների վրա բանավոր խոսքի թողած ազդեցությունը։ Գոհունակությամբ պետք է նշել, որ այդ ուղղությամբ վերջին շրջանում զգալի տեղաշարժ է կատարվել։

Առանձնապես պետք է նշել դասախոսական խմբի անդամներ Տ. Ալեքսանյանի, Ջ. Գրիգորյանի, Կ. Բոստանջյանի, Վ. Ներկարարյանի, Ե. Ադամյանի, Տ. Վարդումյանի, Դ. Դավթյանի, Տ. Սահակյանի և ուրիշների բարձրորակ դասախոսությունները, որոնց ունկնդրում են մեծ հետաքրքրությամբ։ Աշխատավորները բազմաթիվ ու բազմապիսի հարցեր են տալիս։ Դասախոսները չեն փորձում շրջանցել նման հարցերը, տալիս են դրանց ուղղակի և ճիշտ պատասխաններ, պարզաբանում այս կամ այն հասարակական ու կենսական երևույթների պատճառները, ուղղում ոչ ճիշտ կարծիքներն ու տեսակետները։

Արդյունավետ գործ են անում շրջանի 23 խոշոր հիմնարկներում, արդյունաբերական ձեռնարկություններում և կառույցներում ստեղծված դասախոսական խմբերը, ուր ներգրավված են երկու հարյուր պարտիական, տնտեսական աշխատողներ, ինժեներներ, տնտեսագետներ։ Դասախոսական խմբերի անդամները ցեխերում ու աշխատամասերում սիստեմատիկաբար զրույցներ ու զեկուցումներ են անցկացնում տեսական-քաղաքական, գիտա-տեխնիկական թեմաների շուրջ։ Առանձնապես լավ են գործում Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի, կուլտուրայի մինիստրության, էլեկտրատեխնիկական գործարանի, գինու կոմբինատի սկզբնական պարտիական կազմակերպություններին առընթեր լեկտորիումները։

Տեղերում հասարակական հիմունքներով գործող 22 քաղաքական լուսավորության կաբինետներում որպես կոնսուլտանտներ, մեթոդիստներ աշխատում են բազմաթիվ ղեկավար ընկերներ։ Չորրորդ տարին է, ինչ պարտշրջկոմին առընթեր կազմակերպված և հաջող գործում է մեթոդական խորհուրդը (ղեկավար՝ դոկտոր-պրոֆեսոր Ջ. Գրիգորյան), որը մեծ օգնություն է ցույց տալիս պրոպագանդիստներին՝ նրանց համար կազմակերպվում են սեմինար պարապմունքներ, մեթոդական-հրահանգչական խորհրդակցություններ. արժեքավորն այն է, որ խորհուրդը ուսումնասիրում, ընդհանրացնում ու տարածում է լավագույն պրոպագանդիստների փորձը։

ՍՄԿՊ XXII համագումարից հետո մեզ մոտ նկատելիորեն աշխուժացել և ընդլայնվել են պարտիական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական գործունեության շրջանակները։ Պարզ է, որ այդ չի կարելի անել միայն պարտշրջկոմի հաստիքային աշխատակիցների ուժերով։ Ինչպես վերևում ասվեց, այդ գործում մենք լայնորեն ներգրավում ենք ակտիվին, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողներին։ Բայց դրանով չի սպառվում մեր գործունեությունը։ Ագիտացիոն-պրոպագանդիստական, կուլտուրական-դաստիարակչական աշխատանքը կազմակերպելիս մենք հենվում ենք նաև շրջկոմի պլենումի անդամների, շրջանային ու քաղաքային սովետների դեպուտատների, շրջկոմի արտահաստիքային հրահանգիչների, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների վրա։ Նրանք օգնում են մեզ ժամանակին բացահայտելու և շտկելու աշխատանքում եղած թերու-

թյունները, սխալները, տեղերում անցկացնելու այս կամ այն հասարակական-քաղաքական, կուլտուրական միջոցառումները, ակտիվացնելու սկզբնական պարտկազմակերպությունների, կոմունիստների գործունեությունը։

Այդ առումով արժե նշել շրջկոմի արտահաստիքային դպրոցական բաժնի օգտավետ աշխատանքը (բաժնի վարիչ Ս. Քալանթարյան, հրահանգիչներ՝ Գ. Հովհաննիսյան, Ս. Հովհաննիսյան, Վ. Եղիազարյան), որն իր շուրջն է համախմբել փորձված, լավագույն շատ մանկավարժների։ Բաժնի աշխատակիցները հաճախակի լինում են շրջանի դպրոցներում ու գործնական օգնություն ցույց տալիս ուսուցչական կոլեկտիվներին՝ բարելավելու ուսումնա-դաստիարակչական աշխատանքները։ Արտահաստիքային աշխատողների նախաձեռնությամբ հանգամանորեն ուսումնասիրվեց ուսումնա-դաստիարակչական աշխատանքի վիճակը շրջանի բանվոր երիտասարդության դպրոցներում։ Շրջկոմը, քննության առնելով վերոհիշյալ հարցը, մշակեց գործին օգնող միջոցառումներ։ Բայց դրանով նրանք իրենց գործը չհամարեցին ավարտված. նրանք օգնեցին բաներիտ դպրոցների սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ հետևողականորեն կենսագործելու պարտշրջկոմի վերոհիշյալ որոշումը։

Արտահաստիքային բաժինն ուսումնասիրել է նաև պրոֆտեխնիկական № 2 ուսումնարանի, ինչպես նաև հանրակրթական № 88 դպրոցում հայոց լեզվի ու մաթեմատիկայի դասավանդման վիճակը։ Դրությունն այդ դպրոցներում փոխվել է դեպի լավը։ Բաժինն օգնել է պրոֆտեխնիկական № 1 ուսումնարանի պարտկազմակերպությանը և մանկավարժական կոլեկտիվին՝ բարելավելու ուսման որակը և սաների դաստիարակության գործը։

Իրենց գործունեության մեջ հենվելով ակտիվի վրա, միաժամանակ շրջանի պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն են հատկացնում ղեկավար կադրերի տեսական գիտելիքների հարստացմանը։ Դա ակտուալ, կարևոր հարց է։ Վերջին տարիներին պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողների կազմը մեծ չափով համալրվել է արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետներով։ Նրանք մեծ մասամբ եռանդուն, արտադրությանը քաջատեղյակ մարդիկ են։ Բայց չի կարելի մոռանալ, որ ղեկավար աշխատանքի անցած ընկերներից շատերը չունեն տեսական անհրաժեշտ պատրաստականություն։

Որպեսզի ղեկավար կադրերը խորապես տիրապետեն մարքսիզմ-լենինիզմին, լավ ըմբռնեն պարտիայի քաղաքականությունը և այն ստեղծագործաբար կիրառեն պրակտիկայում, պարտշրջկոմն իրականացրել է մի շարք միջոցառումներ։

Արդեն հինգերորդ տարին է, ինչ գործում է արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարը (ղեկավար Վ. Ներկարարյան), որին մասնակցում են շրջանի արդյունաբերական ու տրանսպորտի ձեռնարկությունների շինարարական օբյեկտների տնտեսական ղեկավար աշխատողներ, պարտիական կազմակերպությունների քարտուղարներ՝ թվով 180 հոգի։ Սեմինարի մասնակիցների մեծ մասը խնամքով և ուշի-ուշով մշակում է հանձնարարված թեմաները, այն առնչելով իրենց ձեռնարկությունների արտադրական գործունեության հետ։

Մշտական գործող այս սեմինարում պրակտիկա է դարձել տեսական կոնֆերանսները և ռեֆերատների քննարկումը. հաճախ տեղի են ունենում մտքերի սուր բախումներ, բուռն վիճաբանություններ քննարկվող թեմաների շուրջը։



Առանձնապես մեծ արդյունք են տվել «Հասարակական հարաբերությունների զարգացումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում», «ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները և տնտեսավարների խնդիրները», «Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է» թեմաների կոլեկտիվ քննարկումները։

Վերջերս անցկացվեց տեսական կոնֆերանս, որի թեման էր «Արդյունաբերական ձեռնարկությունների նյութատեխնիկական մատակարարումը և ռիթմիկ գործունեությունը»։ Սեմինարի ղեկավար Վ. Ներկարարյանի ներածական խոսքից հետո հանձնարարվեց նրա մասնակիցներին՝ ուսումնասիրել վերոհիշյալ թեման և նախապատրաստվել տեսական կոնֆերանսին։ Նախօրոք մշակվեց կոնֆերանսի պլանը, շրջկոմի քաղլուսկաբինետում առանձնացվեց համապատասխան գրականություն, կազմակերպվեցին կոնսուլտացիաներ։ Այնուհետև հրավիրվեց կոնֆերանս, ուր զեկուցումներով հանդես եկան հաստոցանորմալ գործարանի գլխավոր հաշվապահ Վ. Թումանյանը, ամբարձիչ-տրանսպորտային սարքավորումների գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Խ. Համբարձումյանը, ասֆալտի գործարանի գլխավոր ինժեներ Ե. Աթաբեկյանը, մսի կոմբինատի գլխավոր ինժեներ Թ. Փեփելյանը, Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի կապի պետ Ա. Գասպարյանը, ստանկոնորմալ գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Գ. Պետրոսյանը։

Սակայն մեր գործունեության մեջ դեռևս կան թերություններ, պակասություններ։ Ցավոք սրտի, դեռ ունենք առանձին ղեկավար աշխատողներ, որոնք ակտիվ չեն մասնակցում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործին, թերագնահատում են գաղափարական աշխատանքը, նրա դերն ու նշանակությունը արտադրական հաջողությունների ապահովման գործում։ Նրանք մոռանում են, որ ամեն մի ղեկավար պատասխանատվություն է կրում ո՛չ միայն արտադրական պլանների կատարման, այլև կոլեկտիվի դաստիարակության համար։

Ուսումնասիրությունից պարզվեց, օրինակ, որ Երևանի ջերմաէլեկտրակայանի ղեկավար աշխատողներից և ոչ մեկը, ինչպես և շինարարության պետ ընկ. Սարգսյանը պրոպագանդիստական ոչ մի աշխատանք չեն կատարում, զրույցներով ու զեկուցումներով հանդես չեն գալիս շինարարների առջև։ Իսկ ալրաղաց կոմբինատի դիրեկտոր Ս. Հովհաննիսյանը և տնայնագործական կոմբինատի դիրեկտոր Մ. Թերզյանը հրաժարվում են աշխատել որպես պրոպագանդիստ։

Պարտադիր չէ, որ ղեկավար գործիչն անպայման հանդես գա զեկուցմամբ կամ դասախոսությամբ, քաղխմբակ ղեկավարի։ Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունի նրա մասնակցությունը հարց ու պատասխանի երեկոներին, կարմիր անկյուններում, ակումբում, աշխատատեղերում, հանրակացարանում և բանվորների տներում զրույցների կազմակերպմանը։

Ա. ԶԱՔԱՐՅԱՆ
ՀԿՊ Օրջոնիկիձեի շրջկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ

# ԿԻՆՈՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԱՍԱՎԱՆԴՈՒՄԸ

«Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում ուսումնական պրոցեսի կինոֆիկացումն ուժեղացնելու մասին» ՍՍՌՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության 1960 թվականի հունվարի 3-ի հրամանում ասված է, որ «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» օրենքի իրագործումն առաջ է քաշում ուսումնական պրոցեսում կինոն ավելի լայնորեն օգտագործելու խնդիրը։

Ուսումնական կինոյի հարցերին նվիրված Համամիութենական խորհրդակցությունը, որ հրավիրվել էր 1959 թվականի հունիսին, կարևոր խնդիրներ դրեց ուսումնական կինոֆիլմերի ստեղծման ու դրանց օգտագործման ուղղությամբ։ Այսպիսով, ուսումնական հաստատությունների կինոֆիկացումն ու դասախոսական պրոպագանդայում կինոֆիլմերի օգտագործումն անհրաժեշտ միջոցառում է դառնում ուսումնական պրոցեսում և օգնում նյութի խոր յուրացմանը։ Կինոֆիլմերի հմուտ օգտագործումը ճանաչողական ու դաստիարակչական մեծ նշանակություն ունի։

Մեթոդական տեսակետից դիտողական ուսուցման այդ ձևը զգալիորեն հեշտացնում է նյութի յուրացումը, ավելի համոզիչ ու տպավորիչ է։ Եվ դա հասկանալի է, քանի որ դասախոսությունների ձևով մատուցվող տեսական դասընթացն ունկնդիրների կողմից ընկալվում է աբստրակտ ձևով, որը դժվարացնում է նրա ըմբռնումը։ Մինչդեռ կինոն, որպես կոնկրետ զգայական ընկալման միջոց, կենդանի կերպարների միջոցով նյութի յուրացումը դարձնում է ավելի հասկանալի ու մատչելի։ Օրինակ, քաղաքատնտեսության դասընթացում աշխատանքի պրոցեսների ավտոմատացման կամ կոմպլեքսային մեքենայացման հարցերի բացատրման կամ ժողովրդական տնտեսության քիմիացման, ինչպես նաև բազմաթիվ այլ հարցերի բացատրման ժամանակ դասախոսը կանգնում է որոշ դժվարությունների առջև։ Այստեղ օգնության կարող է գալ կինոֆիլմը, որը կոնկրետ նյութի հիման վրա մանրամասն, մատչելի ու պարզ կբացատրի այդ բարդ պրոցեսը։

Իհարկե, կինոֆիլմը չի կարող որևէ չափով փոխարինել դասախոսի կենդանի խոսքին՝ նրա տեսական դրույթներով ու եզրակացություններով, բայց այն հիանալի լրացում և ցուցադրական նյութ կհանդիսանա տվյալ թեմայի համար։ Կինոֆիլմերը պրոցեսներն ու երևույթները ներկայացնում են նրանց շարժման մեջ, էմոցիոնալ ներգործություն ունենալով հանդիսատեսի վրա։

Կինոյի դերը հսկայական է նաև ուսանողության դաստիարակության, նրանց մտահորիզոնի ընդլայնման իմաստով, այսինքն՝ աշխարհայացքային տեսակետից։ Միևնույն կինոֆիլմը նոր բովանդակություն է ստանում ուսանո-



ղական լսարանում, երբ նպատակասլաց է, երբ հանդիսատեսն այն ընկալում է ո՛չ միայն իբրև արվեստի երկ, այլև իբրև դիտողական օժանդակ միջոց ուսումնասիրվող թեմայի համար։ Հենց այստեղ, հանդիսասրահում, տեսական դասընթացը, զուգակցվելով զգայական ընկալման հետ, լրացվում է, վերստին իմաստավորվում և ամրանում։

Այսպիսով, դիտողականության զուգակցումը կենդանի խոսքի հետ առարկայի դասավանդումը դարձնում է ավելի համոզիչ, մատչելի և տպավորիչ (մտային ու տեսողական հիշողության՝ զուգակցում)։ Իհարկե, դիտողականությունը չպետք է դառնա ինքնանպատակ, այն պետք է որոշվի առարկայի գաղափարական բովանդակությամբ, դասընթացի ծրագրով և օժանդակ դեր կատարի ուսուցման պրոցեսում։ Կինոֆիլմերի հմուտ ընտրությունը մեծ չափով կարող է օգնել մի շարք երևույթների ու պրոցեսների, դասընթացի ծրագրի բարդ հարցերի խոր ըմբռնմանը։

Այսպիսով, կինոֆիլմերի օգտագործումն ուսումնական պրոցեսում ինչպես դիտողական ուսուցման, այնպես էլ մեր ուսանողության դաստիարակման կարևորագույն ձևերից մեկն է։ Այս կապակցությամբ ուսանելի է Երևանի անասնաբուժական ինստիտուտի քաղաքատնտեսության-փիլիսոփայության ամբիոնի աշխատանքի փորձը։ 1960—61 ուսումնական տարվանից կազմակերպվել է ուսումնական կինոֆիլմերի ցուցադրում II և III կուրսերի ուսանողների համար, որոնք ուսումնասիրում են քաղաքատնտեսություն, և IV ու V կուրսերի ուսանողների համար, որոնք ուսումնասիրում են փիլիսոփայության, գիտական աթեիզմի և մարքս-լենինյան էթիկայի ու էսթետիկայի հիմունքները։

Ամբիոնի աշխատողները մշակել էին գեղարվեստական, խրոնիկալ-դոկումենտալ և գիտա-հանրամատչելի կինոֆիլմերի մոտակա թեմատիկ ցանկ։ Այդ տարիների ընթացքում ամբիոնն ուսանողների համար ցուցադրել է մի շարք գեղարվեստական ու գիտա-հանրամատչելի ֆիլմեր։ Այսպես. «Արտադրության կապիտալիստական եղանակը» բաժնի «Ապրանք և փող» թեմայի կապակցությամբ ցուցադրվել է «Ոսկու իշխանության ներքո» գեղարվեստական ֆիլմը, որը պատմում է կապիտալիստական հասարակարգի գայլային օրենքների, ամեն տեսակ մեքենայությունների, հանցագործությունների ու սպանությունների միջոցով անզուսպ կերպով փող շահելու մասին։ «Կապիտալ և հավելյալ արժեք» թեմայի կապակցությամբ ցուցադրվել է «Այս աշխարհի ուժեղները» ֆրանսիական գեղարվեստական ֆիլմը, որը պատմում է միլիոնատերի ընտանիքում հոր և գործերը ինքնուրույն վարելու ձգտող որդու բախման մասին։ Վատնելով փողերը և մնալով առանց շրջանառու միջոցների, որդին դիմում է հորը և նրանից վարկ խնդրում. վերջինս, ցանկանալով պատժել որդուն, ձևացնում է, թե մերժում է նրան։ Որդուն սպառնում է սնանկացում, և նա ինքնասպանություն է գործում։ Որդու ինքնասպանությունը ցնցում է հորը։ Չէ՞ որ հենց որդու համար էր նա ամբողջ կյանքում պայքարել հանուն փողի, փող կուտակել, և հենց այդ փողերն էլ կործանեցին նրան։ Ֆիլմում միաժամանակ ցույց է տրված բորսան, բորսայական խաղը, կապիտալիստական աշխարհի մարդկանց բարքերն ու բարոյականությունը։ Այս նկարը կարելի է օգտագործել «Առևտրական կապիտալ և առևտրական շահույթ» և «Փոխատվական կապիտալ և տոկոս» թեմաներն ուսումնասիրելիս։

«Արտադրության սոցիալիստական եղանակը» բաժնի «Սոցիալիստական

արտադրական հարաբերությունների բնույթը» թեմայի կապակցությամբ III կուրսի ուսանողները դիտեցին «Գործարան-ավտոմատ» գիտա-հանրամատչելի ֆիլմը, որտեղ պատմվում է սովետական հաստոցաշինարարների կողմից ավտոմոբիլի մխոցներ արտադրող՝ աշխարհում առաջին ավտոմատ գործարանի ստեղծման մասին։ Ֆիլմում հաջողությամբ ցույց են տրված արտադրական բոլոր պրոցեսները՝ գործարան-ավտոմատում։

«Կոլտնտեսային կարգի տնտեսական հիմքերը» թեմայի կապակցությամբ ցուցադրվեց «Ժամանակի նախանշանները» խրոնիկալ-դոկումենտալ ֆիլմը, որի մեջ կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղատնտեսական մեքենաշինության ձեռնարկությունների, գիտական հիմնարկների պրակտիկայից վերցրած մի քանի օրինակներով ցույց է տրված, թե ինչ նոր բան է երևան եկել գյուղատնտեսության մեջ ՍՄԿՊ Կենտկոմի 1958 և 1959 թթ. դեկտեմբերյան պլենումների միջև ընկած ժամանակաշրջանում։ Առանձնահատուկ ուշադրություն էր նվիրվել գյուղատնտեսական նոր տեխնիկային և դրա առավել ռացիոնալ օգտագործմանը։

Գեղարվեստական ֆիլմեր են ցուցադրվել նաև անցած համապատասխան նյութերի կապակցությամբ, ինչպես, օրինակ, «Կոմունիստ» նկարը (կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջան), «Հերկած խոպան»-ը (կոլեկտիվացման և գյուղի սոցիալիստական վերակառուցման ժամանակաշրջան) և այլն։

Ամբիոնն աշխատում էր կինոֆիլմերը ցուցադրել տվյալ թեմայի շուրջ դասախոսություններ կարդալու և սեմինար պարապմունքների միջև ընկած ժամանակաշրջանում։ Առաջին փորձը ցույց տվեց, որ դիտողական ուսուցման նման ձևը տալիս է դրական արդյունք։ Ֆիլմերը դիտվում էին մեծ հետաքրքրությամբ և ուշադրությամբ, քանի որ տեսականորեն պատրաստված աուդիտորիան այն ընկալում էր նաև ճանաչողական տեսակետից, որպես դասընթացի իլյուստրացիա։ Իսկ սեմինար պարապմունքներին տեսական դրույթների վերլուծությունը զուգակցվում էր դիտված կինոնկարներից բերված օրինակներով։ Այդպիսի պարապմունքներն անցնում էին շատ ակտիվ, բովանդակալից, աշխույժ ու հետաքրքիր։ Երևանի անասնաբուժական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնն այսուհետև ևս կիրառելու է ուսումնական կինոֆիլմերի ցուցադրման այդ օգտակար փորձը։

Այդ միջոցառումն իրագործելու ժամանակ անհնարին է դասընթացի, առանց բացառության, բոլոր թեմաների համար ընտրել համապատասխան կինոնկարներ։ Ասենք դրա անհրաժեշտությունն էլ չկա, քանի որ չի դրվում քաղաքատնտեսության դասընթացի «էկրանացման» հարցը, ինչպես ոմանք հակամետ են կարծելու։ Այս կարևոր միջոցառման նման սխալ մեկնաբանումը հասարակական գիտությունների ամբիոնների որոշ ղեկավարների հանգեցնում է դասախոսական պրոպագանդայում կինոյի օգտագործման հարցի անտեսմանը, ժխտմանը։ Օրինակ, ոմանք «սրամտում» են, թե կինոյում, էկրանի վրա ինչպես ցույց տալ հավելյալ արժեքի արտադրության մարքսյան տեսությունը կամ «վերացական աշխատանքի» կատեգորիան։ Նման գռեհկացումը կարելի է բացատրել միայն այն բանով, որ ընկերները մինչև վերջ չեն հասկանում և թերագնահատում են կինոյի դերն ամբիոնի ուսումնա-դաստիարակչական աշխատանքի սիստեմում և աճող սերնդի կոմունիստական դաստիարակության միջոցառումների ամբողջության մեջ։



Ուսումնական ֆիլմերի ցուցադրման պրոցեսում կան որոշ թերություններ և դժվարություններ, որոնց վերացումը մեծ չափով կբարելավի դիտողական ուսուցման այս ձևը։ Այսպես՝ կինոպրոկատը չունի ուսումնական նպատակներով օգտագործելու համար անհրաժեշտ կինոնկարներ։ Ֆիլմոտեկան շատ աղքատ է։ Օրինակ, այնպիսի կինոֆիլմեր, ինչպես «Վասսա Ժելեզնովան», «Մաքսիմի վերադարձը» (ՍՍՌՄ), «Նոր ժամանակներ» և «Մեծ քաղաքի կրակները» (ԱՄՆ), «Նեապոլը միլիոնատերերի քաղաք է» (Իտալիա) և այլն, որոնք Մոսկվայի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետի կողմից հրատարակված «Քաղաքատնտեսության դասավանդման մեթոդիկա»-ով հանձնարարվում են իբրև ուսումնական կինոֆիլմեր քաղաքատնտեսության գծով, կինոպրոկատը բաց չի թողնում։ Եղած գեղարվեստական նկարներն այնքան թանկ արժեն (մեկ սեանսը 30 ռուբլի), որ երբեմն անհնար է լինում դրանք ձեռք բերել։ Կարծում ենք, որ կուլտուրայի մինիստրությունը, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության կողմից հանձնարարված կինոնկարների ցուցակին համապատասխան, պետք է առանձնացնի հատուկ կինոֆոնդ՝ ցուցադրման զգալիորեն իջեցված գներով, ուսումնական նպատակներով օգտագործելու համար։

Այնուհետև, եղած խրոնիկալ-դոկումենտալ և գիտա-հանրամատչելի ֆիլմերը միշտ չէ, որ համապատասխանում են հասարակական գիտությունների դասընթացների ծրագրերին։ Եվ դա հասկանալի է, քանի որ կինոնկարները նախատեսված են հանդիսատեսների լայն շրջանի և ոչ բուհական լսարանների համար։ Այդ կապակցությամբ ՍՍՌՄ կուլտուրայի մինիստրությունը կարող է կինոստուդիաներին առաջարկել նկարահանել խրոնիկալ-դոկումենտալ և գիտա-հանրամատչելի այնպիսի նկարներ, որոնք բխեն հասարակական գիտությունների դասընթացների ծրագրերից՝ ստեղծել արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի, միջազգային հարաբերությունների հարցերի գծով ծրագրերի պահանջներին համապատասխան ուսումնական հատուկ ֆիլմեր։ Ցանկալի է նաև, որ գեղարվեստական ու խրոնիկալ-դոկումենտալ կինոնկարների բնորոշ հատվածների և մասերի մոնտաժի միջոցով ստեղծվեն թեմատիկ ուսումնական ֆիլմեր։

Եղած թերությունների վերացումը, ինչպես նաև դասախոսական պրոպագանդայում կինոյի օգտագործման բնագավառում կարևոր միջոցառումների հաջող իրականացումը կօգնեն ավելի բարձրացնելու հասարակական գիտությունների դասավանդման մակարդակը, ինչպես նաև բարելավելու կոմունիզմի ոգով երիտասարդության դաստիարակության գործը։

Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Երևանի Անասնաբուժական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի ավագ դասախոս:

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲԱՐԵԼԱՎԵԼ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ[1]

*Այժմ, երբ պարտիան խնդիր է դրել ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան, առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների սոցիալիստական կուտակումների աճման հարցը դառնում է տնտեսագիտության կենտրոնական պրոբլեմներից մեկը։ Որքան փոքր լինեն արտադրության հասարակական ծախսումները, այնքան ավելի մեծ կլինեն սոցիալիստական կուտակումները, որոնք արտադրության մեջ ստեղծված հավելյալ արդյունքի մի մասն են։ Այդ նշանակում է, որ որքան արդյունավետ ու ռացիոնալ օգտագործվեն արտադրության նյութական միջոցները, ինչպես և բանվորական ժամանակը, այնքան փոքր կլինեն արտադրության հասարակական ծախսերը և համապատասխանորեն մեծ՝ հասարակության հավելյալ արդյունքը։ Այդ կապակցությամբ բանվորական ժամանակի ծախսումների կառուցվածքի սիստեմատիկ ուսումնասիրությունը՝ նրա ռացիոնալ օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման տեսակետից, ստանում է ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն։*

*Աշխատանքի արտադրողականության աճով է պայմանավորված սովետական մարդկանց նյութական բարեկեցության մակարդակը։ Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում նշեց, որ «Չի կարելի հասնել բարեկեցության աճի, եթե աշխատողների աշխատանքի արտադրողականությունը չաճի, ասես թե, «սառեցրած» լինի»։ Եվ, այնուհետև, շարունակում է. «Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուրը հասկանա, թե միայն աշխատանքի արտադրողականության անընդհատ պրոգրեսիվ աճն է տանում դեպի ժողովրդի կենսամակարդակի բարելավում»։*

*Աշխատանքի արտադրողականության աճի տնտեսական էությունն աշխատաժամանակի խնայողությունն է։ Վերջինս ձեռք է բերվում արդյունքի աշխատատարության կրճատման և աշխատաժամանակի ֆոնդի ավելի ռացիոնալ օգտագործման միջոցով։ Ընթացիկ յոթնամյակում աշխատանքի արտադրողականության աճի ռեզերվների մեջ զգալի տեղ է տրվում աշխատաժամանակի ֆոնդի լրիվ օգտագործմանը, որի համար հատուկ կապիտալ ներդրումներ չեն պահանջվում։ Աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման պրոբլեմի նկատմամբ աճող հետաքրքրությունը բացատրվում է նաև նրանով, որ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հնարավորությունները դեռևս անբավարար են օգտագործվում։ Ավելին, արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները չեն կատարվում։*

*[1] Ռեսպուբլիկայի ժողտնտխորհի ուշադրությունն ենք հրավիրում ընկ. Բաբայանի շոշափած խիստ կարևոր հարցերի վրա և սպասում գործնական միջոցառումների։—Խմբ.։*



*Բազմաթիվ ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության աճի առաջադրանքների թերակատարման գլխավոր պատճառներից մեկը, մեր կարծիքով, աշխատանքի անբավարար կազմակերպումն ու բանվորական ժամանակի մեծ կորուստներն են։ 1961 թվականին Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի մեքենաշինության ու հաստոցաշինության վարչության ձեռնարկությունների ավելի քան մեկ երրորդը չկատարեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը, չնայած ամբողջությամբ վերցրած վարչությունում այն կատարվեց 100,4, իսկ համախառն արտադրանքինը՝ 102,5 տոկոսով։*

*Ուրախալի է նշել, որ 1962 թվականի առաջին կիսամյակում, 1961 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկությունների գործունեության բարելավման շնորհիվ ձեռք են բերվել համեմատաբար բարձր տնտեսական ցուցանիշներ, և միայն երեք ձեռնարկություն չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքը։ Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի մեքենաշինության և դազգահաշինության վարչության գծով, ամբողջությամբ վերցրած, 1962 թվականի առաջին կիսամյակին աշխատանքի արտադրողականության պլանը կատարվել է 104 տոկոսով, իսկ համախառն արտադրանքինը՝ 103,8 տոկոսով։ Միաժամանակ պետք է նշել, որ արտադրանքի ծավալի և աշխատանքի արտադրողականության պլանը, ինչպես Հայաստանի ժողտնտխորհի, այնպես էլ մեքենաշինության և դազգահաշինության վարչության գծով կատարվել է բանվորական ժամանակի հսկայական կորուստների առկայության պայմաններում։ Այսպես, եթե այդ կորուստների մեծությունը Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի գծով (ադմինիստրացիայի թույլտվությամբ բացակայելը, գործալքումը և ամբողջօրյա պարապուրդները) 1959 թվականին ամբողջությամբ վերցրած ընդունենք 100 տոկոս, ապա 1960 թվականին այն կազմեց 107,5 տոկոս, իսկ 1961 թվականին հասավ 129-ի, այսինքն կորուստները մեծացան 29 տոկոսով։*

*Ժողտնտխորհի արդյունաբերության մեջ այդ կորուստները միայն 1962 թվականի վեց ամիսներին կազմեց 1961 թվականի ամբողջ տարվա կորուստների 65 տոկոսը։ Բանվորական ժամանակի կորուստները միայն վերջին երկու տարվա և 1962 թվականի առաջին կիսամյակի ընթացքում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մասշտաբով կազմեցին 47—50 մլն. ռուբլի։ Բանվորական ամբողջօրյա կորուստները մեծ են նաև մեքենաշինության և դազգահաշինության վարչության ձեռնարկություններում։ Այստեղ 1960 թվականին յուրաքանչյուր բանվոր միջին հաշվով ադմինիստրացիայի թույլտվությամբ գործալքումների և ամբողջօրյա պարապուրդների պատճառով չի աշխատել 5,3, 1961 թվականին 6,6, իսկ 1962 թվականի միայն առաջին կիսամյակում՝ 3,5 մարդ-օր։ Աշխատաժամանակի ֆոնդը լրիվ չօգտագործելու հետևանքով արտադրանքի արժեքային կորուստը (ելնելով օրվա արտադրանքի 17,1 ռուբլի 1960 թ., 18,2 ռուբ. 1961 թ. և 19 ռուբ. վեց ամսվա 1962 թ. հաշվից) կազմեց ավելի քան 2,2 մլն. ռուբլի։*

Ինչպես երևում է վերոհիշյալ տվյալներից, այդ կորուստները տարեցտարի մեծանում են։

Եթե այդ ժամանակն օգտագործվի ինչպես հարկն է, ապա ժողովրդական տնտեսությունը տասնյակ և հարյուր հազարավոր ռուբլիների լրացուցիչ արտադրանք կստանա։

Բանվորական ժամանակի այդ մեծ կորուստները, արտադրության ու աշխատանքի մեջ տեղ գտած թերությունները լուրջ խոչընդոտ են տեխնիկական նորմավորման կատարելագործման, արտադրության մեջ տեխնիկապես հիմնավորված արտադրանքի նորմաների արմատավորման գործում։

Ձեռնարկություններում աշխատաժամանակի ամբողջօրյա կորուստները պայմանավորված են զանազան պատճառներով։ Ուստի, կորուստների յուրաքանչյուր տեսակի նկատմամբ պետք է ունենալ կոնկրետ, խիստ դիֆերենցված մոտեցում։ Բանն այն է, որ աշխատանքի չներկայացած օրերի ընդհանուր թվի մեջ կան օրեր, որոնք նախատեսվում են օրենսդրությամբ և նրանց չափը չի կարելի արտադրության համար ռեզերվ համարել, օրինակ՝ հերթական կամ ծննդաբերության հետ կապված արձակուրդները։ Ճիշտ չէր լինի ձեռնարկություններից պահանջել, որ նրանք որոշակի մինիմումի հասցնեն այդ կորուստները։ Նույնը վերաբերում է և այլ պատճառներով աշխատանքի չներկայանալուն, որոնք թույլատրվում են օրենքով (պետական և հասարակական պարտականությունների կատարումը և այլն)։

Բոլորովին այլ են մյուս կարգի բացակայությունները՝ հիվանդություններ և ադմինիստրացիայի թույլտվությամբ աշխատանքի չներկայանալը։

Ադմինիստրացիայի թույլտվությամբ բացակայությունների կրճատումը արտադրության համար կարևոր նշանակություն ունի։ Այդ, շատ դեպքերում չարդարացված, ժամանակի կորուստները խոչընդոտում են ձեռնարկությունների նորմալ աշխատանքը, սահմանափակում արտադրության աճման հնարավորությունները և արգելակում աշխատանքի արտադրողականության տեմպերի բարձրացումը։ Ահա թե ինչու այդ կատեգորիայի բացակայությունների կրճատումը կամ մինիմումի հասցնելը կարևորագույն ժողովրդատնտեսական խնդիրներից է։

Չնայած այն բանին, որ այդ բացակայությունները չեն պլանավորվում, սակայն նրանց մի մասը, թեև շատ փոքր, պետք է համարել անհրաժեշտ, որոնք բխում են բանվորների անհետաձգելի պահանջներից (դժբախտ դեպքերը, հարազատների մահը և այլն)։

Ադմինիստրացիայի թույլտվությամբ բացակայությունների պատճառով ժամանակի կորուստները մեքենաշինության վարչության գծով 1961 թ. կազմեցին 21244 օր կամ միջինը մեկ բանվորի հաշվով 2,6 օր։ 1961 թվականին այդ բացակայությունները, մեկ բանվորի հաշվով, 1960 թվականի համեմատությամբ, չեն կրճատվել։ Ինչ վերաբերում է 1962 թվականի առաջին կիսամյակին, ապա այդ կորուստների բացարձակ մեծությունը կազմեց 1961 թվականի ընդհանուր մեծության 53,7 տոկոսը։ Այդ մի անգամ ևս ցույց է տալիս, որ ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկություններում անհրաժեշտ պայքար չի մղվում բացակայությունների վերոհիշյալ տեսակը իսպառ կրճատելու ուղղությամբ։

Ըստ առանձին ձեռնարկությունների՝ ադմինիստրացիայի թույլտվությամբ բացակայությունները բնութագրվում են հետևյալ տվյալներով.



| Ձեռնարկություններ | Միջինը մեկ բանվորին (օրերով) | Ամբողջ բացակայությունների մեջ ադմինիստրացիայի թույլտվությամբ բացակայությունների տեսակարար կշիռը (տոկոսներով) |
|---|---|---|
| Լենինականի հղկող հաստոցների գործարան | 1,1 | 3,3 |
| Սպիտակի «Կոնդիցիոներ» գործարան | 3,2 | 11,1 |
| «Հաստոցանորմալ» գործարան | 4,2 | 11,1 |
| Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարան | 4,5 | 11,1 |
| Կոմպրեսորների գործարան | 4,0 | 10,0 |
| Մետաղյա իրերի գործարան | 4,8 | 14,1 |
| Երևանի գործիքաշինական գործարան | 9,0 | 19,2 |
| Մետիզի գործարան | 3,6 | 6,2 |
| Վերամբարձ տրանսպորտային սարքավորումների գործարան | 10,4 | 24,5 |
| Հիդրոպոմպերի գործարան | 4,2 | 12,2 |
| Հիդրոհաղորդակ գործարան | 2,0 | 5,8 |

Բերած տվյալները ցույց են տալիս, որ առանձին ձեռնարկություններում այդ բացակայություններն զգալիորեն տատանվում են։ Կոմպրեսորների գործարանում դրանց թիվը երեք, Երևանի գործիքաշինական գործարանում՝ մոտ 6, իսկ վերամբարձ տրանսպորտային սարքավորումների գործարանում ավելի քան 7 անգամ ավելի է, քան Լենինականի հղկող հաստոցների գործարանում։ 11 ձեռնարկություններում մեկ բանվորի հաշվով այդ բացակայությունների միջինը կազմեց 5 օր։ Մինչդեռ «Տրակտորսելխոզմաշ» գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով ադմինիստրացիայի թույլտվությամբ բացակայությունների միջինը տրակտորաշինական ու գյուղատնտեսության մեքենաշինության 10 գործարաններում մեկ բանվորի հաշվով կազմել է 1955 թ. 1,81, 1956 թվականին՝ 2, 1957 թվականին՝ 2,4, 1958 թվականին՝ 3 օր։

Ռեսպուբլիկայում ուսումնասիրված 19 մեքենաշինական գործարաններում ադմինիստրացիայի թույլտվությամբ ժամանակի կորուստները մեկ տարում (100 բանվորի հաշվով) 3 ձեռնարկությունում կազմեցին 22-ից մինչև 66, վեց ձեռնարկություններում՝ 113-ից մինչև 247, իսկ մնացած 10 ձեռնարկություններում՝ 310-ից մինչև 1044 օր։ Որպես կանոն այդ բացակայությունները հիմնականում պատճառաբանվում են ընտանեկան հանգամանքներով, կամ պատճառները բոլորովին ցույց չեն տրվում։ Այդ վկայում է, որ առանձին ձեռնարկություններում ադմինիստրացիայի կողմից թույլ տրված բացակայությունների հաշվառում համարյա չի կատարվում, որն, անշուշտ, դժվարացնում է բանվորական ժամանակի ֆոնդի օգտագործման վերլուծությունը։ Ըստ պատճառների բացակայությունների հաշվառումը խիստ անհրաժեշտ է։ Այդ հնարավորություն կտա համապատասխան միջոցառումներ մշակել դրանց կրճատման համար։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր ռեզերվ է գործալքումների վերացումը։ Բանվորական ժամանակի չնախատեսված պարապուրդների և կորուստների մեջ խիստ անթույլատրելի են գործալքումները։ Մեքենաշինության վարչության գծով 1961 թվականին կորուստները գործալքումների հետևանքով կազմել են ավելի քան 28000 մարդ-օր։ Հատկապես

տագնապալի է այն, որ այդ կորուստները մեծանում են։ Այսպես, օրինակ, եթե 1960 թ. մեկ բանվորի հաշվով գործալքումների թիվը կազմեց 2,1 օր, ապա 1961 թվականին հասավ 3,4 օրվա, այսինքն՝ ավելացավ 66 տոկոսով։ Վերը նշված ընդհանուր բացակայությունների մեջ գործալքումների տեսակարար կշիռը 1960 թվականին 40,0 տոկոսից 1961 թվականին հասավ 51 տոկոսի և 1962 թվականի առաջին կիսամյակին կազմեց 58,2 տոկոս։ Առանձին ձեռնարկություններում գործալքումների թիվը խիստ ավելանում է։ Այսպես, եթե Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում մեկ բանվորին 1960 թվականին ընկնում էր 4,8 օր, ապա 1961 թվականին՝ 8,8 օր, Կիրովականի մեքենաշինական գործարանում համապատասխանորեն 2,3 և 6,7 օր, Երևանի մեխանիկական գործարանում 5,1 և 12,5 օր։ Հետաքրքիր է նշել, որ Երևանի մեխանիկական գործարանում գործալքումների թիվը 2,5 անգամ ավելի է, քան ավտոպահեստամասերի գործարանում, չնայած վերջինում բանվորների թիվը երեք անգամ մեծ է։

1961 թվականին Հոկտեմբերյանի հաստոցաշինական և Երևանի մետշինի գործարաններում բանվորների թիվը գրեթե հավասար էր, մինչդեռ առաջինում գործալքումների թիվը մոտ 19 անգամ ավելի էր։

Ի՞նչն է պատճառը, որո՞նք են նման երևույթի կրճատման կամ վերացման ռեալ հնարավորությունները։ Դա բանվորների մի մասի կողմից աշխատանքի նկատմամբ ցուցաբերած անբարեխիղճ վերաբերմունքն է և աշխատանքային ցածր կարգապահությունը ձեռնարկություններում։ Հետևաբար, պայքարը աշխատանքային կարգապահությունը խախտողների դեմ, մարդկանց կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի սկզբունքներով դաստիարակելը պարտիական և հասարակական բոլոր կազմակերպությունների ամենագլխավոր խնդիրներից մեկն է։ Աշխատողին դաստիարակելը ու կարգապահությունը խախտողների դեմ պայքարելը նոր մարդու ձևավորման միասնական պրոցեսի երկու կողմերն են։ Անհրաժեշտ է «Առանձնապես մեծ ուշադրություն դարձնել աշխատավորների ընկերական կարգապահության զարգացմանն ու ամրապնդմանը և նրանց ինքնագործունեության ու պատասխանատվության գիտակցության բազմակողմանի բարձրացմանը։ Այս է ամենագլխավոր, եթե ոչ միակ միջոցը՝ վերջնականապես հաղթահարելու կապիտալիզմը և այն սովորույթները, որ ստեղծվել են արտադրության միջոցների մասնավոր սեփականության տիրապետության հետևանքով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 121)։

Դեռ ավելին, փոքրամասնության շահերը մեծամասնության շահերին ենթարկելու նպատակով աշխատանքային կարգապահությունը չարամտորեն խախտողների, ինչպես և գործալիքների նկատմամբ անհրաժեշտ է կիրառել հարկադրանքի միջոցառումներ։ Այդ չէր ժխտում նաև Վ. Ի. Լենինը, նշելով. «...մենք բռնությունը չենք թաքցնում, որովհետև գիտակցում ենք, որ առանց պրոլետարիատի հետամնաց մասին հարկադրելու մենք հին հասարակությունից դուրս գալ չենք կարող» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 625)։

Այսպիսով, համոզելու և դաստիարակելու մեթոդների հետ միասին, առանձին դեպքերում անհրաժեշտ է աշխատանքային կարգապահությունը չարամտորեն խախտողների նկատմամբ կիրառել պատժի միջոցներ։

Միայն գործալքումների վերացումը թույլ կտար արտաժամյա աշխատանքները 60 տոկոսով կրճատել։ Հաշվարկները ցույց են տալիս, որ գործալքումների պատճառով ժամանակի կորուստները 1960, 1961 և 1962 թվականի վեց ամիսներին պետության վրա նստեցին ավելի քան մեկ մլն. ռուբլի։



Աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակալից ռեզերվ են ամբողջօրյա պարապուրդների կրճատումն ու լիկվիդացումը։ Հերթափոխության ընթացքում պարապուրդների մեծությունը բացասաբար է անդրադառնում նաև ձեռնարկություններում արտադրության ու աշխատանքի կազմակերպման վրա։ Սակայն, հաշվառման ու հաշվետվության գործող սիստեմը միանգամայն աղավաղված պատկեր է տալիս բանվորական ժամանակի ամբողջօրյա և ներհերթափոխային կորուստների մասին։ Ձեռնարկություններում հաշվառումը սպառիչ և լրիվ չէ, որի հետևանքով ընդհանրացման նպատակով սկզբնական նյութերի օգտագործումն ու վերլուծությունը դառնում են անհնար։ Այսպես, 1961 թ. մեքենաշինության վարչության բոլոր ձեռնարկություններից միայն 5 ձեռնարկությունում է ցույց տրված ամբողջօրյա պարապուրդների մեծությունը։ Հաշվետվություններում ցույց տրված տվյալներով ստացվում է, որ կոմպրեսորների գործարանում լրիվ հերթափոխային պարապուրդները մեկ տարում կազմել են 310, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում՝ 24, Լենինականի հղկող հաստոցների գործարանում՝ 42 օր և այլն։

Արտադրության ծավալի մեծացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր նախադրյալներից են արտադրության աշխատողների աշխատանքի պայմանների բարելավումն ու առողջացումը, որոնք բանվորական ուժի նորմալ գործունեության անհրաժեշտ տարրն են։

Աշխատանքի ոչ բավարար պայմանները (միջանցիկ քամիները, ցուրտը, շենքերի և աշխատատեղերի փոշին, օդափոխիչ հարմարանքների բացակայությունը, աղմուկը և այլն) առանձին դեպքերում զանազան հիվանդությունների պատճառ են դառնում, որի հետևանքով կրճատվում է բանվորական ժամանակի ամբողջօրյա ֆոնդը և մեծանում են կորուստները։

Հոգատարությունը մարդու նկատմամբ մեր պարտիայի գործունեության նպատակն է։ Աշխատանքի պաշտպանության և անվտանգության, ինչպես նաև արտադրական պայմանների բարելավման հարցերը, որոնց նպատակը աշխատողների առողջությունն ու աշխատունակությունը պահպանելն է, միշտ էլ եղել են մեր պարտիայի ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1957 թ. դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ նշված է. «Անհրաժեշտ է բարձրացնել ձեռնարկությունների և կառույցների ղեկավարների պատասխանատվությունը աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի վիճակի համար, աշխատանքային օրենսդրությունը ճշտորեն և անշեղ կերպով կատարելու համար։ Աշխատանքի պայմանների հետագա դյուրացումն ու առողջացումը, բանվորների տրավմատիզմի և հիվանդանալու պատճառների վերացումը պետք է դիտվի որպես պետական խնդիր»։

Չնայած դրան, մի շարք ձեռնարկություններ դեռևս անբավարար ուշադրություն են հատկացնում բանվորների աշխատանքի պայմանների բարելավմանը, լրիվ չեն օգտագործում անվտանգության տեխնիկայի և աշխատանքի պաշտպանության համար պետության հատկացրած միջոցները։

ՀՍՍՌ Ժողտնտխորհի մեքենաշինության և հաստոցաշինության վարչության ձեռնարկությունների համարյա կեսը 1961 թվականին չկատարեց անվտանգության տեխնիկայի և աշխատանքի պաշտպանության հատկացումների պլանը։ Մետշինի գործարանում անվտանգության տեխնիկայի և աշխատանքի

պաշտպանության համար պլանով նախատեսված գումարի միայն 63,6 տոկոսն է օգտագործված, այդ թվում անվտանգության տեխնիկայի համար նախատեսված գումարի միայն 53,3 տոկոսը:

Պլանով նախատեսված միջոցների լրիվ օգտագործումը բանվորների աշխատունակությունը պահպանելու և հիվանդություններից խուսափելու կարևոր գրավականն է: Նույնիսկ առաջին հայացքից մանրուք թվացող միջանցիկ քամիների վերացումը արտադրական ցեխերում, հանդերձարաններում, ցնցուղային լողարաններում, օդափոխիչ սիստեմների կառուցվածքը, լյումինեսցենտային լուսավորումը Մոսկվայի Ս. Մ. Կիրովի անվան առաջին ժամացույցի գործարանին 1958—1960 թթ. հնարավորություն տվին կրճատելու բանվորների ընդհանուր հիվանդությունների ավելի քան 50 տոկոսը:

Այս հոդվածում նպատակահարմար ենք գտնում բարձրացնել նաև աշխատաժամանակի ֆոնդի հաշվառման մի քանի հարցեր: Ձեռնարկություններում աշխատաժամանակի ֆոնդի հաշվառման և հաշվետվության դրվածքը չափազանց անբավարար է: Խոսքը, առաջին հերթին, աշխատաժամանակի այնպիսի ցուցանիշների մասին է, որոնց բացակայությունը կամ անբավարար հաշվառումը դժվարացնում, երբեմն նույնիսկ անհնար է դարձնում համապատասխան վերլուծություն կատարելը. դրանք են՝ ներհերթափոխային պարապուրդները, արտաժամյա աշխատանքները, ամբողջօրյա պարապուրդները, աշխատած մարդ-օրերը, տեխնոլոգիայից կատարված շեղումների պատճառով աշխատաժամանակի անարտադրողական ծախսումները և այլն:

Ցուցանիշների մի ամբողջ սիստեմ հանդես է գալիս որպես պլանի համապատասխան բաժինների մշակման ելակետ: Այդ ցուցանիշները, մյուսների հետ փոխկապակցված, հանդես են գալիս որպես սկզբնական օղակներ, որոնց հիման վրա կառուցվում է ժողովրդական տնտեսության ընթացիկ և հեռանկարային պլանների ցուցանիշների կոմպլեքսը: Բանվորական ժամանակի այնպիսի սինթետիկ ցուցանիշի պլանավորումը, ինչպիսին է, օրինակ, տարվա ընթացքում մեկ բանվորի աշխատած միջին մարդ-օրը, դառնում է բոլորովին անիմաստ: Այսպես օրինակ, հիդրոպոմպերի գործարանում 1960 թ. պլանավորվել էր, որ յուրաքանչյուր բանվոր պետք է աշխատի 309 օր, փաստորեն աշխատել է 283 օր, իսկ 1961 թ. պլանով նախատեսվել է 279 օր, ցինկապատ ամանեղենի գործարանում 1961 թ. պլանով այդ ցուցանիշը պետք է կազմեր 306 օր, փաստորեն կազմել է 300 օր, Երևանի մեխանիկական գործարանում 1960 թ. պլանավորվել էր 366 օր, փաստորեն աշխատել են 300 օր և այլն: Այս հետևանք է այն բանի, որ արդյունաբերական ձեռնարկություններում ճիշտ չեն պլանավորում օրվա օգտագործման հարցերը:

Արտադրության զարգացման ներկա մակարդակի պայմաններում բանվորական ժամանակի կորստի յուրաքանչյուր տոկոսը ՍՍՌՄ-ում կազմում է մոտավորապես 1,3—1,4 մլրդ. ռուբլու արտադրանք: Սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ աճը և արտադրության ծավալի ավելացումը գնալով ավելի են մեծացնում կորուստների յուրաքանչյուր տոկոսի կրճատման նշանակությունը:

Յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում բանվորական ժամանակի ամբողջօրյա կորուստների կրճատումն ու վերացումը արտադրության ու աշխատանքի արտադրողականության բարձրացման լրացուցիչ ռեզերվն են:

Ս. ԲԱԲԱՅԱՆ

---

# ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕԳՏԱՎԵՏ ՄԵԹՈԴ

Մտնելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ՝ մեր ռեսպուբլիկայի հարյուրավոր կոլտնտեսություններ ու սովխոզներ վճռել են պատվով կատարել ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները և իրականացնել յոթնամյակում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման առաջադրանքները: Այդ գործում մեծ դեր է խաղում անասնաբուծությունը, որի առաջատար և բարձր եկամտաբեր ճյուղերից մեկը ոչխարաբուծությունն է:

Մեր ռեսպուբլիկայում ամեն ինչ արվում է ոչխարի հոտի գլխաքանակն ավելացնելու, ցեղայնությունը բարելավելու և բրդատվությունը բարձրացնելու համար: Կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները՝ ռեսպուբլիկայի ոչխարաբույծները վերջին տարիներին կատարել են զգալի աշխատանք. եթե 1957 թվականին Հայկական ՍՍՌ-ի կոլտնտեսություններում ու սովխոզներում կար մեկ միլիոն հարյուր հազար գլուխ ոչխար, ապա անցյալ տարվա նոյեմբերին այն հասավ մեկ միլիոն երեք հարյուր հազարի: Յոթնամյակի վերջին տարում ռեսպուբլիկայում ոչխարների թիվը կհասնի 1880 հազարի:

Ոչխարների գլխաքանակի արագ ավելացման և մթերատվության բարձրացման ուղղությամբ կիրառվող միջոցառումներից է մաքիների վաղ ծնի անցկացումը, որը տնտեսական խոշոր նշանակություն ունի: Փորձը ցույց է տալիս, որ վաղ ծինն ունի մի շարք առավելություններ: Ոչխարների զուգավորումն անցկացնելով եղանակային բարենպաստ պայմաններում, օգոստոս-սեպտեմբեր ամիսներին, հնարավոր է հոտի վերարտադրությունն ավելացնել 20—25 տոկոսով: Այդ նշանակում է 100 գառի փոխարեն ստանալ 120—125 գառ: Հունվար—փետրվար ամիսներին ծնված գառները մինչև ամառ բավականաչափ մեծանում են, դառնում ամրակազմ, դիմացկուն: Ձմռանը ծնված գառների մեջ ամռանը ոչ մի հիվանդություն չի նկատվում, մատղաշի անկումը շատ քիչ է լինում: Վաղ ծնից ստացված գառները լավ աճում են և նույն տարվա հունիս—հուլիս ամիսներին կարելի է խուզել ու ստանալ լավորակ բուրդ: Ձմռանը ծնվող գառներն արոտ են դուրս գալիս արդեն 4—5 ամսեկան հասակում և տարվա վերջին ունենում են լիարժեք կենդանի քաշ: Միայն այս միջոցառման շնորհիվ յուրաքանչյուր տնտեսություն ամեն մի գառից կստանա 1—1,5 կգ բուրդ, զգալի չափով կկրճատվի մատղաշի կորուստը: Վաղ ծնի ժամանակ հեշտ է լինում նաև տնտեսությունն աշխատող ձեռքով ապահովելը:

Ստավրոպոլի երկրամասի «Սովետսկոյե ռունո» սովխոզում վաղ ծինը լավ կազմակերպելու շնորհիվ նկատելիորեն աճել է ոչխարների գլխաքանակը

և բարձրացել բրդատվությունը։ Այդ են ցույց տալիս ստորև բերված աղյուսակի տվյալները։

| Ծնի ժամկետը | Մաքիների գլխաքանակը | Ծնվել են գառներ | Գառների անկումը (գլխաքանակով) | 100 մաքիից քանի գառ է ստացված |
|---|---|---|---|---|
| Փետրվար<br>Մարտ<br>Ապրիլ | 2998<br>3964<br>2475 | 4369<br>5232<br>2983 | 250<br>34ↄ<br>351 | 133<br>115, 7<br>98, 0 |
| Ընդամենը՝ | 9437 | 12584 | 946 | 115,7 |

Ինչպես տեսնում ենք, վաղ ծին կազմակերպած տնտեսությունում ոչխարաբուծությունից ավելի շատ արդյունք է ստացվում։

Ի՞նչ է հարկավոր կատարել, որպեսզի ոչխարների վաղ ծինը հաջող անցնի և արդյունավետ լինի։ Դրա համար անհրաժեշտ է մաքիների զուգավորումը և արհեստական սերմնավորումը կատարել հուլիս— օգոստոսին, որն ամենահարմար ժամանակն է։ Այդ ամիսներին ոչխարները գտնվում են ամառային արոտավայրերում, լավ են սնվում ու գիրանում, արհեստական սերմնավորումն անցկացնելու համար շենքեր չեն պահանջվում։ Այդ պայմանների շնորհիվ արհեստական սերմնավորումը հաջող է անցնում, հոտում անհամեմատ ցածր է լինում ստերջների տոկոսը։ Ամռան և աշնան կլիմայական պայմաններն ու փարթամ արոտներն ավելի նպաստավոր են պտղի զարգացման համար, որովհետև հոտը մշտապես գտնվում է բաց օդում։ Փորձերը ցույց են տվել, որ հուլիս—օգոստոսին բեղմնավորված մաքիները 15—25 տոկոսով ավելի աճ են տալիս, քան ավելի ուշ ժամանակաշրջանում բեղմնավորվածները։

Ճիշտ է, վաղ ծնի համար անհրաժեշտ է ավելի շատ կեր կուտակել՝ մինչև արոտ դուրս գալը գառներին և հղիության վերջին շրջանում մաքիներին ավելի լավ կերակրելու համար։ Բայց կերի համար կատարված այդ ծախսի դիմաց ստացվում է կրկնակի ու եռապատիկ արդյունք. նույն տարին գառները տալիս են 1,2 կիլոգրամից մինչև 1,6 կիլոգրամ բուրդ, իսկ ամռան արոտի վերջին նրանց կենդանի քաշը հասնում է 40—45 կիլոգրամի, այսինքն՝ միջին մայրի քաշի։ Սևանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայում վաղ ծնի շնորհիվ անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, երկու անգամ ավելի բուրդ ստացան։

Վաղ ծինը հաջող անցկացնելու մյուս պայմանը մաքիների օրինակելի խնամքն է։ Հարկավոր է հղի մաքիներին պահել հարմարավետ գոմերում, ուր ջերմությունը պետք է լինի 6—7 աստիճան։ Եթե կան հյուծված հղի մաքիներ, դրանց հարկավոր է առանձնացնել ու լրացուցիչ կեր տալ և լավ խնամել։

Անհրաժեշտ է մսուրային շրջանում հղի ոչխարներին տեղավորել ընդարձակ, լուսավոր, չոր, լավ օդափոխություն և նորմալ ջերմաստիճան ունեցող տիպային ոչխարանոցում։ Ոչխարանոցում յուրաքանչյուր հղի ոչխարին պետք է հատկացնել 1,5—2 քառակուսի մետր տարածություն։ Այդ ժամանակ, եթե եղանակը բարենպաստ է, և քամիներ չկան, ցերեկը կարելի է նրանց դրսում թողնել ամբողջ օրը։

Ծնի կամպանիան սկսվելուն պես ոչխարանոցում պետք է սահմանել 24-



ժամյա հերթապահություն. նշանակում են օժանդակ աշխատողներ (սակմանավարները), որոնք պետք է ունենան գառներ աճեցնելու փորձ, քանի որ առանց դրան մատղաշների անկորուստ պահպանումը կդժվարանա։ Նոր ծնած մաքիներին գառների հետ միասին 3—5 օր պետք է պահել առանձին տեղում։ Գառի համար կյանքի առաջին երկու ամսում միակ լիարժեք սնունդը մոր կաթն է. ուրեմն մաքիների նորմալ կաթնատվության ապահովումը շատ կարևոր պայման է և պետք է լինի ոչխարաբույծների ուշադրության կենտրոնում։ Մաքիների նորմալ կաթնատվության ապահովումը ծնի կամպանիայի հաջող կազմակերպման և հետագայում առողջ գառների աճեցման նախապայմանն է։ Բարձր կաթնատվությունն ապահովվում է ոչխարների ճիշտ կերակրման և խնամքի միջոցով. ինչպես մինչև ծինը, այնպես էլ դրանից հետո, գարնանամուտին, երբ եղանակներն սկսում են տաքանալ, խիստ անհրաժեշտ է նորածին գառներին դուրս բերել կանաչ արոտ, սկզբում կարճ ժամանակով, իսկ այնուհետև՝ ամբողջ օրը։

Անհրաժեշտ է խստորեն պահպանել ինչպես ծնած մաքիներին, այնպես էլ գառներին ջրելու ռեժիմը։ Մի շարք տնտեսություններում ձմռանը ծնած ոչխարներին ջրում են գետում կամ աղբյուրից, որը խիստ անթույլատրելի է։ Սառը ջուրը բացասաբար է անդրադառնում մաքիների կաթնատվության վրա, վնասակար է գառների համար։ Հարկավոր է ոչխարանոցներում ունենալ ջրի հատուկ տակառներ, որոնց մեջ լցված ջրի ջերմությունը պետք է համապատասխանի գոմի ջերմաստիճանին։

20—30 օրական հասակից մատղաշներին պետք է լրացուցիչ կերակրել գարու և վարսակի ջարդած հատիկով։ Խտացրած կերի հետ միասին խորհուրդ է տրվում տալ հանքային կեր՝ աղ, կավիճ և ոսկրալյուր, յուրաքանչյուրին 5 գրամի հաշվով։

Ռեսպուբլիկայում կատարված գիտական մի շարք փորձերով ապացուցված է, որ եթե ոչխարներին կթում են գառների 2,5—3 ամսեկան հասակը լրանալուց հետո, ապա վերջիններս ունենում են բարձր կենդանի քաշ, կանխվում են անկումները։ Սակայն մեր շատ տնտեսություններում ոչխարների կիթը սկսում են, երբ գառները 1,5—2 ամսեկան են. այս խիստ բացասաբար է անդրադառնում մատղաշի աճի ու զարգացման վրա։ Մաքիների կիթը հարկավոր է սկսել գառների երեքից-չորս ամիսը լրանալուց հետո միայն, այսինքն՝ երբ նրանք լավ զարգացած կլինեն։ Հաճախ մաքիները մեկ ծնի ժամանակ տալիս են երկու, երեք և նույնիսկ ավելի գառներ։ Առաջավոր ոչխարաբույծների փորձը ցույց է տալիս, որ երբ մաքիներին (հատկապես հղիության վերջին երկու ամիսներում) լավ են կերակրում, մեկ ծնից երեք և ավելի ստացված գառները կենսունակ են լինում և կերակրման ու խնամքի միջին պայմաններում իրենց քաշով ու մթերատվությամբ որոշ ժամանակ անց հասնում են մեկական ծնված գառներին։ Ակադեմիկ Մ. Զավադովսկու փորձերը՝ ՍԺԿ պրեպարատով մշակված ոչխարների հոտերում ցույց են տվել, որ բազմապտուղ ծնից կարելի է ստանալ նույնիսկ յոթական գառ, որոնք լավ սննդի և խնամքի պայմաններում կարող են հասնել մեկական ծնված գառներին։ Որպեսզի մայրերը բավարար քանակությամբ կաթ ունենան, գառներն էլ արագ աճեն ու նորմալ զարգանան, մայրերին պետք է լավ կերակրել։ Սակմաններ (խմբեր) կազմելը նպաստում է գառների աճման և զարգացման նորմալ պայմանների ստեղծմանը, դրանց անկորուստ պահպանմանը և հնարավորություն է տալիս ճիշտ

կազմակերպելու թույլ ու բազմապտուղ մայրերի լրացուցիչ կերակրումը: Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տվել, որ լավ արդյունք է ստացվում այն դեպքում, երբ խմբերում մայրերի ու գառների թիվը փոքր է:

Մեր ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում ու բազմաթիվ կոլտնտեսություններում ոչխարների ծինն արդեն անց են կացնում վաղ ձմռանը. այդ լավ արդյունք է տալիս: Այսպես՝ Սիսիանի շրջանի Շաղաթ գյուղի կոլտնտեսության հոտում անցյալ տարվա դեկտեմբերին և այս տարվա հունվարին ծնված 900 մաքիներից ստացվել է 1000 գառ: Ֆերմայի վարիչ Ա. Լաթունցի, հովիվներ Լ. Կարապետյանի, Մ. Եղյանի, Բ. Բաբայանի գործադրած ջանքերի և ազնիվ աշխատանքի շնորհիվ դեկտեմբեր և հունվար ամիսներին ծնված գառներն աճում են նորմալ, ամրակազմ են և ամռան արոտային ժամանակաշրջանն անցկացնելուց հետո լավ արդյունք կտան: Նույն շրջանի Լծենի գյուղի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայում դեկտեմբեր—հունվար ամիսներին ծնած 500 ոչխարից ստացվել է 5602 գառ, որոնցից այս տարի ամառը կարելի է խուզել մեծ քանակությամբ բարձրորակ բուրդ:

Ոչխարների վաղ ծինը հաջող կազմակերպելու շնորհիվ Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի» կոլտնտեսության ոչխարաբույծները միայն 1962 թվականին ոչխարների գլխաքանակն ավելացրել են 1000 գլխով, սոցմրցմամբ ստանձնած 2,2-ի դիմաց յուրաքանչյուր ոչխարից ստացել են 3,3 կիլոգրամ բուրդ: Հովիվներ Գ. Արզանյանը, Մ. Թունյանը, Վ. Բալոյանը, Ս. Մաքունցը, Գ. Ճատունցը յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել ու պահպանել են 100—111 գառ, յուրաքանչյուր ոչխարից ստացել են 4,5—5.5 կգ բուրդ:

Հաշվի առնելով մաքիների վաղ ծնի այս առավելությունը, կարծում ենք, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների ոչխարաբուծական բոլոր ֆերմաներում կկիրառվի այդ մեթոդը, որը հնարավորություն կտա նրանց՝ հաջողությամբ կատարելու անասնաբուծական մթերքների արտադրության յոթնամյա պլանը:

Ս. ՂԱԶԱՐՅԱՆ

---

«Պոլարիս» հրթիռը երկաստիճան է, աշխատում է կարծր վառելիքով:

Հրթիռի երկարությունը 8,53 մետր է, քաշը՝ 12,7 տոննա, այսինքն չորս անգամ պակաս կարծր վառելիքով աշխատող միջին շառավղի գործողության ստրատեգիական հրթիռի քաշից: Ներկայումս հրթիռի գործողության հեռավորությունը հավասար է 2700 կիլոմետրի: Փորձարկումներ են կատարվում՝ գործողության հեռավորությունն ավելացնելու մինչև 3000 կիլոմետր:

Ատոմային սուզանավի գործարկման հարմարանքների վրա տեղադրվում է 16-ական հրթիռ: ԱՄՆ-ը նախատեսել է կառուցել 41 ատոմային սուզանավ. այդ սուզանավերը զինված են «Պոլարիս» հրթիռներով: 9 սուզանավ արդեն մտցված է սպառազինության մեջ, իսկ 1963 թվականին դրանց թիվը կհասնի 18-ի: Այդպիսի մի քանի սուզանավեր գտնվում են Հյուսիսային Ատլանտիկայում և տեղավորված են Շոտլանդիայում՝ Հոլի-Լոխում:

Հաշված է, որ «Պոլարիս» հրթիռի արժեքը կազմում է մոտ 5 միլիոն նոր ֆրանկ: «Պոլարիս» տիպի 16 հրթիռով սուզանավը նստում է 600 միլիոն նոր ֆրանկ:



## ԴՆԵՍՏՐԻ ԳԵՂԱԾԻԾԱՂ ԱՓԵՐԻՆ

Գեղեցիկ ու ինքնատիպ է Մոլդավիայի բնաշխարհը՝ շրջափակված Դնեստր ու Պրուտ գետերով և, մասամբ էլ՝ Դնեստրի ձախափնյա նեղ շերտով: Հիմնականում բլրաշատ, գետահովիտներով ու ձորակներով մասնատված մի հարթավայր է այն, առանձին բարձրություններով, որոնք հասնում են ծովի մակերևույթից երկուսից-երեք, երբեմն էլ մինչև չորս հարյուր մետրի:

Մեծ չէ Սովետական Մոլդավիայի տերիտորիան, ընդամենը 33,7 հազար քառակուսի կիլոմետր: Չնայած դրան, տարբեր է առանձին մասերի տեղանքը, այլ են նրանց բնապատկերները: Հյուսիսում տարածվում է փոքր-ինչ ալիքաձև Բելցի սևահողային տափաստանը, ուր կարելի է հանդիպել առանձին ոչ մեծ անտառային մասսիվների: Նրանից հարավ, ռեսպուբլիկայի միջին մասում, ձգվում է խիստ կտրտված կենտրոնական—մոլդավական գեղատեսիլ բարձրությունը՝ Կոդրերը (Կոդրու), որը մոլդավերեն նշանակում է թավուտ անտառ: Մի ժամանակ այդպիսին է եղել բլրաշատ այս վայրը՝ ծածկված բոխու, կաղնու, հաճարենու խիտ ծառերով. ներկայումս անտառների մեծ մասը հատված է, նրանց տեղում այգիներ են, ցանքադաշտեր: Այլ է դաշտապատկերը հարավում՝ Բուջակի անտառազուրկ տափաստանում. Դնեստրի ստորին ավազանում և այլուր:

Բայց այս երկրում ճամփորդելիս, որ կողմն էլ նայես, ամենուրեք թավ կանաչ է՝ փարթամ այգիներ ու բերքառատ դաշտեր, անտառային մասսիվներ, կանաչի մեջ թաղված քաղաքներ ու գյուղեր: Արևի կենարար շողերի տակ մոլդավական արգավանդ հողը ծածկվում է խաղողի վազերի զմրուխտե կանաչով, պտղատու այգիների բազմերանգ ծաղիկներով, հացահատիկի ոսկե հասկերով, փարթամորեն աճած եգիպտացորենի անտառով: Եվ պատահական չէ, որ մոլդավական ժողովրդական համարյա բոլոր երգերը՝ դոյնաները, սկսվում ու վերջանում են «ֆրունզե վերդե», այսինքն՝ «կանաչ տերև» բառերով:

Ծաղկուն այգեստա՞ն: Այդպիսին է այսօրվա Մոլդավիան, որը սովետական եղբայրական ռեսպուբլիկաների պայծառ համաստեղության մեջ նուրհրատում է իր ուրույն փայլով, երանգով: Այս բարեբեր հողի անամպ երկնակամարի տակ լեռնային վարար գետի պես հորդում են մարդկային խինդն ու երջանկությունը:

Սակայն ոչ հեռու անցյալում ծանր ու մղձավանջային էր այս փոքրիկ երկրի ու նրա ժողովրդի պատմական ճակատագիրը: Մոլդավիայի մեծ մասը՝ Բեսարաբիան (Պրուտի և Դնեստրի միջև ընկած տերիտորիան), բռնագրավված էր ռումինական բոյարների կողմից,

աշխատավոր մարդը հեծում էր օտար և սեփական հարստահարիչների կրնկի տակ: Մոլդավ ժողովուրդն ընկղմված էր աղքատության ու համատարած խավարի ծովում, համաճարակն ու մասսայական արտագաղթը դարձել էին նրա անբաժան ուղեկիցները: Մարդկային շատ տառապանք, վիշտ ու արցունք, արյուն ու ավեր են տեսել Դընեստրի ջրերը:

Երեսնական թվականներին ամերիկյան ու ֆրանսիական մի խումբ տնտեսագետներ այցելեցին Բեսարաբիա, ծանոթացան երկրի կացությանը: Տընտեսական կյանքն այնքան ողբերգական էր, որ նրանք հարկադրված եղան այդ մասին ասել հրապարակորեն: «Հազիվ թե այդ երկրամասը հեռանկար ունենա,— եզրակացրին տնտեսագետները,— իսկ Բուջակի տափաստանն ուղղակի մահվան է դատապարտված»: Կարծես լրացնելով նրանց, այդ նույն օրերին տեղական լիբերալ գործիչները «Վյացա Բեսարաբիե» ժուռնալում գրեցին. «Բելցին խոր քնի մեջ է և չի արթնանա նույնիսկ հազար տարուց հետո էլ»:

Արժեքավոր խոստովանություններ, բայց ոչ հեռատես կանխագուշակումներ:

...Վերջապես հասավ ազատության արշալույսը: 1940 թվականի ամռանը, քսաներկու տարվա գերությունից հետո, Սովետական Միության օգնությամբ ազատագրվեց Բեսարաբիան և վերամիավորվելով Մոլդավական Ավտոնոմ Սովետական Ռեսպուբլիկայի հետ, վերակազմվեց միութենական ռեսպուբլիկայի: Սկսվեց բազմաչարչար մոլդավ ժողովրդի պետական, տնտեսական ու կուլտուրական վերածնունդը:

Նոր կյանքի կառուցման առաջին իսկ օրերից նրան օգնության ձեռք մեկնեցին մեր երկրի բոլոր ժողովուրդները և, առաջին հերթին, ռուսներն ու ուկրաինացիները, օգնեցին եղբայրաբար, առատաձեռն: Հայրենական մեծ պատերազմին հաջորդեցին կառուցման ու ստեղծագործական մաքառումների հերոսական տարիները: Շատ արագ ապաքինվեցին մեծ արհավիրքի պատճառած ծանր վերքերը, փրթեց ու շենացավ մոլդավական տառապյալ հողը: Մարդիկ ճաշակեցին ազատ աշխատանքի բերկրանքը, զգացին նրա ողջ հմայքը, աշխատանք, որ մեկընդմիշտ թաղեց անիծյալ ու դառն անցյալը, հիմնովին վերափոխեց երկրի համապատկերը, դուրս բերելով այն կոմունիզմի լայնահուն պողոտան:



Սիրելի ընթերցող. եկեք այժմ մտովին համփորդենք լենինյան հանճարով վերածնված այդ արևաշող երկրում, միասին թերթենք սխրանքներով լի նրա տարեգրության էջերը:

Սովետական Մոլդավիան ունի բարձր զարգացած արդյունաբերություն: Եթե երկու տասնամյակ առաջ երկրի էկոնոմիկայում արդյունաբերական արտադրանքը գրավում էր աննշան տեղ, ապա այժմ այն գերակշռում է: Նախկինում կիսատնայնագործական արհեստանոցների փոխարեն ռեսպուբլիկայի բոլոր վայրերում վեր են խոյացել նորագույն տեխնիկայով սարքավորված տասնյակ ու տասնյակ գործարանների, ֆաբրիկաների կորպուսները, էլեկտրակայանները, որոնցից շատերը ծնունդ են առել յոթնամյակի տարիներին: Հիմնովին վերակազմվել են արդյունաբերության նախկին ճյուղերը, առաջ են եկել արտադրության միանգամայն նոր, ժամանակակից բնագավառներ:

Գյուղատնտեսական առատ հումքի բազայի վրա խիստ զարգացել է սննդի արդյունաբերությունը: Սովետական երկրում մեծ համբավ ու լայն ընդունելություն են գտել մոլդավական անուշաբույր գինիները, կոնյակը, շամպայնը, խաղողի հյութը, քաղցրահամ մըրգերից ու բանջարեղենից պատրաստված պահածոները. ռեսպուբլիկայում արտադրվում է մեծ քանակությամբ շաքարավազ, ծխախոտ, բուսական յուղ, մեծ չափով աճել է ալրաղացի, մսամթերքների, եթերային յուղերի, տեքստիլ-տրիկոտաժի, կաշվի արդյունաբերությունը: Վերջին տարիներին ստեղծվել ու արագ թափով զարգանում են էկոնոմիկայի ինդուստրիալ ճյուղերը՝ մեքենաշինությունը, մետաղամշակման, էլեկտրատեխնիկական և շինանյութերի արդյունաբերությունը. տարեցտարի ամրապնդվում է էկոնոմիկայի էներգետիկ բազան:

Ահա և մենք Քիշինյովում ենք: Հրաշալի է ռեսպուբլիկայի արևաշատ ու սպիտակավեհ մայրաքաղաքը, որը մեզ դիմավորում է իր ճարտարապետական հրաշալի կոթողներով, լայն պողոտաներով: Քաղաքն օղակված է կանաչի լայն գոտիով. շրջում ենք նրա ծառազարդ փողոցներով, զբոսայգիներով և պուրակներով: Միայն մեկ տարում՝ 1962 թվականին, այստեղ տնկվել են այնքան ծառ ու թուփ, որքան կար մինչ այդ: Քաղաքի փայտամածների մեջ է, ամենուրեք վեր են խոյանում վերամբարձ կռունկները, սոցիալիստական աշխատանքի հերոս, շինարար բանվոր Վ. Տոպալովը, որը պարտիայի XXII համագումարի պատվիրակ էր, իր ընկերների հետ մեկտեղ այսօրվա և ապագայի համար կառուցում է բարեկարգ տներ, արդյունաբերական ու կուլտուրայի բազմաթիվ օջախներ. միայն անցյալ տարի մայրաքաղաքի բնակիչներն ստացան 70 հազար քառակուսի մետր բնակելի նոր տարածություն:

Արդյունաբերական խոշոր կենտրոն է դարձել Քիշինյովը: Սննդի ու թեթև արդյունաբերության ձեռնարկություններից կողքին կառուցվել են մեքենաշինական ու էլեկտրատեխնիկական նոր գործարաններ: «Էլեկտրամաշինա» գործարանը 1962 թ. յուրացրեց լվացքի մեքենաների արտադրությունը, իսկ ընթացիկ տարում թողարկելու է նաև տնային սառնարաններ. մոլդավական ժողովրդի լեգենդար հերոս Գրիգորի Կոտովսկու անունը կրող էլեկտրամեխանիկական ձեռնարկությունն ընդլայնում է իր արտադրանքի նմուշները՝ այն սկսել է թողարկել նաև էլեկտրական պոմպեր: Բազմապիսի շինվածքներ են պատրաստում «Միկրոպրովոդ», «Էլեկտրանորմալ», էլեկտրական ճըշգրիտ սարքերի գործարանները:

Մեկ տարի առաջ այստեղ հիմնադրըվեց մոլդավական քիմիայի առաջնեկը՝ արհեստական կաշվի կոմբինատը, որը 1963 թվականին արտադրելու է վեց անգամ ավելի շատ կաշի, քան այժմ թողարկում է մայրաքաղաքի կաշվի գործարանը: Ղրիմի, Կովկասի և Մոլդավիայի խաղողի ու պտղատու այգիներում շուտով կերևան նորակառույց գործարանի տրակտորները. մի քանի ամիս առաջ գործարկվեց Քիշինյովի ջերմակայանի վեցերորդ ագրեգատը:

Քիշինյովը ռեսպուբլիկայի կուլտուրայի ու գիտական մտքի կենտրոնն է: Ահա գիտությունների ակադեմիան՝ իր բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտներով, լաբորատորիաներով ու փորձակայաններով, պետական համալսարանը, կոնսերվատորիան, բժըշկական, մանկավարժական ու գյուղատնտեսական ինստիտուտները, տասնյակ հանրակրթական ու միջնակարգ մասնագիտական դպրոցները, օպերայի և բալետի, դրամատիկական ու երաժշտական թատրոնները, կուլտուրայի ու արվեստի բազմաթիվ օջախները:

Մայրաքաղաքից ստացած անջնջելի տպավորություններով լի, ուղևորվում ենք Տիրասպոլ, որն իր նշանակությամբ ու մեծությամբ ռեսպուբլիկայի երկրորդ քաղաքն է: Մի քանի տարի առաջ աշխարհագրության դասագրքերում ի-

րավամբ այն կոչում էին պահածագործների քաղաք. ներկայումս դա ճիշտ է միայն կիսով չափ: Պահածոների, գինու-կոնյակի գործարանների կողքին մենք տեսնում ենք նոր գործարաններ, որոնք թողարկում են էլեկտրաշարժիչներ, էլեկտրական ապարատներ, մեքենաներ, կահույք և այլն: Կուլտուրական հարուստ կյանքով է ապրում դնեստրյան այդ քաղաքը:

Ռեսպուբլիկայի տարբեր վայրերում՝ թե՛ Բելցիի և Բուջակի տափաստաններում, թե՛ երկրի հարավում ապրող փոքրաթիվ ժողովրդի՝ գագաուզների երկրում, նախկին խուլ ու ամայի վայրերում ստեղծվել են արդյունաբերական նոր օջախներ ու կենտրոններ, որոնք լրացնում ու ամբողջացնում են Մոլդավիայի ինդուստրիալ դեմքը:

Մոլդավ ժողովրդի հոյաշեն գործերն ավելի լավ ընկալելու համար եկեք ծանոթանանք նրա տնտեսության նվաճումներին, դիմենք ամենապերճախոս փաստերին՝ թվերին:

Այսօր ռեսպուբլիկան մեկ ամսում թողարկում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան անցյալում տալիս էր Բեսարաբիան մեկ տարում: Առաջիկայում կարտադրվի 2 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա՝ 1940 թվականի 17,2 միլիոնի դիմաց:

ՍՍՌՄ-ում Մոլդավիան խաղողի գինու, ծխախոտի և շալֆեյի (եթերային յուղ) արտադրությամբ գրավում է երկրորդ, իսկ շաքարավազի, բուսական յուղի և պահածոների արտադրությամբ՝ երրորդ տեղը: Արդյունաբերական արտադրանքն ուղարկվում է արտասահմանյան 36 երկրներ: Քսաներկու տարում արդյունաբերական բանվորների թիվն ավելացել է 4,5, իսկ ինժեներատեխնիկական աշխատողներինը՝ 6 անգամ:

Ինդուստրիալ Տիրասպոլից ոչ հեռու մարդիկ աննահանջ պայքարի են ելել մեծ լույսի համար, որին մասնակցում է նաև Հայաստանը: Այստեղ կառուցվում է Կուչուրգանի շրջանային հզոր հիդրոէլեկտրակայանը, որը պետք է տա մի քանի անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան արտադրում է 1955 թվականին Դնեստրի վրա կառուցված մոլդավական առաջին՝ Դուբոսարիի հիդրոէլեկտրակայանը: Շաքարի ու պահածոների, մսի ու տեքստիլի խոշոր ձեռնարկություններ են կառուցվում ռեսպուբլիկայի տարբեր վայրերում, արագ են ընթանում գազամուղի շինարարական աշխատանքները...

Սոցիալիզմի մեծագույն նվաճումներն ավելի ակնառու, ավելի ցայտուն են դրսևորվում մոլդավական գյուղում:

1940 թվականին Բեսարաբիայում կար միայն 92 տրակտոր, այն էլ կալվածատիրական ու կուլակային ագարակներում. ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների դաշտերում գործում են ավելի քան 26 հազար տրակտոր ու հացահատիկային կոմբայն, հազարավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ: Նախկինում գյուղը զուրկ էր էլեկտրական լույսից, բնակիչների 70—80 տոկոսն անգրագետ էր, իսկ հիմա ամենուրեք վառվում են Իլյիչի լամպերը, վերացել է անգրագիտությունը:

Եկեք այցելենք Դնեստրի ափին գտնվող բեսարաբական խոշոր՝ Կոպանկի գյուղը, ծանոթանանք նրա անցյալին ու ներկային: Թագավորական Ռումինիայի սոցիալական հետազոտությունների ինստիտուտն ուսումնասիրել է այս գյուղը և 1939 թ. հրատարակել մի աշխատություն, որի յուրաքանչյուր էջում դրոշմված են հողի աշխատավորի հոգեմաշ վիշտն ու աղքատությունը: «Բնակչության միայն 11,2 տոկոսը կարող է գրել ու կարդալ,— կարդում ենք այնտեղ,— չկա ոչ մի բժիշկ կամ բուժակ... 1935 թ. Կոպանկիում ծնվել է 182 մարդ, մահացել՝ 112-ը»: Այնուհետև այդ փաստաթղթից իմանում ենք, որ 1937 թվականին 885 գյուղացիական ընտանիքներից 634-ը, կամ գյուղի բնակիչների 72,5 տոկոսը ագրարային պրոլետարներ կամ կիսապրոլետարներ են, որ նույն տարում արձանագրվել է չերմախտով հիվանդանալու 871 դեպք: Գյուղացիների մեծ մասն ապրում է փոքրիկ հյուղակներում, միակ տարրական դպրոցի դասարանները տեղավորված են գյուղացիական խրճիթներում:

Բոլորովին այլ է այսօր պատկերը: Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսությունը ռեսպուբլիկայի խոշոր ու հարուստ տնտեսություններից մեկն է: Ամեն տարի 1400 հեկտար այգիներից կոլտնտեսականները հավաքում են առատ բերք, մեծ եկամուտներ են ստացվում նաև տնտեսության մյուս ճյուղերից: Կոպանկին դառնում է քաղաքատիպ ավան. կառուցվել են հարյուրավոր լուսավոր ու գեղեցիկ նոր տներ, ասֆալտապատ մայթեր ու բարեկարգ փողոցներ, կուլտուրայի պալատ, դպրոցներ, հիվանդանոց, բաղնիք, մսուր-մանկապարտեզներ, կենցաղային արհեստանոցներ, հյուրանոց, փուռ, դեղատուն, փոստ, խանութներ... էլեկտրիֆիկացված է գյուղը: Յուրաքանչյուր ընտանիք ստանում է թերթ ու ժուռնալ, շատերն ունեն հեռուստացույցներ, լվացքի մեքենաներ, սառնարաններ... Եվ երբ գյուղի վրա իջնում է երեկոն, ամենուրեք ազատ ու սրտաբուխ հնչում է կենսախինդ երգը՝ ստեղծագործ աշխատանքի, երջանիկ կյանքի հիմնը:

Մոլդավիան խաղողի ու պտղատու այգիների երկիր է՝ այստեղ է գտնվում Սովետական Միության բերքատու այգիների մեկ երրորդը, իսկ խաղողի համախառն արտադրանքով նա առաջինն է: Մոլդավացիները հմուտ ու փորձառու այգեգործներ են: Անցյալ տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները հավաքեցին 763 հազար տոննա խաղող, որից պետությանը վաճառեցին 552 հազար տոննա, այսինքն՝ այնքան, որքան խաղող էր մթերվել 1953 թվականին ամբողջ Սովետական Միությունում:

Բայց Մոլդավիան փառաբանված է ո՛չ միայն իր հրաշալի այգիներով ու գեղատեսիլ գյուղերով, այլև դրանց ստեղծողների՝ մարդկանց գործերով: Անվանի խաղողագործների համբավ են նվաճել Տիրասպոլի շրջանի Պարկանի կոլտնտեսության անդամները. անցյալ տարի 600 հեկտար այգու ամեն մի հեկտարից, միջին հաշվով, նրանք հավաքեցին 102 ցենտներ խաղող. Լենինի անվան կոլտնտեսության (Կոտովսկու շրջան) Ալեքսանդր Խառժեվսկու ղեկավարած օղակը ստացավ 111 ցենտներ, իսկ սոցիալիստական աշխատանքի հերոս, օղակավարուհի Մարիա Տոտունարուն («Մոլդովա» կոլտնտեսությունից)՝ 120 ցենտներ խաղող: Տարեցտարի ընդարձակվում է այգիների տարածությունը՝ ընթացիկ տարում տնկվելու են 37,5 հազար հեկտար խաղողի ու պտղատու նոր այգիներ: Պայքար է գնում, որպեսզի մինչև յոթնամյակի վերջը ռեսպուբլիկայում արտադրվի 1,2 միլիոն տոննա խաղող և 445 հազար տոննա միրգ:

Որքա՜ն առատաձեռն է հատուցում հողը մարդկանց քրտնաջան աշխատանքի դիմաց: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 45-ամյակի նախօրեին մոլդավացիները զեկուցեցին, որ հայրենիքին վաճառել են 35,2 միլիոն փութ հացահատիկ, այսինքն՝ պլանից 4,1 միլիոն փթով ավելի: Երբեք այստեղ այդքան շատ հաց չէր արտադրվել ու վաճառվել: Հացահատիկի համախառն արտադրանքի երեք քառորդը կազմում է եգիպտացորենը:

Եգիպտացորենի մշակության շատ ու շատ փառաբանված վարպետներ կան մոլդավական գյուղում: «Գիգանտ»

սովխոզը, նույնիսկ անցյալ տարվա չորային պայմաններում, հեկտարից ստացավ 40—50 ցենտներ եգիպտացորենի հատիկ, իսկ «Դնեստրովյան» կոլտնտեսությունը (Դուբոսարիի շրջան)— 43,9 ցենտներ, ըստ որում այստեղ մեկ ցենտներ հատիկի ինքնարժեքը կազմել է ընդամենը 64 կոպեկ. «Վյացա նոե» կոլտնտեսության օղակավարուհի Մարիա Կազակուն 1962 թ. աճեցրել է եգիպտացորենի ռեկորդային բերք՝ քառասուն հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալով 95,4 ցենտներ հատիկ, «Հաղթանակ» կոլտնտեսության օղակավար Ֆյոդոր Պոմիրլյանուն՝ 103 ցենտներ:

Հարվածային ճակատի բազմաթիվ փարոսներ կան գյուղատնտեսական արտադրության մյուս ճյուղերում ևս: Նրանց հերոսական աշխատանքով անցյալ տարի արտադրվեց 30 հազար տոննա ծխախոտ, 257 հազար տոննա բանջարեղեն, հարյուր հեկտար վարելահողի հաշվով՝ 69 ցենտներ միս (սպանդանոցային քաշով) և 236 ցենտներ կաթ. պետությանն է վաճառվել 240 հազար տոննա արևածաղիկ: Գերակատարված են հացահատիկի, արևածաղկի ու ծխախոտի արտադրության գծով յոթնամյակի վերջին տարվա համար նախատեսված ցուցանիշները:

Ահա և «Փարոս» կոլտնտեսությունը (Եղինեցկովոյի շրջան), որն իրավամբ անվանում են կաթի ֆաբրիկա. այստեղ յուրաքանչյուր հարյուր հեկտարի դիմաց անցյալ տարի արտադրվեց 400 ցենտներ կաթ: Ռեսպուբլիկայում մեծ գովեստով են խոսում Կիրովի անվան կոլտնտեսության կթվորուհի Մարիա Չապլիգայի մասին, որը ֆուրաժային կովից ստացել է 4480 լիտր կաթ, «Կարմանովո» սովխոզի անվանի խոզապահ, ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատ Դիմիտրի Վորոնայի մասին:

Մոլդավիայի համայնական դաշտերում ու այգիներում սկսվել են գարնան գյուղատնտեսական աշխատանքները: Գյուղի աշխատավորները պայքարի են դուրս եկել՝ աշխատանքային փառավոր նոր գործերով հավերժացնելու յոթնամյակի հինգերորդ տարին, ավելի հարստացնելու Հայրենիքի շտեմարանները: Նրանք խոսք են տվել 1963 թվականին վաճառել 35—40 միլիոն փութ հացահատիկ, 30 հազար տոննա ծխախոտ, 585 հազար տոննա խաղող և 200 հազար տոննա միրգ. անասնաբույծները պարտավորվել են նվաճել մսի արտադրության առաջին բնագիծը՝ հարյուր հեկտար վարելահողի՛ դիմաց ստանալ 80 ցենտներ միս և 269 ցենտներ կաթ: Մենք վստահ ենք ու հավատում ենք, որ ինչպես միշտ, այս անգամ էլ մեր բարեկամները իրենց խոսքը գործ կդարձնեն:

Մոլդավ ժողովուրդը կոմունիզմի գանձարանն է մուծում ո՛չ միայն իր նյութական բարիքների հարստությունը, այլև իր նվաճած հոգևոր մեծ կուլտուրան:

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում բուռն ծաղկել են ազգային կուլտուրան, արվեստն ու գրականությունը, փթթել են ժողովրդական տաղանդները: Սովետական Մոլդավիան դարձել է առաջավոր կուլտուրայի ու գիտության երկիր, ուր բոլորը կարդում են, բոլորը սովորում:

Տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում ակնբախ են Սովետական Մոլդավիայի նվաճումները, որի համար նա պարգևատրվել է Լենինի շքանշանով. հազարավոր աշխատավորներ արժանացել են կառավարական ամենաբարձր պարգևների ու կոչումների: Սովետական համերաշխ մեր ընտանիքում կոմունիստական իր լուսաշող ապագան է կռում մոլդավ քաջ ու կորով ժողովուրդը, որպեսզի ավելի լիառատ հորդեն նյութական ու հոգևոր հարստությունների բոլոր աղբյուրները:

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

---

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՍՈՎԵՏՆԵՐՈՒՄ

*Ստորև հրապարակվում են այն փաստաթղթերը, որոնք վերաբերում են Հայաստանի սովետներում և Կովկասյան բանակում բոլշևիկների գործունեությանը: Ինչ խոսք, որ այս փաստաթղթերը ամբողջովին չեն սպառում զգացվող պակասը, սակայն դրանք որոշ չափով լրացնում են այդ ժամանակաշրջանին վերաբերող, մեզ արդեն հայտնի, փաստացի նյութերը:*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի լուրը կայծակի արագությամբ տարածվեց ամբողջ երկրով մեկ, ինչպես և Հայաստանում:*

*1917 թ. հոկտեմբերի 25-ին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Կարսի սովետի Գործադիր Կոմիտեն նույն օրը գումարեց արտահերթ նիստ, պարզորոշ դարձնելու համար իր վերաբերմունքը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նկատմամբ: Նիստի քննարկմանն էին ներկայացված էսեռա-մենշևիկյան-դաշնակցական և բոլշևիկյան երկու բանաձև:*

*Պաշտպանողականների բանաձևը ստահոդ կերպով պնդում էր, որ Հոկտեմբերյան հեղաշրջումը «ռևոլյուցիոն դեմոկրատիայի աննշան մասի» ելույթն է և այդ պատճառով էլ այն դատապարտված է անհաջողության:*

*Բոլշևիկների ֆրակցիայի բանաձևի մեջ, որն առաջարկում էր պաշտպանել Հոկտեմբերյան ռևոլյուցիան, մերկացվում էին էսեռա-մենշևիկա-դաշնակցական բլոկի զրպարտիչ հերյուրանքները և նշվում էր, որ միայն բանվորների և զինվորների ռևոլյուցիոն ելույթն է, որ ընդունակ է կանխելու բուրժուա-կալվածատիրական հակառևոլյուցիան և բուրժուազիայի կողմից նախապատրաստվող Պետրոգրադի հանձնումը գերմանացիներին (տե՛ս փաստաթուղթ № 1):*

*Քվեարկությունից հետո, որի ընթացքում ձայների մեծամասնությամբ անցավ պաշտպանողական բլոկի բանաձևը, որոշվեց երկու բանաձևերն էլ դնել սովետի ընդհանուր նիստի քննարկմանը:*

*Կարսի սովետի՝ հոկտեմբերի 27-ին կայացած նիստում բոլշևիկները մեծ կրքոտությամբ ապացուցում էին, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիան իսկական ժողովրդական ռևոլյուցիա է, որն արտահայտում է աշխատավոր մասսաների շահերը: Սակայն, քանի որ սովետում մեծամասնություն կազմող պաշտպանողական պարտիաները չէին արտահայտում մասսաների տրամադրությունը, բոլշևիկների բանաձևը այստեղ ևս չստացավ ձայների մեծամասնություն:*

*Նոյեմբերի կեսերից մասսաներին նվաճելու համար բոլշևիկների մղած պայքարն ընթանում էր ժողովրդական կոմիսարների սովետը ճանաչելու և անօրինական ճանապարհով ստեղծված Անդրկովկասյան կոմիսարիատը դատապարտելու նշանաբանով: Այդ պայքարում բոլշևիկների ձեռք բերած բազում*

*հաջողություններից մեկը բոլշևիկ Բ. Պ. Շեբոլդաևի առաջարկությամբ 1917 թ. նոյեմբերի 22-ին զինվորների և բանվորների դեպուտատների Էրզրումի սովետի, բանակային կոմիտեի, Էրզրում քաղաքի բոլոր զինվորական և հասարակական կազմակերպությունների միացյալ նիստում ընդունված բանաձևն է (փաստաթուղթ № 2)։*

*Մասսաներին նվաճելու համար մղվող պայքարում բոլշևիկները ստիպված էին հաղթահարել պաշտպանողական պարտիաների կատաղի դիմադրությունը։ Այս տեսակետից բնորոշ է 1917 թ. նոյեմբերի 27-ին Էրզրումում բացված Կովկասյան բանակի բանակային համագումարում ծավալված պայքարը։ Համագումարում գերակշռում էր էսեռա-մենշևիկյան բլոկը, որն իր հետևից տանում էր ավելի քան 100 պատգամավոր։ Բոլշևիկյան ֆրակցիան ուներ 40 պատգամավոր։ Փոքր ֆրակցիաներից աչքի էր ընկնում ուկրաինական նացիոնալիստների խումբը, որն ուներ 15 մանդատ։ Մանրբուրժուական պարտիաների քանակական գերակշռությունը բացատրվում է նրանով, որ էսեռներին հաջողվել էր ստանալ այն զորամասերի բանակայինների ձայները, որոնք կտրված էին քաղաքական կյանքի կենտրոններից, գտնվում էին դիրքերում, որտեղ բոլշևիկները հետապնդվում էին, արգելվում էր բոլշևիկյան գրականությունը, որտեղ անարգել գործում էին էսեռներն ու մենշևիկները։*

*Հասկանալի է, որ նման պայմաններում շատ զինվորներ դեռևս չէին հասցրել ճանաչել էսեռների իսկական դեմքը և գիտակցել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նշանակությունը։*

*Համագումարի ուշադրության կենտրոնում էր ընթացիկ մոմենտի հարցը, որի վերաբերյալ յուրաքանչյուր ֆրակցիա (բոլշևիկյան, էսեռական, մենշևիկյան և ուկրաինական նացիոնալիստների) առաջադրել էր իր զեկուցողը։ Սակայն հիմնական պայքարը ծավալվեց բոլշևիկների և էսեռների միջև, վերջիններին աջակցում էին մենշևիկները և ուկրաինական նացիոնալիստները։*

*Բանակային համագումարում բախվեցին երկու ստրատեգիական գծեր։ Մի գիծը, որը վարում էին էսեռներն ու մենշևիկները, ելնում էր անտագոնիստական դասակարգերի «համագործակցության» հաշտվողական սնանկացած տեսակետից և նպատակ ուներ ճանաչել Սահմանադիր ժողովի իշխանությունը և աջակցել անօրինական ճանապարհով ստեղծված Անդրկովկասյան կոմիսարիատին։ Իսկ բոլշևիկյան գիծը, որն արտահայտում էր պրոլետարիատի և չքավոր գյուղացիության դասակարգային շահերը, դատապարտում էր հակաժողովրդական Անդրկովկասյան կոմիսարիատի ստեղծումը, հանդես էր գալիս տեղերում իշխանությունը սովետներին հանձնելու և ժողովրդական կոմիսարների սովետին աջակցելու օգտին (փաստաթուղթ № 3)։*

*Հաշվի առնելով այն հանգամանքը, որ համագումարում մեծամասնությունը կազմում էին էսեռներն ու մենշևիկները, ընթացիկ մոմենտի վերաբերյալ բանաձևի քվեարկության ժամանակ բոլշևիկները պահանջեցին անցկացնել անվանական քվեարկություն «որպեսզի,— ինչպես հայտարարեց բոլշևիկ Նաումովը,— ռազմաճակատի զորամասերն իմանան, թե ո՞ւմ օգտին են քվեարկել իրենց պատգամավորները՝ ժողովրդի իսկական բարեկամների, թե՞ հակառևոլյուցիոներների օգտին»[1]։*

*Համոզված լինելով, որ համագումարի մեծամասնության կողմից հավանու-*

---

[1] «Кавказский воин», *(Էրզրում), № 186, 1917 թ. դեկտեմբերի 3։*



*թյան արժանացած էսեռական բանաձևը չի համապատասխանում պատերազմում հյուծված զինվորների շահերին, որոնք տենչում էին հաշտություն, հող, հաց, ազատություն և իսկական ժողովրդական իշխանություն, բոլշևիկյան ֆրակցիան հանդես եկավ հատուկ հայտարարությամբ, որով նա իր վրայից վերցնում էր պատասխանատվությունը այն հետևանքների համար, «որոնք անխուսափելի կլինեն, եթե անդրկովկասյան դեմոկրատիան և բանակն ընթանան ընդունված բանաձևի նշած ուղիով» (Փաստաթուղթ № 4)։*

*Սակայն զինվորական լայն մասսաների շրջանում, որքան ավելի խորն էր թափանցում ճշմարտությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և բոլշևիկների մասին, հաշտվողական պարտիաներն այնքան ավելի արագ էին կորցնում իրենց ազդեցությունը Կովկասյան բանակի վրա, ավելի էր արագանում նրանց քաղաքական մեկուսացումը։ Բանակային համագումարի եզրափակիչ նիստերից մեկում արդեն հրապարակվեց 15-րդ հրաձգային գնդի հայտարարությունն այն մասին, որ գնդի կոմիտեների միացյալ նիստում որոշվել է վստահություն չհայտնել նախկինում ընտրված պատգամավորներին և ետ կանչել նրանց համագումարից։ Գունդը խնդրել էր ետ կանչվողների փոխարեն թույլատրել համագումարին մասնակցել երկու նորընտիր պատգամավորներին[1]։*

*Այս փաստը չի կարելի պատահական համարել, քանի որ այն բացահայտում է Կովկասյան բանակի զինվորների տրամադրությունները, որոնք ժամ առ ժամ հիասթափվում էին էսեռների դավաճանական քաղաքականությունից։ Զինվորների տրամադրությունների այդ փոփոխությունները հանգեցրին Կովկասյան բանակի երկրային II համագումարում բոլշևիկների հաղթանակին։*

Մ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

№ 1

*ԶԻՆՎՈՐՆԵՐԻ, ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ԿԱՐՍԻ ՍՈՎԵՏԻ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԵԻ 1917 Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 25-Ի ՆԻՍՏՈՒՄ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՖՐԱԿՑԻԱՅԻ ԱՌԱՋԱՐԿԱԾ ԲԱՆԱՁԵՎԸ*

Ռուսաստանի Սոցիալ-Դեմոկրատական Բանվորական պարտիայի՝ զինվորների, բանվորների և գյուղացիների դեպուտատների Սովետի Կարսի Գործադիր Կոմիտեի բոլշևիկ ինտերնացիոնալիստների ֆրակցիան, քննարկելով հաղորդումները Պետրոգրադի դեպքերի մասին, որոնք կոչվում են «Բոլշևիկների ելույթ» գտնում է, որ տվյալ ելույթը ո՛չ միայն բոլշևիկների պարտիայի, այլ Պետրոգրադ քաղաքի ռևոլյուցիոն դեմոկրատիայի ամբողջ ձախ մասի ելույթն է, որն առաջացել է մեծամասնությամբ կապիտալիստներից և կալվածատերերից կազմված Ժամանակավոր կառավարության հանցավոր քաղաքականության հետևանքով:

Վաղուց արդեն առկա էր դժգոհության աճը կառավարության քաղաքականությունից: Անհրաժեշտ ենք համարում ընդգծել, որ ռևոլյուցիոն ժողովրդի ելույթը ճակատի ճեղքում չէ թագակիր ավազակ Վիլհելմի համար, այլ, հակառակը, Ռուսաստանի փրկությունն է ռուսական ռևոլյուցիան ճնշելու և Սովետները ցրելու համար բուրժուազիայի և բարձր հրամանատարական կազմի կողմից Վիլհելմին Ռուսաստան թողնելու հնարավորությունից:

Եթե ապստամբությունը Պետրոգրադում բխել է իշխանությունը զինվորների, բանվորների և գյուղացիների դեպուտատների Սովետներին որպես ռևոլյուցիոն

---

[1] «Кавказский воин», *(Էրզրում), № 190, 1917 թ. դեկտեմբերի 7։*

ժողովրդի կամքի իսկական արտահայտողին հանձնելու կապակցությամբ, որոնք միայն կարող են նպաստել Սահմանադիր ժողովը ժամանակին հրավիրելուն, ինչպես նաև փրկելու ռևոլյուցիայի գործը, ապա բոլշևիկների ֆրակցիան ողջունում է այդ ելույթը (ապստամբությունը) և ասում. «Կեցցե՛ ժողովրդի իշխանությունը ի դեմս բանվորների, պինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների»:

«Известия Карского Совета солдатских, рабочих и крестьянских депутатов и официальный отдел областного Комиссариата», № 136, *1917 թ. հոկտեմբերի 28։*

## № 2

### *ԲՈԼՇԵՎԻԿ Բ. Պ. ՇԵԲՈԼԴԱԵՎԻ ԱՌԱՋԱՐԿԱԾ ԵՎ ԶԻՆՎՈՐՆԵՐԻ ՈՒ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ԷՐԶՐՈՒՄԻ ՍՈՎԵՏԻ, ԿՈՎԿԱՍՅԱՆ ԲԱՆԱԿԻ ԲԱՆԱԿԱՅԻՆ ԿՈՄԻՏԵԻ, ԷՐԶՐՈՒՄ ՔԱՂԱՔԻ ԲՈԼՈՐ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ 1917 Թ. ՆՈՅԵՄԲԵՐԻ 22-Ի ՄԻԱՑՅԱԼ ՆԻՍՏԻ ԸՆԴՈՒՆԱԾ ԲԱՆԱՁԵՎԸ*

Քննարկելով համառուսական իշխանությունից անջատ իշխանություն ստեղծելու վերաբերյալ Անդրկովկասի Երկրամասային կազմակերպությունների բանաձևի մասին հաղորդումը, Էրզրումի կայազորի կոմիտեների և հասարակական կազմակերպությունների միացյալ նիստը ենթադրելով՝

1. որ այդ միջոցառումները փաստորեն կենսագործում են Կովկասի անջատումը Ռուսաստանից:

2. որ կենտրոնական Ռուսաստանում իշխանությունը կազմակերպված է պին (վորական), բան (վորական) և գյուղա (ցիական) դեպուտատների Սովետների ձեռքում.

3. որ անարխիան սպառնում է ո՛չ թե կենտրոնական Ռուսաստանից, այլ երկրամասում իրենց իշխանությունը պահպանելու նպատակով քաղաքացիական պատերազմի դիմող Անդրկովկասյան կազմակերպությունների ավանտյուրիստական միջոցներից.

4. որ այդ միջոցները հակառևոլյուցիոն փորձեր են երկրամասում իշխանությունը պահելու այն կազմակերպությունների և այն անձանց ձեռքում, որոնք պետք է այն հանձնեին Սովետներին.

5. որ անջատման փորձերը թելադրվում են վերևից, նպատակ ունենալով պայքարել նոր կարգերի դեմ, և չեն արտահայտում կովկասյան ժողովուրդների ինքնորոշման կամքը.

6. որ այդ միջոցը տնտեսական, ֆինանսական կամ վարչական անհրաժեշտություն չի ներկայացնում.

7. որ ոչ մի ուժ չի կարող ելույթից ետ պահել Կովկասյան բանակը...

Քաղաքացիական պատերազմը և երկրամասի կյանքի խափանումը կանխելու նպատակով, որը կարող է կործանիչ ազդեցություն ունենալ բանակի վրա, պահանջում ենք՝

1. Երկրամասի կողմից ճանաչել Ռուսաստանի կենտրոնական իշխանությունը և անհապաղ կենսագործել կենտրոնական կառավարության հրատարակած բոլոր դեկրետները և որոշումները:

2. Տեղերում այն հանձնել Սովետների ձեռքը:

3. Վերընտրել երկրամասային այն կազմակերպությունները, որոնք մշակել են Կովկասի անջատման նախագիծը:

«Кавказский воин», *№ 181, 1917 թ. նոյեմբերի 29։*



## № 3

### *ԿՈՎԿԱՍՅԱՆ ԲԱՆԱԿԻ ԲԱՆԱԿԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՖՐԱԿՑԻԱՅԻ 1917 Թ. ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 2-ԻՆ ԱՌԱՋԱՐԿԱԾ ԲԱՆԱՁԵՎԸ ԸՆԹԱՑԻԿ ՄՈՄԵՆՏԻ ՄԱՍԻՆ*

Ընդունելով, որ

1. երկրի արտադրողական ուժերը ոչնչացնող իմպերիալիստական պատերազմը հանգեցրել է տնտեսական և ֆինանսական ճգնաժամի, իսկ ռևոլյուցիայի ժամանակ իշխանության գլուխ կանգնած պարտիաների քաղաքականությունը ոչ միայն չկանխեց, այլ առավել ևս սրեց այն,

2. երկրի այդպիսի վիճակը ռուսական ռևոլյուցիայի առջև դնում է սոցիալ-տնտեսական խնդիրներ՝ ա) պատերազմի անհապաղ ավարտ, բ) առանց ետ գնման ամբողջ հողի տրամադրումը աշխատավոր գյուղացիությանը. գ) 8-ժամյա աշխատանքային օր, դ) երկրի ղեկավարման դեմոկրատացում և ե) տնտեսական կյանքի բոլոր ճյուղերի կարգավորում, և առաջին հերթին, պարենային ապրանքների արտադրման և բաշխման բնագավառում, խնդիրներ, որոնք կարող են լուծվել ռևոլյուցիոն շարժման կարգացման ընթացքում և որոնց թիկունքում կանգնած են գլխավոր ժողովրդական ուժերը՝ բանվորները, գյուղացիները և պինվորները:

3. ռևոլյուցիան առաջ է քաշել սոցիալական այս խնդիրները, որոնք բուրժուազիային հարկադրեցին հեղաշրջման առաջին օրից անցնել բացահայտ և գաղտնի հակառևոլյուցիայի լագերը.

4. հնարավոր չէր ոչ մի արմատական վերակառուցում, քանի որ այն հանդիպում էր ռեակցիոն բուրժուազիայի անհաղթահարելի հակազդեցությանը, որը Կերենսկու հաշտվողական կառավարությունների միջոցով փաստորեն ամբողջ իշխանությունը պահում էր իր ձեռքում.

5. կոալիցիոն մինիստրության կառավարման 8-ամյա փորձը ցույց տվեց, որ կոալիցիոն իշխանությունը ընդունակ է միայն՝ ա) երկարաձգել իմպերիալիստական պատերազմը, բ) պայքարել գյուղացիներին ու բանվորներին ստրկական հարաբերություններից ազատելու դեմ, գ) խոչընդոտել ժողովրդի կազմակերպմանը, դ) խորտակել պետության տնտեսական և ֆինանսական հիմքերը.

6. այս բանի հարաճուն գիտակցումը անվստահություն էր ներշնչում իշխանության հանդեպ և մղում էր բուրժուազիայի դեմ բացահայտ պայքարի ուղու վրա— հանուն իշխանությունը ժողովրդի ձեռքը հանձնելու, պայքար, որը հանդիպելով կոալիցիոն կառավարության ռազմա-ոստիկանական դիկտատուրայի հակազդեցությանը, վեր էր ածվում մեկուսացված տարերային ելույթների անօգուտ ձևի.

7. մյուս կողմից հաշտվողականների միջոցառումները ռևոլյուցիան տանում էին դեպի կործանում, ոչնչացնելով ռևոլյուցիայի և Սահմանադիր ժողովի ուժը, ի դեմս նրա դեմոկրատական կազմակերպությունների, և խորտակելով հավատը ռևոլյուցիայի իրական նշանակության հանդեպ, դրանով իսկ նախապատրաստելով հակառևոլյուցիայի հաղթանակը.

8. Ժողովրդին ռևոլյուցիայի շուրջը համախմբելու նպատակով, անհրաժեշտ է անհապաղ միջոցներ ձեռնարկել ժողովրդական կարիքները բավարարելու համար.

9. բանվորների, պինվորների և գյուղացիների Հոկտեմբերյան ելույթը նպատակ

«Кавказский воин», № 181, *1917 թ. նոյեմբերի 28։*

ուներ ստեղծել ժողովրդական իշխանություն՝ ժողովրդի կողմից պահանջվող այն միջոցառումները իրականացնելու համար, որոնք միայն կարող կլինեին ապահովել ռևոլյուցիայի նվաճումները և ուժ հաղորդել Սահմանադիր ժողովին.

10. Հոկտեմբերյան ռևոլյուցիան բանվորների և գյուղացիների հաղթանակն է ռևոլյուցիայի իրականացման և ժողովրդի պահանջած միջոցառումների կենսագործման համար բուրժուազիայի դեմ մղված պայքարում:

Կովկասյան բանակային համագումարը ողջունում է բանվորների և գյուղացիների ռևոլյուցիան, իշխանության հանձնումը Սովետներին և

1. ճանաչում է Ժամանակավոր Ժողովրդական Կոմիսարների կենտրոնական իշխանությունը, որոնք պատասխանատու են Զինվորների, Բանվորների և Գյուղացիների դեպուտատների Սովետների առջև.

2. պահանջում է անհապաղ կենսագործել Ժողովրդական Կոմիսարների Սովետի միջոցառումները (հողի, հաշտության, 8-ժամյա աշխատանքային օրվա, բանկերի ազգայնացման մասին դեկրետները և այլն).

3. կազմակերպել ֆեդերատիվ սկզբունքներով պետական գործադիր իշխանություն, անհապաղ հրավիրել Սահմանադիր ժողով, որն ուժեղ կլինի լիիրավ Սովետների օժանդակությամբ.

4. վերացնել այն բոլոր սահմանափակումները որոնք քայքայում են ժողովրդի ռևոլյուցիոն ստեղծագործական ուժերը.

5. անհապաղ անցկացնել ժողովուրդների ընդհանուր զինում և մտցնել համատարած ուսուցում.

6. մասնավորապես Անդրկովկասյան Երկրային իշխանության հարցի վերաբերյալ համագումարը գտնում է, որ ոչ դեմոկրատական հիմունքներով ստեղծված, Կովկասի ժողովուրդների ինքնորոշման կամքը չարտահայտող իշխանությունը՝ երկրամասը և բանակը Ռուսաստանի կենտրոնական իշխանությունից մեկուսացնելու փորձ է, որի նպատակն է, ստեղծել հակառևոլյուցիոն պատվար կալեդինյան և կարաուլովյան կայսրություններին օգնելու համար: Ճանաչելով յուրաքանչյուր ազգի լիակատար ինքնորոշման իրավունքը, համագումարը արտահայտելով Կովկասյան բանակի կամքը, չի կարող ճանաչել Անդրկովկասում այժմյան ձևով ստեղծված իշխանությունը:

«Кавказский воин», № 186, *1917 թ. դեկտեմբերի 6:*

## № 4

### *ԿՈՎԿԱՍՅԱՆ ԲԱՆԱԿԻ ԲԱՆԱԿԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՖՐԱԿՑԻԱՅԻ 1917 Թ. ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 2-Ի ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ*

Համագումարի ընդունած որոշումը, որի մեջ ասվում է Ժողովրդական Կոմիսարների Կենտրոնական իշխանությունը չճանաչելու և Անդրկովկասյան կոմիսարիատին օժանդակություն ցույց տալու մասին, չի կարող հանդիսանալ բանակի կարծիքը արտահայտող որոշում և իր մեջ սոսկալի վտանգ է կրում, սպառնում է պառակտում առաջացնել հենց բանակի ներսում և կազմալուծել ռևոլյուցիոն ճակատը: Ուստի Ֆրակցիան իր և Կովկասյան բանակի զինվորներին ներկայացնող իր անդամների վրայից վերցնում է պատասխանատվությունն այն բոլոր կործանիչ հետևանքների համար, որոնք անխուսափելի կլինեն, եթե անդրկովկասյան դեմոկրատիան և բանակն ընթանան ընդունված բանաձևի նշած ուղիով:

«Кавказский воин», *№ 190, 1917 թ. դեկտեմբերի 7:*

---

## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

# ԱՆՁՆՎԵՐ ՊԱՀԱՊԱՆԸ

«Ես ամեն ինչ անում եմ և կյանքս էլ չեմ խնայի այն օրվա համար, երբ մարդիկ տնից դուրս գալով այլևս չեն փակի իրենց դռները և ցերեկվա ու գիշերվա բոլոր ժամերին ապահով ու վստահ կանցնեն քաղաքների ու գյուղերի բոլոր մեծ ու փոքր ճանապարհներով, լայն ու նեղ փողոցներով»:

*Այս է Երևանի քաղսովետի միլիցիայի վարչության քրեական բաժնի ավագ օպեր-լիազոր, միլիցիայի մայոր Սամվել Ցուցուլյանի կյանքի ու գործունեության նշանաբանը:*

*Ցուցուլյանը ծնվել է Իջևանում: Նրանց բազմանդամ ընտանիքը շատ վաղ է զրկվել կերակրող ձեռքից, վիշտը, կարիքն ու զրկանքը շատ են բախել նրանց դուռը:*

*Արդար վաստակի բերկրանքը Սամվելին պատանի հասակից է ծանոթ: Ավարտելով միջնակարգ դպրոցը՝ կամավոր մեկնում է ռազմաճակատ, մասնակցում Հայրենական մեծ պատերազմին, վերադառնում վիրավորված, բայց կուրծքը զարդարված Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի շքանշանով և մի քանի մեդալներով: 1944 թվականից Ս. Ցուցուլյանը աշխատանքի է անցնում միլիցիայի օրգաններում: Անբասիր ծառայության համար նա ստացել է մեդալներ ու շնորհակալագրեր: Միլիցիայում են աշխատում նաև նրա կինը՝ Վալյան և ավագ եղբայրը:*

*Ահա մի քանի դրվագ նրա գործունեությունից, որոնց միջոցով ընթերցողը մոտիկից կծանոթանա մեր միլիցիայի անխոնջ ու անձնազոհ աշխատողներից մեկի հետ, միլիցիա, որը, երբ քնած է աշխարհ, քնած է քամին, արթուն հսկում է կանխելու և վանելու համար ամեն մի չարամիտ ոտնձգություն, որն ուղղված է հասարակական կարգի ու հանրային ունեցվածքի դեմ:*

### ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՆԳՆՎԱԾ Է

*Դեռ մեկ ժամ էլ չկար, ինչ Արտաշատի միլիցիայի բաժնի պետի տեղակալ կապիտան Սամվել Ցուցուլյանն առանձնասենյակ էր մտել և թերթում էր սեղանին դրված թղթապանակներից մեկը, երբ առանձնասենյակի դուռը ծեծեցին:*

*— Խնդրե՛մ, համեցե՛ք,— ասաց Սամվելը:*

*Կամացուկ և անվստահ քայլերով ներս մըտավ երկար մազերով, սև ու կրակոտ աչքերով մի երիտասարդ ու գեղեցիկ ադրբեջանուհի, մետաքսյա գունավոր գլխաշորով, գրկին ժիր ու կայտառ մի փոքրիկ երեխա:*

*— Նստեցե՛ք, բաջի,— ասաց Սամվելը՝ գահավորակի վրա տեղ ցույց տալով կնոջը:*

*Վերջինս չնստեց. երախտապարտ հայացքով կապիտանին նայելով՝ հարցրեց.*

*— Ընկեր պետ դո՞ւն ես:*

*— Այո՛, ես եմ. ինչո՞վ կարող եմ ձեզ օգնել,— պատասխանեց Սամվելը ադրբեջաներեն, դրանով իսկ հնարավորություն տալով այցելուին՝ խոսելու իր մայրենի լեզվով:*

*— Նորաշենից այստեղ եմ եկել իմ շնորհակալությունը հայտնելու քեզ, որ իմ վեց երեխաների կյանքը փրկեցիր, իմ անմեղ ամուսնուն աքսորից ազատեցիր: Հիմա ես համոզվեցի, որ արդարությունը չի կորչի,— ուրախության արցունքները հորդում էին մի շնչով արտասանված բառերի հետ:*

*Անծանոթ կինը գրպանից հանեց քառակուսի ծալված մի թուղթ և մեկնեց զարմացած Սամվելին: Հեռագրի բլանկ էր այն: «Ֆաթմա ջան, իսկական հանցագործին գտել են, ես կալանքից ազատվել եմ և մի քանի օրից տանը կլինեմ»: Շտապ կարդաց Ցուցուլյանը և ամեն ինչ պարզվեց նրա համար:*

*Ասկյար Ալիևը թյուրիմացաբար կալանավորվել է և այժմ ազատվել ու տուն է գալիս: Իսկ ի՞նչ դեր է խաղացել այդ գործում Սամվելը. չէ՞ որ այդ կինը եկել է Նախիջևանի ավտոնոմ ռեսպուբլիկայից: Ե՛վ այցելուն, և՛ Ցուցուլյանը հուզված էին. վերջինիս մանրիկ, խորաթափանց աչքերը մշուշվեցին հիշողություններից: Այս անգամ էլ նրա սիրտը լցվեց արդար, անաչառ ու ազնիվ գործ կատարող մարդու բերկրանքով:*

*Ֆաթմայի դուրս գալուց հետո Սամվելը վառելով հանգած ծխախոտը, ելավ տեղից և սկսեց մտախոհ ետ ու առաջ քայլել սենյակում...*

# ՓԱՍՏԵՐ ԵՎ ԽՈՀԵՐ

Մեր կարծիքով հեղինակն ընդհանրապես չի դնում հրամանների ու հրահանգների վերացման հարցը։ Խոսքը վերաբերում է նրան, որ ուսուցիչը հնարավորություն ունենա աշխատելու ստեղծագործաբար, ազատ ու անկաշկանդ։ Ո՛վ չգիտե, թե ուսուցչին որքան պետք են ուսումնական ծրագրերը և հրահանգները։ Կարևորն այն է, որ դրանք կազմվեն մտածված, գիտականորեն, խոր իմացությամբ։ Էլեկտրոնիկայի և կիբեռնետիկայի դարում անհրաժեշտ է խոր գիտելիքներով զինել մեր աճող սերնդին, մշտապես կատարելագործել ուսուցման պրոցեսը և ղեկավարման մեթոդները, իսկ դոգմատիզմը, պահպանողականությունը կործանարար են։ Այդ բանը քաջ գիտե մեր մասսայական ուսուցչությունը, որը շեշտը դնում է ուսման որակի վրա։ Փորձված դասատուներ շատ ունենք, որոնք քրտնաջան աշխատանք են տանում նյութը երեխաներին մատչելի դարձնելու համար, ավելորդ շտապողականություն հանդես չեն բերում, երբ նկատում են, որ երեխաները դեռ լավ չեն յուրացրել թեման, ջանում են կիրառել դասավանդման ակտիվ մեթոդներ։

Կուզենայի մի քանի խոսք ասել հոդվածում շոշափված հարցերից մի երկուսի մասին։

Մեր դպրոցների տարրական դասարաններում աշխատող բոլոր դասատուները չեն, որ կարող են բոլոր առարկաներն ավանդել։ Նրանց ստիպելը լուրջ վնաս կհասցնի գործին։ Մեր դըպրոցի դասատուներից մեկը երրորդ դասարանում մեկ ամիս պարապելուց հետո դպրոցի դիրեկցիային ազնվաբար հայտնեց, որ ինքը մայրենի լեզվի դասատու է և չի կարող դասավանդել թվաբանություն, ուստի չի ուզում կործանել այդ առարկան։ Դպրոցի դիրեկցիան այդ առարկան հանձնարարեց մասնագետ դասատուի և դրանով էլ փրկեց երեխաներին։ Հրահանգի այդպիսի «խախտումը» վնա՞ս բերեց. բնավ ո՛չ։

Անկաշկանդ և ստեղծագործաբար աշխատելը պայմանավորված է ուսուցչի պատրաստականությունից և նրա գործադրած ջանքերից։ Շատ բան ուսումնական հաստատությունները, նույնիսկ բուհերը չեն կարող տալ։ Ուսուցիչն այն ձեռք է բերում ամենօրյա գործունեության ընթացքում։ Ցավոք սրտի, մեր շարքերում դեռևս կան անբարեխիղճ ուսուցիչներ, որոնք երեխաներին միայն հաշմում են։ Դրանք որքան էլ քիչ լինեն, այնուամենայնիվ կան և մեծ վնաս են պատճառում։ Գյուղական մի շարք դպրոցների աշակերտներ շրջկենտրոնի դպրոցներն են գալիս՝ շարունակելու իրենց ուսումը։ Որքա՜ն են տանջվում խեղճ երեխաները ու նրանց հետ էլ ուսուցիչները, քանի որ տարրական բաներ նրանք չգիտեն։ Ընկ. Խուդոյանն առաջարկում է դրանցից ազատվել, բայց ինչպե՞ս։ Գործնականում դա հնարավոր չէ։ Մնում է մի ելք։ Այդ կարգի դասատուների համար, անկախ նրանց տարիքից ու աշխատանքի ստաժից, կազմակերպել երկարատև դասընթացներ, նրանց տալ առարկայական պատրաստականություն և թարմացնել գիտելիքները։ Այլ կերպ հնարավոր չէ, որովհետև նրանց մի մասը երկարատև աշխատանքի փորձ ունի։ Եվ երբ նրանք կդառնան պատրաստված, նվիրված աշխատողներ, այն ժամանակ նրանց պետք է լիովին վստահել։

Այժմ վերահսկողության մասին։ Ոչինչ չենք կարող ասել գործարար, օգտավետ վերահսկողության մասին։ Մի քանի տարի առաջ մեզ մոտ էին գալիս մինիստրության տեսուչներ, որոնց վերահսկողությունից գոհ էին ուսուցիչները՝ բարեկամական մթնոլորտում նրանք ցույց էին տալիս անհրաժեշտ օգնություն։ Բայց ուզում եմ պատմել մեկ ուրիշ տիպի վերահսկողության մասին։ Երևանից մեր շրջանն էր եկել բրիգադա։ Մի շարք դպրոցներում ֆրոնտալ ստուգումներ կատարելուց հետո նա կենտրոնացավ № 1 դպրոցում։ Դրան միացավ և ժողկրթբաժնի բրիգադան։ Մի քանի օրից հետո արդյունքներն ամփոփվեցին մանկավարժական խորհրդի նիստում։ Վիճաբանություն բացվեց առանձին հարցերի շուրջ, ուսուցիչներից ոմանք առարկում էին։ Այն ժամանակ Երևանից եկած ընկերներից մեկն ասաց. «Ուսուցչի մասին պիտի խոսել այնպես, որ նա չկարողանա ծպտալ, նրան թվա, թե ասեղների վրա է նստած»։

Մի ուրիշ դեպքի մասին։ Մի անգամ տեսուչներից մեկը դաս լսեց փորձված դասատուներից մեկի մոտ։ Մտքերի փոխանակության ժամանակ նա չկարողանալով դասատուին համոզել, դրա փոխարեն Երևանից ուղարկեց մի ահաբեկող, զրպարտչական ակտ, որն արդարացի դժգոհություն առաջացրեց ուսուցիչների շրջանում։ Ո՞ւմ է պետք նման վերահսկողությունը։

Մի քանի խոսք դասալսումների մասին, քանի որ սա ևս վերահսկողության ձևերից մեկն է։ Ուսուցչի հետ անմիջական աշխատողը դըպրոցի դիրեկտորը և ուսմասվարն են։ Վերջիններիս աշխատանքը չի սահմանափակվում միայն դասալսումներով։ Բազմաթիվ հարցեր են շոշափվում և պարզաբանվում մինչև դասն սկըսվելը։ Սակայն վերադաս մարմիններից ստուգման եկողները միայն դասալսումներն են հաշվի առնում, այդ պատճառով էլ դպրոցի ղեկավարները (չասենք բոլորը) աշխատում են արձանագրել լսված դասերը և այն էլ շատ հապճեպ։



Անշուշտ, այդպիսի դասալսումներն էլ օգտավետ չեն։ Գուցե անհրաժեշտ կլինի դասալսումների միայն հաշվառումը պահել։ Լավ չի՞ լինի գրելու փոխարեն, մտերմական զրույց ունենալ ուսուցչի հետ, բացատրել ու սովորեցնել նրան։ Գուցե պետք լինի դասալսումներ կազմակերպել ավելի փորձված դասատուների մոտ և դրանով էլ կոնկրետ օգնություն ցույց տալ։

Ուսուցչին չվստահելու մի այլ դեպքի մասին։ Մի տարի հասունության ատեստատի քննության ժամանակ, տասներորդ դասարանի աշակերտներից մեկը գրավոր աշխատանքում կատարել էր երեք սխալ։ Դրան ավելացավ մեկ ուրիշը ևս. աշակերտը «քուռակ» գրելու փոխարեն գրել էր «քոռակ»։ Լուսավորության մինիստրության ներկայացուցիչը պահանջել էր այն սխալ համարել, իսկ դասատուն գտնում էր, որ դա պատահականություն է և բարբառի ազդեցություն։ Բայց հակառակի նման. աշակերտը կրկնել էր նույն սխալը, այդ պատճառով գրավորը գնահատվեց «2», աշակերտը մնաց նույն դասարանում այն ժամանակ, երբ նրանից ցածր գիտելիքներով շատ աշակերտներ ստացել են բարձր գնահատական։ Ուսուցչի ասածը հաշվի չառնվեց, որովհետև սահմանված կարգ կար, դրանից շեղվել չէր կարելի։

Բազմաթիվ փաստեր կարելի է բերել ապացուցելու, որ ավելորդություններ շատ ունենք դպրոցական կյանքում և դրանցից հրաժարվելը ոչ թե կվնասի, այլ կօգնի մեր գործին։

Ս. ԱՂԱՄԻՐՅԱՆ
Ղափանի № 5 դպրոցի դիրեկտոր

# ԱՅՈ՛, ՈՒՍՈՒՑՉԻՆ ՉՊԵՏՔ Է ԿԱՇԿԱՆԴԵԼ

Հոդվածում շատ ճիշտ է նշված, որ ուսուցման պրոցեսում դեռևս կիրառվում են միապաղաղ և քարացած ձևեր, արդի՝ ատոմի և տիեզերքի նվաճման դարում երբեմն դասն ավանդվում է այնպես, ինչպես, ասենք, հիսուն, հարյուր տարի առաջ։ Դրա պատճառն այն է որ մեր շատ մասնագետ մանկավարժներ, անտեսելով մասսայական ուսուցչության հետ սերտ կապի անհրաժեշտությունը, կառչել են անցյալի նշանավոր մանկավարժների դրույթներից և նոր դպրոցի համար օրենքներ ու մեթոդներ մշակելիս հենվում են դրանց վրա։ Իհարկե, սրանով մենք չենք ուզում նսեմացնել մեր նշանավոր մանկավարժների թողած հարուստ ժառանգությունը, նրանցից մենք սովորել ու սովորում ենք։ Սակայն, միաժամանակ, չպետք է մոռանալ, որ, եթե ուսուցման շատ ձևեր պատմական անցյալ ժամանակաշրջանի համար ճիշտ են եղել ու օգտավետ, ապա այժմ դրանք չի կարելի վերցնել նույնությամբ։

Անշուշտ ուսուցման նոր ձևեր շատ են մշակվում, բայց բանն այն է, որ այդ ձևեր ու մեթոդներ մշակողները հաճախ կտրված են ուսուցչությունից և պարտադրում են այնպիսի օրենքներ, որոնք չեն համապատասխանում ժամանակակից դպրոցի խնդիրներին։ Շատ մանկավարժներ, հոգեբաններ բավարարվում են բարձրագույն ուսումնական հաստատությունում դասախոսելով, ուսանողին ուսուցանում են և գնահատում ու այլևս նրանց հոգը չէ, թե իր նախկին սանն ինչպես է կյանքում իրեն դրսևորում։ Մանկավարժական բուհերի դասախոսները, գիտնական մանկավարժները քիչ են լինում դպրոցներում և համակողմանի չեն ուսումնասիրում ուսուցման պրոցեսը։ Նման ընկերները դպրոց պետք է գան ո՛չ միայն լսելու և օգնելու նպատակով։ Լավ կլինի, որ նրանք էլ դասեր պարապեն, անմիջականորեն շփվեն աշակերտների հետ ու ասեն իրենց հեղինակավոր խոսքը ուսուցման նոր մեթոդների վերաբերյալ։ Մյուս կողմից՝ լավ կլինի, եթե դպրոցի դիրեկտորի, տեսուչի և ժողկրթբաժնի վարչական աշխատանքի մեջ մտցվի նաև մի քանի ժամ պարտադիր դասեր պարապելը, նույնիսկ անվճար։ Ինչո՞ւ պետք է ուսումնական հիմնարկների ղեկավարները հեռու լինեն ուսուցման անմիջական պրոցեսի կազմակերպումից։

Տեսուչ-մեթոդիստներն ամենից առաջ պետք է լինեն ուսուցչի խորհրդատուն, նրա ստեղծագործական աշխատանքին ուղղություն տվողը, ապա նոր ստուգողը։ Այնինչ մեր շատ ընկերներ այդպես չեն վարվում։ Ինչպես նշում է ընկ. Խուդոյանը, նրանք մեծ մասամբ դպրոց են գալիս ու դասեր լսում, որպեսզի «բռնեն» այս կամ այն ուսուցչի սխալը։ Հենց այդ է պատճառը, որ տեսչի դպրոց մտնելը հաճախ ոչ թե ուրախացնում, այլ տագնապի մեջ է գցում ուսուցչին, որի պատճառով և ուսուցիչը դասի ընթացքում դուրս է գալիս նորմալ հունից՝ առատ նյութ տալով սխալ «բռնողներին»։

Մեզ մոտ մի այդպիսի դեպք է պատահել։ Տեսուչներից մեկի հետ զրուցելիս ուսուցիչը համոզում էր, որ գործադրած մեթոդը վատ չէ, լավ արդյունք է տալիս։ Տեսուչը փոխանակ ստուգելու ուսուցչի ասածները, համոզվելու դրանցում, համառում և անցնում է իր համար սովորական վարչարարությանը. «Գիտե՞ք ինչ, իմ ասածն օրենք է»։ Հենց նման մանկավարժ-

նությամբ ու գիտականությամբ (դժբախտաբար հայերեն լեզվով Սվերդլովի երկերը շատ քիչ են հրատարակվել)։

Յակով Միխայլովիչի ռևոլյուցիոն գործունեությունը լայն ճանաչում ստացավ։ 1912 թվականին, Պրագայի կոնֆերանսից հետո, կոոպտացիայի կարգով նա ընտրվում է Կենտկոմի անդամ, այնուհետև՝ նաև Կենտկոմի ռուսական բյուրոյի կազմում։

1912 թվականից ռևոլյուցիոն շարժումը Ռուսաստանում սկսում է վերելք ապրել։ Ստոլիպինյան ռեակցիայի տարիներին հաջորդում է ռևոլյուցիոն մարտերի շրջանը։ Յակով Միխայլովիչն այլևս անկոր էր «օրեր ու տարիներ անցկացնել Նարիմյան, աքսորի խորքում»,— գրում է Կ. Սվերդլովան։ 1912 թվականին նա փախչում է աքսորից և 1913 թ. հունվարից Պետերբուրգում կատարում «Պրավդա»-ի խմբագրի պարտականությունները։ «Ղեկավարվելով Լենինի ցուցումներով Յակով Միխայլովիչը առաջնահերթ ուշադրություն է դարձնում «Պրավդա»-ին։ Նա վճռական պայքար էր մղում անկարգապահության և խմբագրական աշխատանքում պատշաճ կազմակերպվածության բացակայության դեմ, ինչի մասին մատնանշում էր Իլյիչը, հատկապես ընդգծում էր Կենտկոմի ցուցումները ժամանակին չկատարելու անթույլատրելիությունը և լենինյան հոդվածների ուշացումով հրատարակումը, որում «Պրավդա»-ի աշխատողները երբեմն մեղավոր էին» (էջ 222)։

Յակով Միխայլովիչը երկար չմնաց ազատության մեջ. պրովոկատոր Մալինովսկու մատնությամբ 1913 թ. փետրվարին նա նորից ձերբակալվեց և 1913 թ. մայիսին աքսորվեց Տուրուխանյան երկրամաս։ Դա Յա. Մ. Սվերդլովի ամենաերկարատև աքսորն էր։ Այդ շրջանին գրքում հատկացված է մի ամբողջ գլուխ։

Վրա հասավ 1917 թվականը։ Փետրվարյան ռևոլյուցիան տապալեց ցարական միապետությունը։ Ազատվելով աքսորից՝ Յա. Մ. Սվերդլովը նորից նետվեց ռևոլյուցիայի հորձանուտը։ 1917 թ. ապրիլին Յակով Միխայլովիչն արդեն Պետրոգրադում է, այստեղ էլ առաջին անգամ հանդիպում է Լենինին։

Հուշերի հեղինակը հանգամանորեն վերլուծում է Յակով Միխայլովիչի գործունեությունը 1917 թ. մայիսից—հոկտեմբեր ընկած ժամանակաշրջանում։ Նա առանձնապես նշանակալից դեր խաղաց պարտիայի VI համագումարի նախապատրաստման ու անցկացման գործում։ Յակով Միխայլովիչը մայիսից Կենտկոմի քարտուղարն էր և քաղաքական գործչի հմուտ տաղանդով մեծ գործ կատարեց պարտիան կազմակերպչորեն ամրապնդելու, ղեկավար նոր կադրեր առաջ քաշելու ուղղությամբ։

Յակով Սվերդլովը ակտիվ մասնակցություն ունեցավ նաև Հոկտեմբերյան պինված ապստամբության հաղթանակի գործում։ Բոլոր հարցերում անվերապահորեն Լենինի հետ, նա ջանք չէր խնայում լենինյան գաղափարները կենսագործելու համար։ Վ. Ի. Լենինը շատ բարձր է գնահատել նրա գործունեությունը Կենտկոմի քարտուղարի պոստում։

Յա. Սվերդլովի կյանքում նոր էտապ է սկսվում, երբ 1917 թ. նոյեմբերի 8(21)-ին Կենտկոմի առաջադրությամբ նա ընտրվում է Համառուսաստանյան Կենտրոնական Գործադիր Կոմիտեի նախագահ։ Այստեղ ևս Սվերդլովն իրեն դրսևորեց որպես սկզբունքային, աշխատավոր ժողովրդի շահերին նվիրված, բարձր բարոյական հատկություններով օժտված կոմունիստ։

Սվերդլովի համար կոմունիստական սկզբունքայնությունը բարձր էր ամեն ինչից։ Այդ են վկայում գրքի այն էջերը, որտեղ ցույց է տրված նրա գործունեությունը Սահմանադիր ժողովի շուրջը ծավալված պայքարի ժամանակ, երբ Սվերդլովը, ղեկավարվելով Լենինի ցուցումներով, հակահարված էր տալիս Կամենևին ու նրա համախոհներին։ Բարձր սկզբունքայնություն դրսևորեց Յակով Միխայլովիչը Բրեստի հաշտության հարցը Կենտկոմի և Կենտգործկոմի, այնուհետև Սովետների V համագումարի նիստերում քննարկելիս։ Բրեստի հաշտությունը փորձաքար էր։ Այդ հարցում տատանվեցին ո՛չ միայն սովորաբար տատանվողները, այլև շատ բոլշևիկներ, որոնք մինչ այդ կայուն էին եղել։ Սվերդլովը հարցի քննարկման բոլոր էտապներում Լենինի հետ էր։ Դաժան էր պայքարը, բայց Լենինի և նրա պինակիցների, այդ թվում և Յակով Միխայլովիչի ջանքերով հաշտությունն ստորագրվեց։ կանխվեց ռևոլյուցիայի գլխին կախված ահավոր վտանգը։

Սվերդլովի սկզբունքայնությունը դրսևորվեց նաև ներքին հակառևոլյուցիայի դեմ մղված պայքարում։ Գրքում ուշագրավ փաստեր են բերված այդ պայքարի մասին։ Նա մեծ եռանդ ցուցաբերեց հատկապես ձախ էսեռների խռովությունը ճնշելիս։

Ձախ էսեռների խռովությանը հաջորդեցին տեռորիստական մի շարք ակտեր, դրանց մեջ ավելի վտանգավորը Վ. Ի. Լենինի կյանքի դեմ կատարված մահափորձն էր։ Ձեռք առնված միջոցների շնորհիվ շատ արագ բացահայտվեց, թե դա ում գործն է։ Այլևս հանդուրժել չէր կարելի։ Պետք էր կապել չափը կորցրած վիժվածքներին։

Վ. Ի. Լենինի դեմ կատարված մահափորձից մի քանի ժամ հետո ՀԿԳԿ անունից Յակով Միխայլովիչը աշխատավորությանն է դիմում մի կոչով, որտեղ ասվում էր. «Մի քանի ժամ առաջ չարագործ մահափորձ է կատարվել ընկեր Լենինի դեմ... Իր առաջնորդների դեմ ուղղված մահափորձերին բանվոր դասակարգը կպատասխանի իր ուժերի է՛լ ավելի համախմբվածությամբ, կպատասխանի անողոք մասսայական տեռորով ռևոլյուցիայի բոլոր թշնամիների դեմ»։



Յակով Միխայլովիչի անողոքությունը ռևոլյուցիայի թշնամիների նկատմամբ ինքնանպատակ չէր, այն թելադրված էր մեր երկրի աշխատավորության կամքով։ Նրա համար միս ու արյուն էր դարձել ռևոլյուցիոն օրինականությունը պահպանելը։ Այդ մասին հուշերի հեղինակը գրում է. «Յակով Միխայլովիչը ամենավճռական պայքար էր մղում անօրինականության, կամայականության փաստերի դեմ, որ սկզբնական շրջանում թույլ էին տալիս Սովետական իշխանության առանձին օրգաններ, անհիմն բանտարկությունների դեմ, որոնք երբեմն տեղի էին ունենում»։ Մի քանի դիպուկ փաստերով հուշերի հեղինակը հիմնավորում է իր ասածը։ Յակով Միխայլովիչը պահպանում էր ոչ միայն «գրված» օրենքները, այլև սրբությամբ էր կատարում պարտիական ու պետական էթիկայի «չգրված» օրենքները։ «Սվերդլովը պահանջում էր,— գրում է հեղինակը,— տեղերում ուշադիր և տակտով վերաբերմունք ցույց տալ ընկերներին ու հիմնարկություններին։ Հաստատուն ղեկավարությունը և կարգապահությունը,— ասում էր նա, անհրաժեշտ են, բայց դրանք չի կարելի շփոթել կամայականության և կոմսնապարծության հետ» (էջ 476)։

Ռևոլյուցիային հաջորդած տարիներին ծանր էր մեր երկրի դրությունը. սով, համաճարակ, քաղաքացիական պատերազմ։ Յուրաքանչյուր կիլոգրամ միսը, յուղը, կաթը, յուրաքանչյուր փութ հացը ձեռք էին բերվում մեծ դժվարությամբ։ Հոգու կայունություն, բարոյական կոփվածություն. անձնազոհություն. ահա թե ինչն էր այդ օրերին բնորոշ բոլշևիկների պարտիայի ղեկավարներին։ Վլադիմիր Իլյիչը իրեն ուղարկված նվերները տալիս էր մանկապարտեզին, Սվերդլովը Կրեմլում ավելի վատ էր սնվում, քան Տուրուխանյան աքսորավայրում, Պարենի Ժողովրդական կոմիսար Ցյուրուպան, որը տնօրինում էր երկրի բոլոր պարենային ռեսուրսները, երբեմն ոտքի վրա չէր կարողանում մնալ՝ թերասնվելու պատճառով։

Գրքում Սվերդլովը չի մեկուսացված. հեղինակն աշխատել է ամեն կերպ բացահայտել այն կապերը, որոնք նրան կապում էին Լենինի, պարտիական այլ խոշոր գործիչներ՝ Ձերժինսկու, Լունաչարսկու (Զագորսկու), Մալկովի, Պետրովսկու, Սամոյլովի, Բադաևի, Մյասնիկյանի, Ավանեսովի և ուրիշների հետ։ Սվերդլովը ո՛չ միայն լավ ղեկավար ու պարտիական աշխատող էր, այլև լավագույն հոգատար ընկեր։

Դեռևս աքսորում եղած ժամանակ Յակով Սվերդլովը, կյանքը մեծ վտանգի ենթարկելով, ընկերոջը փրկում է խեղդվելուց. ինքը լինելով թույլ առողջության տեր, այցելում էր հիվանդներին, իր համար ուղարկված դեղորայքը բաժանում ուրիշներին։

Յակով Միխայլովիչը լայն կապեր էր հաստատել բանվոր-բոլշևիկների հետ և մինչև կյանքի վերջը մնաց նրանց սրտին շատ մոտ մարդ։ Նա դատապարտում էր նրանց, ովքեր իրենց վեր դասելով մարդկանցից, աշխատում էին ապրել անհատական կյանքով։ Այդ տեսակետից շատ բնորոշ է Սվերդլովի դիտողությունը Ստալինի հասցեին։ Ահա թե ինչ է գրում Յակով Միխայլովիչը 1914 թ. մարտի վերջին իր բարեկամներին ուղղված նամակում. «Մենք երկուսով ենք։ Իմ հետ է վրացի Ջուղաշվիլին, հին ծանոթ, որի հետ մենք արդեն մի ուրիշ աքսորում հանդիպել ենք։ Լավ տղա է, բայց առօրյա կյանքում չափազանց մեծ ինդիվիդուալիստ» (էջ 239)։

Հուշերում բավական տեղ է հատկացված Սվերդլովի ընտանեկան կյանքին։ Ինչպես վկայում է հեղինակը «Յակով Միխայլովիչը բոլորովին չէր խմում ոչ օղի, ոչ գինի, ասելով, որ արհեստականորեն իրենց ոգևորելու անհրաժեշտություն ունեն միայն տաղտկալի հոգու տեր մարդիկ»։

Նա շատ հոգատար էր ընտանիքի նկատմամբ — ահա թե ինչ է գրում Սվերդլովան. «1911 թ. ապրիլի 4(17)-ին մենք տղա ունեցանք... Դժվար էր նրա համար այդ օրերին նստել բանտում, զգալ իր կատարյալ անզորությունը։ Բայց բանտից էլ նա ձգտում էր ինչ-որ բանով աջակցել ինձ» (էջ 165)։

Յա. Մ. Սվերդլովը ինչպես աքսորի տարիներին, այնպես էլ հետագայում տնային գործերից չէր խուսափում, հնարավոր ամեն ինչում օգնում էր կնոջը։ Նրա համար առանձնապես մեծ հոգս էր երեխաների ճիշտ դաստիարակության հարցը։ «Երեխան դեռ չէր ծնվել,— գրում է Սվերդլովան,— իսկ Յակով Միխայլովիչը մտածում էր նրա դաստիարակության մասին, այն մասին, որ նա մեծանա, որպես իսկական մարդ» (էջ 165)։ Յակով Միխայլովիչը ո՛չ միայն մտածում, այլև կարողանում էր գործնական կյանքում կիրառել իր մտածածը։ Հեղինակի վկայությամբ նա զարմանալի հմտությամբ կարողանում էր երեխաների հետ «լեզու գտնել» և նրանց «ենթարկել» իր կամքին, նրանց մեջ դաստիարակել լավագույն գծեր։ Յակով Միխայլովիչը չէր սահմանափակվում իր ընտանիքի մասին տածած հոգատարությամբ. 1918 թվականի դժվարին ժամանակաշրջանում նա օգնեց Ձերժինսկուն՝ արտասահմանից տեղափոխելու իր ընտանիքը, կամ Լենինի թռուցիկ դիտողությունից հետո միջամտեց, որպեսզի Կրեմլում ապրող ընտանիքների համար մանկապարտեզ կազմակերպվի. այդպիսի օրինակները բազմաթիվ են։

ԳԻՆԸ 25 Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՌՈՏՈՐԱՅԻՆ ԿԻՍԱԱՎՏՈՄԱՏ

*Կուրսկի էլեկտրասարքավորման գործարանի գյուտարարներ Ռ. Դրյուչինը և Վ. Միխայլովը մշակել են բազմաշպինդելային ռոտորային կիսաավտոմատ՝ էլեկտրական ապահովիչների գլխիկները փաթաթելու համար։*

*Նոր կիսաավտոմատի ներդրումը հնարավորություն է տվել բարձրացնել արտադրվող ապահովիչների որակը, վերացնել մի շարք աշխատատար գործողություններ և ապահովիչների արտադրության մեջ անցնել հոսքային մեթոդի։*

*Նոր կիսաավտոմատի նմուշը հաջողությամբ արդյունաբերական փորձարկում է անցել։ Կիսաավտոմատը կշռում է 420 կգ, բարձրությունը 1990 միլիմետր է, տրամագիծը՝ 780։*

## ՆԵՅԼՈՆԸ ԸՆԴԴԵՄ ՄԱԿԸՆԹԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

*Հոլանդիայում ջրապատնեշներ կառուցելիս պարզել են, որ ավազով լցված նեյլոնի վիթխարի պարկերը արտասովոր ամրություն են տալիս ջրամբարին։ Բացի նրանից, որ սինթետիկ նյութի կիրառումը հնարավորություն է տալիս հրաժարվելու թանկ նստող քարե ու կավե կառույցներից, նեյլոնի պարկերը հեշտ են փոխադրվում և ուղղակի կառույցի տեղում լցվում են ավազով։*

## ՑԻՆԿԱ-ԿԱՊԱՐԱՅԻՆ ՀԱՆՔԱՔԱՐԻ ԱՆԱԼԻԶԸ

*Կրակովի միջուկային տեխնիկայի ինստիտուտը մշակել է ցինկ-կապարային հանքաքարի արդյունաբերական անալիզի ռադիոչափական մեթոդը։*

*Հանքաքարը ռմբակոծում են ռադիոակտիվ մասնիկներով։ «Գրգռված» մետաղը սկսում է ռենտգենյան ճառագայթներ արձակել։ Ճառագայթման մեծության անալիզը հնարավորություն է տալիս որոշելու մետաղի պարունակությունը հանքաքարում։*

*Այդ մեթոդի շնորհիվ անալիզի տևողությունը մի քանի ժամից հասել է 10—15 րոպեի։*

## ՊՈՂՊԱՏԻՑ ԱՄՈՒՐ

*Գրաֆիտի քիմիական կայունությունը հանրահայտ է։ Սակայն նրա ոչ մեծ ամրությունը թույլ չի տալիս այդ նյութն օգտագործել քիմիական սարքավորման մեջ։*

*Ոչ վաղուց լեհական ինժեներները լուծել են այդ հակասությունը։ Վերին Սիլեզիայի գործարաններից մեկում սկսեցին թողարկել գրաֆիտի և սինթետիկ ձյութի կոմբինացիա՝ «գռալան»։ Նոր նյութը պողպատից ամուր է։ Դրանից կարելի է հեշտությամբ ձուլել ամենաբարդ կոնֆիգուրացիայի դետալներ։ Գռալանը քիմիական սարքավորում պատրաստելիս փոխարինում է թթվադիմացկուն պողպատին։ Լեհական ինժեներների կարծիքով գռալանը մեծ ապագա ունի։*

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆ ՌԵՆՏԳԵՆԻ ՓՈԽԱՐԵՆ

*Ինչպես հայտնի է, ռենտգենյան ճառագայթներով երկարատև լուսահանումները ամենևին անվնաս չեն մարդկային օրգանիզմի համար։ Անգլիական ինժեներները նախագծել են ապարատ, որը լուսահանում է ուլտրաձայնի միջոցով։*

*Նոր մեթոդի միակ անհարմարությունն այն է, որ լուսահանվողը պետք է «լոգանք» ընդունի, այսինքն մտնի ջրով լի անոթի մեջ։*

## ԴԱՇՏԵՐԸ ՌՌՈԳՈՒՄ Է ՆԱՎԸ

*Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի պետական ֆերմաներից մեկում ստեղծվել է արտասովոր անձրևամեքենա։ Այն տեղադրված է մոտորային նավակի վրա, իսկ վերջինս շարժվում է ոռոգման ջրանցքի միջով։ Մեքենայի արձակած ջրի հզոր շիթերը մի քանի տասնյակ մետրի վրա ոռոգում են եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, կաղամբի և այլ կուլտուրաների ցանքատարածությունները։*